# ՋԱՏԱԳՈՎՈՒԹԻՒՆ
# ՈՒՂՂԱՓԱՌ ՀԱՒԱՏՈՑ

ԸՆԴԴԷՄ ՆՈՐԱՂԱ՛ՆԴԻՑ

ՈՐ ՇԱՐԱԴՐԵՐ Է

ՆՈՐԱՂԱՆԴՈՒԹԵ՛ՆԷ ԴԱՐՁԱԾ
ԱՆԳՂԻԱՑԻ ԱՍՊԵՏ ՄԸ



ՎԵՆԵՏԻԿ
Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ

1844.

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

ԵՐԲՈՐ ամենէն չկարծուած ժամա-
նակը Աստուծոյ արդարութիւնը կամե-
ցաւ որ նորանշան պատիժ մը տայ ընդ-
հանրապէս բոլոր Եւրոպացւոց՝ իրենց զա-
նազան թուլութեանցը համար, քօլերա
ըսուած սոսկալի ժանտամահը խրկեց վրա-
նին։ Խեղճ Եւրոպացիք ահուդողի մէջ
ընկած, մէկ կողմանէ Աստուծոյ ողոր-
մութիւնը կը խնդրէին, մէկ կողմանէ ալ
իրենց բժիշկներուն տարակուսանքը տես-
նելով՝ ետեւէ կ'ըլլային որ իմանան թէ
Ասիացիք որ աս մահաբեր հիւանդու-
թեանը տեղեակ են՝ արդեօք ի՞նչ դեղե-
րով յաղթել կը ջանան կամ կ'ազատին ան
կատաղի գազանէն. վասն զի գիտէին թէ
անիկայ Հնդկաստանի մէջ ըրած սովորա-
կան ջարդերով չկրշտանալով՝ հիմա իրենց
վ[illegible] յարձըկեր էր աւելի կատաղութ̃բ։
Աւա՜ղ որ ասոր նման կը տեսնենք այս-
օրուան օրս նաեւ ան սաստուած այլին պատու-

հատը, որով արեւելեան եկեղեցւոյ որդի֊
քը հոգւոր մահատարաժամով սկսեր են
ջարդուիլ՝ նորաղանդ կամ փրոթէսթանթ
քարոզիչներուն վարդապետութենէն։ Ա֊
սիկայ իրաւցընէ ժանտ հիւանդութիւն
մըն է որ արեւմտեան սուրբ եկեղեցւոյն
մէջ երկու հարիւր տարիէ չափ մեծ ջարդ֊
ընելէն ետքը, քանի գնաց հնցաւ, մաշե֊
ցաւ, ուժէ ընկաւ, և մանաւանդ աս տա֊
րիներս Աստուծոյ ողորմութեամբը և ընդ֊
հանրական եկեղեցւոյ քաջ հովիւներուն
աշխատանքովը օրէ օր պակսելու և գրեթէ
բոլորովին վերնալու վրայ է։ Բայց ան է
ցաւալին որ աս պատճառաւ հիմա սկսեր
է դէպ 'ի արեւելք ու Ասիա տարածուիլ․
վասն զի ա՛լ Եւրոպային մէջ տեղ չմնաց ա֊
նոր, և իրեն բուն հայրենիքէն ալ քշուիլը
մօտեցեր է։ Աս բանս այնպէս յայտնի ճըշ֊
մարտութիւն է, որ ոչ միայն ուղղափառք
ամէն օր կը տեսնեն ու կը լսեն և փառք կու֊
տան Աստուծոյ, հապա նաև նոյն իսկ նոր֊
աղանդները ցաւելով կը պատմեն իրենց
լրագիրներուն և ուրիշ գրուածքներուն
մէջ։

Աս գիտնալով, մեր ազգասիրութիւնը,

և ճշմարիտ աստուածպաշտութիւնը մեր ազգին մէջ ծաղկեցընելու ջանքը՝ չեն թողուր որ լուռ կենանք այսպիսի ժամանակ. մանաւանդ որ արևելքի զանազան կողմերէն, ի Պօլիսէն, Տրապիզոնէն, Կարինէն, Երևանէն, և ինչուան Հնդկաստանի մէջ եղած ազգային առաջնորդներէն կը լսենք թէ պէտք չէ անտարբեր ու պաղ աչքով նայիլ մեր ազգին աս նոր թշուառութեանը վրայ, հապա որչափ որ կարելի է բանիւ և գրով ջանալ չարիքը խափանել. ամէն զօրաւոր դեղերը ձեռք առնել, որ աս հիւանդութենէն բռնուողները բժշկուին, չբռնուողները զգուշանան։

Երանի՜ թէ մեր ազգը քանի որ դեռ հարկաւոր գիտութիւններով չէ լուսաւորուած, Եւրոպայի մոլորութիւններն ալ չգիտնար. քանի որ աս հիւանդութիւնը չունէր նէ՝ ոչ հիւանդութիւնը ճանչնար և ոչ անոր դեղերուն կարօտ ըլլար։ Բայց երբոր հիւանդութիւնը սկսեր է՝ դեղը ուշացընելէն ի՞նչ շահ. մանաւանդ թէ որչափ վտանգաւոր բան է 'ի սկզբան հարկաւոր դեղն ուշացընելը։ Անոր համար, մենք որ ամենայն հոգւով պաշտ-

պանել կ'ուզենք մեր սիրելի ազգը Նորաղանդէից մոլորութիւններէն, երբոր աչքերնիս մեր չորս դին կը դարձընենք՝ անթիւ անհամար մեծահատոր գրքեր կը տեսնենք, որոնց մէջ ան մոլորութիւնները ճշմարիտ փիլիսոփայութեամբ ու խորունկ աստուածաբանութեամբ մէկիկ մէկիկ հերքուած ու գետնէ գետին զարնըւած են. մէկէն կը վառուինք անոնք բոլոր թարգմանելու կամ անոնց նմանը շարադրելու: Բայց մեր ազգին հիմակուան անկրցողութիւնը չափ կը դնէ մեր եռանդին, և առ այժմ կը հարկադրէ որ այնպիսի մանր գրքերն ընտրենք՝ որ քիչ խօսքով, պարզ ոճով ու զօրաւոր պատճառներով շարադրուած են, և անոնք հրատարակենք: Ասոնց մէջ ալ աւելի յարմար կուգան մեր վախճանին ան գրքերը որ Նորաղանդութենէ ուղղափառ դարձած իմաստուն ու պատուաւոր մարդիկ շարադրեր են: Վասն զի թէպէտ մեր սուրբ հաւատոյ ճշմարտութիւնները ի՛նչ կերպով ալ և ուսկի՛ց ալ գրուին՝ զօրաւոր են ու միշտ անյաղթելի, բայց տարակոյս չկայ որ լսողները շատ տարբեր հոգւով մտիկ կ'ը-

նէն երբոր խօսողը կամ գրողը առաջուրիշ հաւատքի տէր եղած ըլլայ, ու ետքը ուղղափառութիւնն ընդունած. ան ալ ոչ սորվի, ոչ պատուոյ և ոչ ուրիշ մարդկային շահու համար ըրեր է, հապա մեծ քաջութեամբ ամենայն մարդկային նկատմունք մէկդի թողեր է, ճշմարտութեան սիրովը ամենայն նախատինք աչքը առեր է, ու գիտցեր է իմաստութեամբ դէմ կենալ ան խաբէական ու վնասակար խօսքին որ ամէն մոլար հաւատք ունեցողները իրենք զիրենք խաբելով կը ղուրցեն. ի թէ «Ամէն մարդ ի՛նչ հաւատքի մէջ որ ծներ է՝ ան հաւատքով պէտք է մեռնի». կամ թէ «Հաւատքը փոխելը անխելքութիւն է». և չեն մտածեր թէ աս խօսքէն մեծ անխելքութիւն չկրնար ըլլալ մէկ մարդու մը համար՝ որ հասկցած ըլլայ թէ հաւատք ըսածը ի՛նչ բան է:

Եւ ահա նորաղանդութենէ դարձած և ուղղափառութեան պաշտպան կեցած երևելի ու իմաստուն մարդկանց մէկն է ան անգղիացի ասպետը թէ աս գրքուկը շարադրեր է: Իրեն ոճը այնչափ պարզ, անոյշ, ու միանգամայն այնպէս զօրաւոր է՝

# ՃԱՏԱԳՈՎՈՒԹԻՒՆ
# ՈՒՂՂԱՓԱՌ ՀԱՒԱՏՈՅ

## ԸՆԴԴԷՄ ՆՈՐԱՂԱ́ՆԴԻՑ

ՈՐ ՇԱՐԱԳՐԵՐ Է

## ՆՈՐԱՂԱՆԴՈՒԹԵ́ՆԷ ԴԱՐՁԱԾ
## ԱՆԳՂԻԱՑԻ ԱՍՊԵՏ ՄԸ







ՎԵՆԵՏԻԿ
Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՑՆ ՂԱԶԱՐՈՒ

1844.

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

ԵՐԲՈՐ ամենեւին չկարծուած ժամանակը Աստուծոյ արդարութիւնը կամեցաւ որ նորանշան պատիժ մը տայ ընդհանրապէս բոլոր Եւրոպացւոց՝ իրենց զանազան թուլութեանցը համար, քոլերա ըսուած սոսկալի ժանտամահը խրկեց վրանին։ Խեղճ Եւրոպացիք ահուդողի մէջ ընկած, մէկ կողմանէ Աստուծոյ ողորմութիւնը կը խնդրէին, մէկ կողմանէ ալ իրենց բժիշկներուն տարակուսանքը տեսնելով՝ ետեւէ կ'ըլլային որ իմանան թէ Ասիացիք որ աս մահաբեր հիւանդութեանը տեղեակ են՝ արդեօք ինչ դեղերով ազատ կը մնան կամ կ'ազատին ան կատաղի գազանէն. վասն զի գիտէին թէ անիկայ Հնդկաստանի մէջ ըրած սովորական ջարդերովը չկրշտանալով՝ հիմա իրենց վրայ յարձըկեր էր աւելի կատաղութեամբ։

Աւա՜ղ որ ասոր նման կը տեսնենք այսօրուան օրս նաեւ ան աստուածային պատու-

հայր, որով արեւելեան եկեղեցւոյ որդի-
քը հոգեւոր միահաւասարաժամով սկսեր են
ջարդուիլ՝ նորաղանդ կամ փռոթէսթանթ
քարոզիչներուն վարդապետութենէն ։ Ա-
սիկայ իրաւցընէ ժանտ հիւանդութիւն
մըն է որ արեւմտեան սուրբ եկեղեցւոյն
մէջ երկու հարիւր տարիէ չափ մեծ ջարդ
ընելէն ետքը, քանի գնաց հնցաւ, մաշե-
ցաւ, ուժէ ընկաւ, եւ մանաւանդ աս տա-
րիներս Աստուծոյ ողորմութեամբը եւ ընդ-
հանրական եկեղեցւոյ քաջ հովիւներուն
աշխատանքովը օրէ օր պակսելու եւ գրեթէ
բոլորովին վերնալու վրայ է ։ Բայց ան է
ցաւալին որ աս պատճառաւ հիմա սկսեր
է դէպ 'ի արեւելք ու Ասիա տարածուիլ,
վասն զի ա՛լ Եւրոպային մէջ տեղ չմնաց ա-
նոր, եւ իրեն բուն հայրենիքէն ալ քշուիլը
մօտեցեր է ։ Աս բանս այնպէս յայտնի ճըշ-
մարտութիւն է, որ ոչ միայն ուղղափառք
ամէն օր կը տեսնեն ու կը լսեն եւ փառք կու-
տան Աստուծոյ, հապա նաեւ նոյն իսկ նոր-
աղանդները ցաւելով կը պատմեն իրենց
լրագիրներուն եւ ուրիշ գրուածքներուն
մէջ ։

Աս գիտնալով, մեր ազգասիրութիւնը,

և ճշմարիտ աստուածպաշտութիւնը մեր ազգին մէջ ծաղկեցընելու ջանքը՝ չեն թողուր որ լուռ կենանք այսպիսի ժամանակ. մանաւանդ որ արևելքի զանազան կողմերէն, ք Պօլիսէն, Տրապիզոնէն, Կարինէն, Երևանէն, և ինչուան Հնդկաստանի մէջ եղած ազգային առաջնորդներէն կը լսենք. թէ պէտք չէ անտարբեր ու պաղ աչքով նայիլ մեր ազգին աս նոր թշուառութեանը վրայ, հապա որչափ որ կարելի է բանիւ և գրով ջանալ չարիքը խափանել. ամէն զօրաւոր դեղերը ձեռք առնել, որ աս հիւանդութենէն բռնուողները բժշկուին, չբռնուողները զգուշանան։

Երանի՛ թէ մեր ազգը քանի որ դեռ հարկաւոր գիտութիւններով չէ լուսաւորուած, Եւրոպայի մոլորութիւններն ալ չգիտնար. քանի որ աս հիւանդութիւնը չունէր նէ՝ ոչ հիւանդութիւնը ճանչնար և ոչ անոր դեղերուն կարօտ ըլլար։ Բայց երբոր հիւանդութիւնը սկսեր է՝ դեղը ուշացընելէն ի՞նչ շահ. մանաւանդ թէ ո՛րչափ վտանգաւոր բան է 'ի սկզբան հարկաւոր դեղն ուշացընելը։ Անոր համար, մենք որ ամենայն հոգւով պաշտ-

պանել կ'ուզենք մեր սիրելի ազգը նոր-
աղանդից մոլորութիւններէն, երբոր աչ-
քերնիս մեր չորս դին կը դարձընենք՝ ան-
թիւ անհամար մեծահատոր գրքեր կը
տեսնենք, որոնց մէջ ան մոլորութիւննե-
րը ճշմարիտ փիլիսոփայութեամբ ու խո-
րունկ աստուածաբանութեամբ մէկիկ մէ-
կիկ հերքուած ու գետնէ գետին զարնը-
ուած են. մէկէն կը վառուինք անոնք բոլոր
թարգմանելու կամ անոնց նմանը շարա-
դրելու: Բայց մեր ազգին հիմակուան հա-
կըցողութիւնը չափ կը դնէ մեր եռանդին,
և առ այժմ կը հարկադրէ որ այնպիսի
մանր գրքերն ընտրենք՝ որ քիչ խօսքով,
պարզ ոճով ու զօրաւոր պատճառներով
շարադրուած են, և անոնք հրատարա-
կենք: Ասոնց մէջ ալ աւելի յարմար կու-
գան մեր վախճանին ան գրքերը որ նոր-
աղանդութենէ ուղղափառ դարձած ի-
մաստուն ու պատուաւոր մարդիկ շարա-
դրեր են: Վասն զի թէպէտ մեր սուրբ հա-
ւատոյ ճշմարտութիւնները ինչ կերպով
ալ և ուսկից ալ գրուին՝ զօրաւոր են ու
միշտ անյաղթելի, բայց տարակոյս չկայ որ
լսողները շատ տարբեր հոգւով մտիկ կ'ը-

նէն երբոր խօսողը կամ գրողը առաջու-
րիշ հաւատքի տէր եղած ըլլայ, ու ետքը
ուղղափառութիւնն ընդունած. ան այ-
ոչ ստրկի, ոչ պատուոյ և ոչ ուրիշ մարդ-
կային շահու համար ըրեր է, հապա մեծ
քաջութեամբ ամենայն մարդկային նկատ-
մունք մէկդի թողեր է, ճշմարտութեան
սիրովը ամենայն նախատինք աչքը առեր
է, ու գիտցեր է իմաստութեամբ դէմ կե-
նալ ան խաբէական ու վնասակար խօսքին
որ ամէն մոլար հաւատք ունեցողները ի-
րենք զիրենք խաբելով կը զուրցեն. Թէ
թէ «Ամէն մարդ ինչ հաւատքի մէջ որ
ծներ է՝ ան հաւատքով պէտք է մեռնի».
կամ թէ «Հաւատքը փոխելը անխելքու-
թիւն է». և չեն մտածեր թէ աս խօսքէն
մեծ անխելքութիւն չկրնար ըլլալ մէկ
մարդու մը համար՝ որ հասկցած ըլլայ
թէ հաւատք ըսածը ինչ բան է:

Եւ ահա նորաղանդութենէ դարձած և
ուղղափառութեան պաշտպան կեցած ե-
րևելի ու իմաստուն մարդկանց մէկն է ան
անգղիացի ասպետը թէ աս գրքուկը շա-
րադրեր է: Իրեն ոճը այնչափ պարզ, ա-
նոյշ, ու միանգամայն այնպէս զօրաւոր է՝

որ ընչուան հիմա աս գիրքը զանազան լեզուներ թարգմանուած ու շատ անգամ տպուած է։ Ուստի մենք ալ պարզ հայերէն թարգմանելով՝ կը յուսանք որ օգտակար ծառայութիւն մը ըրած կ'ըլլանք սուրբ եկեղեցւոյ և մեր սիրելի ազգին. և աս օգուտը աւելցընելու, ու հեղինակին ապացուցներուն աւելի հաստատութիւն տալու մտքով, շատ տեղ ծանօթութեան պէս դրինք նաև մեր ազգին սուրբ վարդապետացը խօսքերէն վկայութիւններ. և կը խնդրենք Աստուծոյ գթութենէն՝ որ անոնց արժանաւոր բարեխօսութեամբը մեր ազգը անարատ պահուի աս չարաչար ախտէն։



## ՋԱՏԱԳՈՎՈՒԹԻՒՆ

## ՈՒՂՂԱՓԱՌ ՀԱՒԱՏՈՅ

### ԸՆԴԴԷՄ ՆՈՐԱՂԱՆԴԻՑ

### Ա.

ԶԱՆԱԶԱՆ *տեղուանքէ ականջս հասաւ, սիրելի բարեկամք իմ, թէ դուք շատ տխրեր ու նեղացեր էք որ ինչու համար ես ձեր կողմը՝ այսինքն նորաղանդութիւնը թողուցի ու սուրբ և ուղղափառ հռովմէական եկեղեցւոյ որդւոյը մէջ մտայ: Չկարծէք թէ ես նորաղանդից կրօնքը մէկդի ձգելովս՝ ձեր բարեկամութիւնն ալ կ՚արհամարհեմ, տեսնելով որ դուք նեղացեր էք ինծի դէմ: Շատ փափաքելի բան է ինծի, հաւատացէք,*

շատ փափաքելի բան է որ միշտ նոյնպէս սիրով վարուինք իրարու հետ, ինչպէս որ մինչև հիմա վարուեր ենք։

Աս բանս հաստատ գիտցէք, սիրելիք, որ իմ աս ընտրութիւնս ամենևին թեթև·կերպով կամ տղայական փոփոխամտութեամբ չէ եղած. հապա շատ տարիներ վրան մտածեցի, երկայն ատեն քննութիւններ ըրի, և այնպիսի զօրաւոր պատճառներ լսեցի ու կարդացի՝ որ ով որ լսէ (միայն թէ խելք ունենայ) մէկէն ան պատճառներուն ճշմարտութեանը կը վկայէ, և ամենևին նախատինք չսեպեր իրեն՝ յաղթուեցայ ըսելը։ Այս չեմ ուզեր որ վեր 'ի վերոյ կերպով մը հաւնիք աս իմ վրաս եղած փոփոխութեանը, և ոչ իմ պատճառներս աղէկ մը չքննած ինծի ներողամտութիւն ցուցընէք. մանաւանդ թէ կ'աղաչեմ՝ զձեզ որ ինծի հետ իբրև դատաւոր վարուիք աս բանս քննելու ատեն. միայն թէ ինծի հրաման տաք՝ որ կարենամ ձեր ատեանին մէջ պաշտպանօք և ազատութբ̃

պաշտպանել իմ անմեղութիւնս ։ Յու֊
սամ որ աս գործողութիւնս այնպիսի
յաջողութեամբ գլուխ կը հանեմ, որ
ոչ միայն դուք ալ իրաւունք տաք իմ
պատճառներուս, և պաշտպանէք զա֊
նոնք, այլ և ձեր օրինակովը հաստա֊
տէք. և ասիկայ է ահա ան գեղեցիկ
ու փառաւոր յաղթանակը՝ որուն կը
փափաքիմ հասնիլ այսպիսի բարեկա֊
մական վիճաբանութեամբ ։ Ու որով֊
հետև գրեթէ համար պիտի տամ իմ
աս ըրած գործողութեանս վրայօք
ձեր առջևը, որոշեցի ծր աս գրքու֊
կիս մէջ դնեմ թէ այսպիսի հարկա֊
ւոր նիւթ մը քննելու ատեն ինչ ճամբայ
բռնեցի ես, ու ինչ պատճառներով մէկ֊
դի թողուցի նորաղանդութիւնը և ընդ֊
ունեցայ ուղղափառ հաւատքը ։ Կա֊
ղաչեմ, ուշադրութեամբ մտիկ ըրէք
նախ ըսածներուս. ետքը աս մեծ նիւ֊
թիս վրայ (որուն ծայրը յաւիտենա֊
կանութիւն է) այնպիսի խոհեմութ̃
ու իմաստութեամբ քննութիւն ըրէք՝
ինչ խոհեմութիւն որ կը բանեցընէք

ձեր ուրիշ գործքերուն մէջ, որոնք ամէնն ալ ժամանակաւոր գործքեր են, և թէ որ աղէկ մտածելու ըլլայ մէկը՝ այնպիսի գործքեր են որ սատակ մը չեն արժեր։

## Բ.

Ինչպէս որ գիտէք, սիրելի բարեկամք իմ, ես ազնուական ծնողաց որդի էի, և ունեցած դաստիարակներս ամէնն ալ նախանձայոյզ քարոզիչներ էին աւետարանական կրօնի և նորաղանդութեան։ (Ես անունները կուտամ հռովմէական կամ ուղղափառ եկեղեցւոյ հակառակ եղած ամէն կրօններուն, որպէս զի ձեր բառերը անշփոթ պահեմ։) Պզտիկուց առած կրթութիւնս՝ աւելի պատուաւոր ասպետի մը հարկաւոր եղած արտաքին բաներն էին, քան թէ քրիստոնէական առաքինութիւններ. բայց պզտիկուց ՚ի վեր երբեմն երբեմն միտքս կըլուսաւորուէր, և սրտիս մէջ այնպիսի

սուր խայթուածներ կըզգայի, որ զիս շատ անհանդարտ կ'ընէին, և տարակուսի մէջ կը թողուին նորադարձութեան ճշմարիտ ըլլալուն վրայ, թէպէտ և անոր մէջ մեծցեր էի։ Բայց երբոր քիչ մը տարիքս առի ու զինուորական կարգը անցայ և սկսայ քաղաքական գործողութեանց մէջ մտնել ելլել, միտքս ան աստիճան ընկղմեցաւ աս խեղճ ողորմելի աշխարհքիս զբաղմունքներուն մէջ, որ խելքս միտքս միայն իմ երկրաւոր բաղդս փնտռել էր, և մարդկանց առջև որչափ որ կրնայի՝ փառք պատիւ ստանալ։ Բայց ողորմածն Աստուած ուզելով զիս ճամբայ բերել, իրեն աստուածային բարկութեան գաւազանը ձեռքը առաւ, ու այնպիսի հիւանդութեամբ մը զիս զարկաւ՝ որ քանի մը օրուան մէջ մահուան դուռը հասայ։

Գ.

Ան խեղճութեան ատենս հոգիս իր թմրութենէն քիչ մը արթնցաւ. և

մահը առջևս տեսնելով՝ ան աստիճան վախը տիրեց սրտիս մէջ, որ սաստիկ շփոթած կ'այլէկոծէի՝ առանց որոշել կարենալու թէ ինչ հաւատքի մէջ մեռնիմ։ Ինծի կ'երևնար թէ ինչ կրօնի մէջ որ ապրեր էի՝ անով ապահով չէի կրնար մեռնիլ. և թէպէտ քարոզիչներ, ազգականներս և բարեկամներս իմ շփոթութեանս պատճառը իմանալով ինծի սիրտ կուտային որ Աստուծոյ ապաւինիմ և հաւատք ունենամ, որ միայն բաւական է, կ'ըսէին, իմ ամէն մեղքերս քաւելու, և զիս շիտակ արքայութիւն տանելու, բայց աս իրենց համոզողական խրատներով՝ մէկ կերպով մը իմ խղճմտանքս չէի կրնար հանդարտեցընել, և այնպէս կերևնար թէ ոտքիս մէկը դժոխքին դռնէն ներս դրեր եմ։ Ան հիւանդութեանս վտանգաւոր միջոցները՝ խիստ սաստիկ ազդեցութիւններ զգացի՝ որ հռովմէական ուղղափառ եկեղեցւոյ վարդապետութիւնը ընդունիմ՝ ու անոր մէջ մեռ-

նիմ ։ Բայց որովհետեւ քովս ուղ-
ղափառ քահանայ մը չկար որ զիս հա-
մոզէր և ինծի օգնէր ան միջոցին ,
և մանաւանդ մարդկային նկատմունք-
ները այնպէս միտքս պաշարած էին՝
որ շփոթեցայ և չկրցայ սիրտ ընել ու
յայտնել իմ խորհուրդս քովս եղած
մարդիկներուն . վասն զի գիտէի թէ
անշուշտ զիս պիտի մեղադրէին ։ Ասու-
տի ուրիշ ճար չգտայ՝ բայց եթէ առ
Աստուած դիմել խոնարհական ա-
ղօթքներով, ու պաղատելով իրեն որ
զիս ան տառապանացս մէջ իր աս-
տուածային առեանը չքաշէ ։ Խօսք
տուի ու երդուընցայ , որ եթէ առող-
ջանամ՝ մէկէն ետեւէ ըլլամ փրկութեան
ճշմարիտ ճամբան գտնելու ; և հաս-
տատուն առաջադրութեամբ ճշմար-
տութիւնը ընդունելու , և մէկդի
ձգելու իմ առջի կրօնս թէ որ
ճանչնամ թէ մոլար է ։ Ընդունեցայ
Աստուծմէ աս շնորհքը և առողջա-
ցայ ։ Ուզեցի որ մարդկանց առջև
պատիւաւոր ու խօսքին վրայ կեցող

մարդ ըլլամ, իսկ Աստուծոյ առջեւ ուխտադրուժ. ուստի խոստմունքս կատարեցի։

Դ.

Պատճառ բերելով թէ ծանր զբաղանքներէ ազատ ըլլալ կ'ուզեմ որ կարենամ առողջութեանս մէջ աւելի հաստատուիլ, Եւրոպայի այլեւայլ քաղաքները սկսայ ճամբորդութիւն ընել։ Աս ճամբորդութիւնս քանի մը տարի քշեց. եւ ան միջոցին մէջ բոլոր իմ դիտմունքս ան էր որ քննեմ իմանամ թէ Քրիստոսի ճշմարիտ եկեղեցին որն է. վասն զի ստոյգ գիտէի թէ միայն անով մարդ կրնայ փրկութեան հասնիլ։ Շատ հեղ երկայն բարակ հակաճառութիւններ ըրի թէ նորաղանդ եւ թէ հռոմէական գիտուններու հետ. անոնց գրքերը կարդացի, սովորութիւնները դիտեցի, սկզբունքները քննեցի. վերջապէս տեսնելով որ առանց երկմըտելու կրնամ որոշել

այսպիսի մեծ խնդիր մը, յարմար ժամանակ ու տեղ մը ընտրեցի աս բանս գլուխ տանելու. և քաջալերուելով գերմանացի արքայազուն իշխանի[1] մը օրինակէն, որ հռոմէական ուղղափառութիւնը ճանչցաւ, և քանի մը տարի է որ սրբութեամբ մեռաւ, ես ալ հետագայ ապահով ճամբան բռնեցի՝ ճշմարտութիւնը ընդունելու համար։

Նախ և առաջ մէկ քանի պատրաստութիւններ ըրի, որոնցմով մարդուս հոգին արժանի կ'ըլլայ ընդունելու Աստուծմէ շնորհք և մտքի լուսաւորութիւն, որպէս զի պայծառ ճանչնայ և հաստատուն կերպով ձեռք ձգէ փրկութեան հասնելու ճշմարիտ միջոցները։ Նյւ աս ըսած պատրաստութիւններս ահա հոս կը դնեմ.

1 Վոլֆէնպիւթթէլի դուքսը։

## Ե.

Թէ ի՛նչ պատրաստութիւններով կրնայ մէկը արժանի ըլլալ Քրիստոսի ճշմարիտ հաւատքը ճանչնալու:

Ա. Ստէպ ու Ջերմեռանդ աղօթ-
քով Աստուծոյ օգնութիւնը ու Հո-
գւոյն Սրբոյ շնորհքը խնդրել՝ հաւա-
տոյ պարգեւը ընդունելու, եւ անով
Քրիստոսի ճշմարիտ եկեղեցին գըտ-
նելու համար. աս բանիս հետագայ
աղօթքը բանեցուցի՝ օրը երկու իրեք
անգամ զուրցելով: Նոյն վախճանին
համար՝ աղքատաց ողորմութիւն տալ,
եւ քրիստոնէական բարեգործութիւն-
ներ ընել:

Բ. Որովհետեւ «Յանձն չարարուեստ
իմաստութիւն ոչ մտանէ (այսինքն ճշմար-
տապէս զԱստուած ճանչնալու շնորհ-
քը), եւ ոչ բնակէ 'ի մարմնի վարե-
ցելոյ մեղօք». (Իմաստ. Ա:) ամենայն
կերպով զգուշանալ ո՛ր եւ իցէ մեղքէ,
եւ առջի ըրած մեղքերուս վրայ կըցա-

ծիս չափ սրտանց գըղջալ, ստուգապէս գիտնալով թէ ճշմարիտ հաւատոյ լոյսն որ շատերուն մտքին մէջ չծագեր, պատճառը ան է որ իրենց հոգին այլևայլ ախտերով՝ մանաւանդ անհամեստութեան ախտով շաղախած է։

Գ. Այսպիսի ամենահարկաւոր բան մը որոշելու համար՝ բոլորովին անտարբերութիւն ձեռք առնել. այսինքն հանգարտ հոգւով առանց աս կամ ան կողմը մասնաւոր ջանքով պաշտպանելու, միտքս դրի ան հաւատքը ընտրել՝ որուն պատճառներուն ուժը, և Հոգւոյն սրբոյ շնորհքը զիս բռնադատեն խոստովանելու թէ ճըշմարիտ է, առանց ամենևին նկատմունք ընելու կամ մտածելու թէ ես իմ մտքիս ինծի ճշմարիտ 'ցըցուցածին ետևէն. երթալով՝ շատ բան կորսընցընեմ աս աշխարհքիս վրայ, կամ թէ ուրիշները զիս նախատեն և կամ փառաւորեն. Հապա խելքս միտքս ան էր որ իմ յաւիտենական փրկութիւնս միայն մըտածեմ։ «Ո՜ինչ օգտիցի մարդ եթէ

զաշխարհս ամենայն շահեսցի , և զանձն իւր տուժեսցի՝ կամ զի՞նչ տացէ մարդ փրկանս ընդ անձին իւրոյ » . (Մատթ . ԺԶ։)

Դ․․ Այնպիսի ջանքով մը ընել աս ճշմարիտ հաւատոյ ընտրութիւնս , ինչ ջանքով որ մահուանս ատեն կ'ուզեմ ընել . անանկ որ երբոր Աստուծոյ դատաստանը ելլեմ, կարենամ աղէկ համար տալ աս իմ ըրած ընտրութեանս վրայ , և ցուցընել թէ ինչ պատճառաւ աս կրօնը ընտրեր եմ քան թէ ուրիշ մը ։

## Զ.

Աղօթք առ Աստուած՝ անոնց համար շարադրուած՝ որ տարակոյս ունին իրենց հաւատքին ճշմարտութեանը վրայ . որով արժանի ըլլան Քրիստոսի ճշմարիտ հաւատքին մէջ ապրելու և մեռնելու շնորհքին ։

Տէր Աստուած ամենակալ, Հայր գթութեանց և փրկիչ ամենայն մարդ-

կան , խոնարհութեամբ կ'աղաչեմ զքեզ , լուսաւորէ իմ միտքս քու անբաւ գթութեամբդ , և կամքս պօրացուր, որպէս զի ճշմարիտ հաւատով, յուսով և սիրով կարենամ Քրիստոսի ճշմարիտ եկեղեցւոյն մէջ ապրիլ ու մեռնիլ։ Ստոյգ գիտեմ, թէ ինչպէս որ մէկ Աստուած միայն կայ , ասանկ ալ մէկ ճշմարիտ հաւատքէն աւելի չկրնար ըլլալ. մէկ հաւատք , մէկ եկեղեցի , մէկ ճշմարտութիւն. միայն մէկ ճանապարհ փրկութեան կայ , և ուրիշ ճամբաները որ առջինին հակառակ կ'ելլեն՝ զմարդ ոչ եթէ արքայութիւն, այլ դժոխք կը տանին ։ Ահա ես , ով Տէր, ամենայն յօժարութեամբ աս ճշմարիտ հաւատքը ելեր կը փընտռեմ, որով կարենամ փըրկուիլ։ Կ'իյնամ քու առջևդ , և կը խոստանամ, կ'երդուընամ որ ան կրօնը յանձն առնեմ՝ որն որ ճշմարիտ ճանչնալու ըլլամ. ընդհակառակն քու շնորհքովդ որ կրօնները որ սխալական, մոլար ու խաբէական ճանչնամ՝

մէկդի թողում զանոնք, թէպէտ և անով ինծի մեծ վնաս հասնի։ Այս իմ մեղքերուս համար՝ արժանի չեմ ես շնորհքին. բայց բոլոր սրտանց ցաւելով մեղքերուս վրայ, որոնցմով վըշտացուցեր եմ զքեզ իմ տէրս և Աստուածս, որ ես ամենասուրբ, ամենաբարի և ամենասիրելի, կը յուսամ որ ան բանին որ չեմ արժանի՝ քու անբաւ ողորմութեամբդ արժանաւորիմ. և աս բանիս համար բարեխօս կը բռնեմ քեզի՝ քու միածին Որդւոյդ մեղի պէս խեղճ մեղաւորներուն համար թափած արիւնը. Ամէն։

Է.

Միտքս դրած եմ ես, սիրելիք, թէ նոյն զգացմունքը դուք ալ կ'ունենաք՝ ինչ զգացմունք որ ես ունեցայ երբոր ուղղափառ անձէ մը ընդունեցայ աս աղօթքս. այսինքն թէ դուք ալ ինծի հետ շնորհակալ կ'ըլլաք, կը գովէք ան մարդուն բարի նախանձը, և աղօթքին

մէջն եղած իմաստուն ու սրտաշարժ իմաստները կը յարգէք. բայց միանգամայն ինծի պէս դուք ալ կը յորդորէք նոյն ուղղափառ անձը՝ որ նաև ինքն ալ ինծի առաջարկած աղօթքին պէս՝ աղօթք մը ընէ առ Աստուած ։ Այս երբոր զինքը աս բանիս յորդորեցի, ինքը մէկէն՝ չէ́ ըսաւ. վասն զի իրեն հաստատուն հաւատքը չէր թողուր այսպիսի տարակոյս լուծող աղօթք մը ընելու ։ Շատ զարմացայ այսպիսի պատասխան լսելով. ուստի խռոված՝ մէկէն ըսի իրեն. Թէ որ ինծի առաջարկած աղօթքդ գովելի ու բարեպաշտական բան է, ի՞նչ պատճառաւ ես կը կենաս դու ալ նոյն աղօթքը ընելէն. իսկ թէ որ աղէկ աղօթք չէ՝ ինչո՞ւ համար ուրիշները կը համոզես որ ընեն. կաղաչեմ, կամ տարակոյսս լուծէ, կամ թէ չէ՝ ես գայթակղած կ'ելլեմ կ'երթամ ։ Ան ատեն ինքը անուշութեամբ ու սիրով ձեռքէս բռնեց ու մէկդի տարաւ զիս, և իր քովը նստեցընելէն ետև՝ ըսաւ ինծի. Զէ բարեկամ, չեմ

ուզեր որ դայթակղած ելլես երթաս․ հապա մեծ շինութիւն առնես ուղղափառ հաւատոյ վրայ․ թէ որ կ'ուզես որ տարակուսդ լուծեմ՝ ըսածներուս ուշ դիր․ քանի մը խօսք բաւական է տարակուսդ բոլորովին լուծելու․ և աս կերպով սկսաւ ինծի սորվեցընել ճըշմարտութիւնը։

## Ը

Ով որ մէկ բանի մը վրայ բոլորովին ապահով է՝ չկրնար անոր վրայ տարակուսիլ․ և ինչուան որ մէկը խելաթափ չըլլայ՝ չկրնար ըսել թէ նորէն քննեմ իմանամ ճշմարտութիւն մը՝ որուն ամենաստոյգ ապացոյցները յայտնի կեցած են։ Ի՞նչ կ'ըսէիր, սիրելի, թէ որ մէկը գար սորվելու մտքով քեզի հարցընէր՝ թէ արդեօք իրաւցընէ արևը լոյս կուտա՞յ, կրակը կըտաքցընէ՞, աշխարհքիս մէջ իրաւցընէ Հռոմ անունով քաղաք կա՞յ, Աթենացիք արդեօք հասարակապետութիւն

ունեցա՞ն։ Ասոնք այնպիսի ճշմարտութիւններ են, որ ատոնց վրայ տարակուսողը՝ յիմարի տեղ կը դրուի։ Ուրեմն աս օրինակէս հասկըցիր որ շատ աւելի ստոյգ է (թէպէտև զգայութեան տակ չիյնար) ուղղափառ եկեղեցւոյ սուրբ հաւատքին ճշմարտութիւնը. որովհետև Աստուծմէ յայտնուած է՝ որ չկրնար ոչ խաբել և ոչ խաբուիլ. աս անկէ կը հետևի որ Աստուած բոլորովին ճշմարտութիւն է։ Բայց թէ Աստուած արդեօք յայտնա՞ծ է աս ճըշմարիտ հաւատքը, երբոր մէկը կարդայ և հասկընայ ան ամենաստոյգ պատճառներուն իմաստը և ուժը՝ որ աստուածաբանական բառով հաւատքէ հաւատոց (կամ ռամկօրէն՝ շարժառիթ հաւատալիութեան) կ'ըսուին, շատ անխոհեմ պիտի ըլլայ որ աս բանիս դէմ կենայ։ Ահա աս է պատճառը որ ուղղափառ մը չկրնար Աստուծմէ լոյս խնդրել որ իմանայ թէ արդեօք ինքը մոլորութեան մէջ է, թէ փրկութեան ապահով ճամբուն մէջ կը քա-

լէ․ վասն զի իր հաւատքին հիմը մէյ-
մը քննած ըլլալէն ետև, և իր կրօնին
վարդապետութիւնը աղէկ սորված ըլ-
լալէն ետքը, ալ ամենևին չտարակու-
սիր թէ իրեն հաւատքը Քրիստոսի
սուրբ, ճշմարիտ հաւատքն է․ և թէ
որ թերեհաւատութիւն ցուցընէ, մեծ
անիրաւութիւն ըրած կ'ըլլայ Աստու-
ծոյ դէմ, որ այնչափ զօրաւոր պատ-
ճառներով ու ստոյգ վկայութիւննե-
րով իրեն առջևը դրած է աս ճշմար-
տութիւնը։ Իրաւ է որ կրնամ ես Աս-
տուծոյ պաղատիլ որ հետզհետէ ա՛լ
աւելի լուսաւորէ իմ միտքս՝ որով պայ-
ծառ ըմբռնեմ իրեն յայտնած աս-
տուածային ճշմարտութիւնները, և ա-
ւելի մտադրութեամբ կարենամ զա-
նոնք քննել․ և աս կերպով աղօթելս
գովելի բան է․ բայց առանց ամենևին
թերահաւատութիւն ցուցընելու ան
ճշմարտութիւններուն վրայ, կրնամ
նաև աղօթք ընել որ Աստուած միշտ
զիս հաստատուն պահէ իմ հաւատ-
քիս մէջ, և տայ ինծի աւելի պայծառ

գաղափարներ ան խորհուրդին վրայօք որուն արդէն աներկբայ կը հաւատամ։ Զոր օրինակ՝ թէպէտև ստոյգ գիտնայի թէ քրիստոնեայք անհաւատից դէմ պատերազմ ըրեր ու անոնց յաղթեր են, բայց չէի դադրեր մանր տեղեկութիւններ հարցընելէն ան պատերազմին ու յաղթութեան ինչ կերպով ըլլալուն վրայ, առանց տարակուսելու թէ քրիստոնէից ըրած փառաւոր յաղթանակը ճշմարիտ է։

## Թ.

Ընդհակառակն նորադարձները բաւական չէ որ աչուըննին կը գոցեն, հապա նաև երեսնին պէտք է կտրեն հանեն՝ որպէս զի չտեսնեն թէ որչափ մոլար է իրենց նորաձևութիւն ըսած կրօնը։ Այն իսկ իրենց կրօնին մոլորութիւնը կը ցուցընեն ան առաջարկութիւնները՝ որոնք ուղղափառ կրօնին ճշմարտութեանը, սրբութենը և անսխալութեանը ապացոյց են։ Ասոր քննութեան

տակ առնեն, ու բաղդատեն իրենց հա-
ւատքը մերինին հետ․ անկարելի է որ
իրենք ալ իրաւամբ չկասկածին, մա-
նաւանդ թէ բոլորովին չտարակուսին՝
թէ արդեօք ճշմարի՞տ է թէ մոլար ի-
րենց քարոզած կրօնը։ Ուրեմն երբոր
այսպէս կը տարակուսին, չէ թէ միայն
կրնան՝ հապա պէտք է որ խոնարհ
պաղատանօք առ Աստուած դիմեն, որ-
պէս զի երկնային լուսովը զիրենք լու-
սաւորէ, և կարողութիւն տայ իրենց
մոլորութիւնը տեսնելու և ճշմարտու-
թիւնը ընդունելու։ Դու ալ թէ որ
աս ճշմարտութեան հասնելու համար
ապահով առաջնորդ մը գտնել կը փա-
փաքիս, Հոգին սուրբ կուտայ քեզի։

Միտքդ դիր թէ մահուան դուռը
հասած ես․ ան միջոցին որոշէ թէ
արդեօք ո՞րը աւելի ընտրելի է, ուղ-
ղափա՞ռ մեռնիլը՝ թէ նորաղանդ։ Տա-
րակոյս չկայ որ շատ նորաղանդներ
հանդարտ խղճմտանքով մեռնելու հա-
մար՝ հռովմէական ուղղափառ դաւա-
նութիւնը յանձն առին․ բայց մէկ

ուղղափառ մը չես գտներ, որ խղճմտանքը հանդարտեցընելու համար՝ նորաղանդութեան մէջ մտնելը ուզած ըլլայ։ Եւ միթէ ասիկայ մեծ ապացոյց չէ՞ հռովմէական եկեղեցւոյ քարոզած հաւատքին ճշմարտութեանը։ Իսկ թէ որ դու ելլես ինծի ըսես թէ Ես իմ հաւատքիս ճշմարտութեանը վրայ ամենևին տարակոյս չունիմ. պատասխան կուտամ քեզի. Կարծեմ թէ անկեղծութեամբ չես խօսիր, և չեմ կրնար ալ հաւատալ թէ դու աս բանըդ անյաղթելի տգիտութեամբ կըզրուցես, երբոր կը տեսնեմ որ դու տխմար գեղջուկ մը չես լեռնէ բրդած, կամ խորունկ անապատներէն եկած, ուր որ ուղղափառ եկեղեցւոյ կրօնին ծանօթիւնը չկայ. վասն զի անկարելի բան է որ ամէն օր արևը մեր գլխուն վըրայէն անցնի, և մենք չզգանք իր ճառագայթներուն ջերմութիւնը և լոյսը։ Ուրեմն քու վրադ դալով, աս բանս ստոյգ գիտցիր բարեկամ, որ տգիտութիւնը հոս իբրև պատճառ չես կրնար

բերել. վասն զի քու միտքդ, պզտի-
կուց սորված ուսմունքներդ, գործո-
ղութեանց մէջ մտնել ելլելդ, քեզի
բաւական հասկըցուցած են որ աշ-
խարհքիս վրայ քու հաւատքդ միայն
չէ. և սակայն քեզի հաւատակից այնչափ
իմաստուն և առաքինի երևելի մարդիկ
դքեզ կը խրատեն թէ դու առ հա-
ւատքովդ չես կրնար փրկութեան հաս-
նիլ. ուրեմն անկարելի է որ դուն ասո
բաներս գիտնաս, ու չտարակուսիս
հաւատքիդ վրայ։ Իսկ երբոր այսպէս
կը տարակուսիս, կրնաս և պէտք է
որ ետևէ իյնաս ճշմարտութիւնը
ճանչնալու, որով ապահովցընես յա-
ւիտենական փրկութիւնդ։

Ժ

Ըս է ահա, սիրելիք, ան իմաստուն
ուղղափառին խօսակցութիւնը, որով
իմ տարակոյսս լուծուեցաւ, և ես ու-
զեցի հոս գրել նոյնը՝ մեծ յուսով որ
ան ներգործութիւնը նաև ձեր սրտին

մէջ ընէ՝ ինչ որ իմ սրտիս ըրաւ. և կեն֊
դանի փափաք մը տայ ձեզի որ փրկու֊
թեան հասնելու ստոյգ ճամբան փնտռէք,
որ ես գտնելու համար թէ աղօթք ըրի,
թէ լացի ողբացի, և թէ մեծ ջանքով
ետևէ եղայ ու մէկիկ մէկիկ քննեցի
հաւատոյ վերաբերեալ նիւթերը, և
ան առաջարկութիւնները իբրև ճըշ֊
մարիտ ընդունեցայ՝ որ զօրաւոր պատ֊
ճառներով զիս կը բռնադատէին խոս֊
տովանելու թէ ճշմարիտ են։ Ահա
իմ ըրած քննութեանս համառօտու֊
թիւնը հոս կը դնեմ՝ ոչ այնչափ իմ
ընտրութիւնս արդարացընելու, որչափ
ձեր օգտին համար։ Կը յուսամ որ
այնպէս պարզ կերպով ձեր աչքին առ֊
ջև դնեմ ճշմարտութիւնը, (ինչպէս ու֊
րիշները իմ առջևս դրին,) որ ամենևին
դժուարութիւն չքաշէք զանիկայ քննե֊
լու և ընդունելու։

Բայց որովհետև կարելի է թէ ձեզ֊
մէ մէկը յանկարծ հակառակասիրու֊
թեան հոգւով աս գրքուկին երեսը
չնայի, ու իր պաշտած կրօնը չուզենայ

քննել, ըսելով թէ իմ հաւատքիս ճըշմարիտ ըլլալուն վրայ ամենեւին տարակոյս չունիմ. և որպէս զի առանկով (ինչպէս շատ նորադարձից սովորութիւնն է) չփախչի ուղղափառաց պատճառներուն պատասխան տալու նեղութենէն, կ'աղաչեմ որ դեռ երկու խօսքս ալ լսէք, ու բարեկամաբար տըւած խորհրդիս մտիկ ընէք։

Ես կ'ընդունիմ թէ դուք ամենեւին չէք տարակուսիր ձեր հաւատքին ճըշմարտութեանը. և մտքերնիդ հաստատուն դրած էք թէ ան է փրկութեան հասնելու ապահով ճամբան։ Թէպէտև ըսինք թէ երբոր ամենեւին տարակոյս չունիք ձեր հաւատքին ճշմարտութեանը՝ պէտք չէ որ փոխէք անիկայ, բայց կրնաք մէյմը ձեր հաւատքին հիմը քննել, և ուղղափառ հաւատոյ հիման հետ բաղդատել, չէ թէ հաւատքնիդ փոխելու համար (որուն համար կ'ըսէք թէ ճշմարիտ է), հապա գէթ աւելի հաստատուելու համար անոր մէջ՝ ուղղափառաց նոր-

աղանդութեան դէմ՝ ըրած խնդիրները լուծելով։

Երբոր մէկը վիճելու առնու տարակոյսներ կը հանէ, վէճը կ'երկընցընէ, դրսէ դուրս բաներ մէջ կը քաշէ, որպէս զի կռուին բուն պատճառը քննելով վճիռ չտան, յայտնի կ'ընէ որ ինքը իրաւունք չունի։ Ըսանկ ալ դուք՝ միշտ հակառակ կը խօսիք հռոմէական եկեղեցւոյ, բայց ոչ երբէք իրեն իրաւացի պատճառներուն կ'ուզէք մտիկ ընել։ Ուրեմն համառօտ կերպով ուզենալով միտքս իմացընել, կ'ըսեմ ձեզի. դուք կամ կը տարակուսիք ձեր կրօնին ճշմարտութեանը, կամ չէ։ Թէ որ կը տարակուսիք, ուրեմն մտադրութեամբ քննեցէք անիկայ, և սիրով մտիկ ըրէք ինծի՝ որ կ'ուզեմ պարզ կերպով ձեր աչքին առջևը դնել թէ իրաւունք ունիք տարակուսելու, վասն զի մեծ մոլորութեան մէջ էք։ Իսկ թէ որ չէք տարակուսիր, ու կը պարծենաք թէ ձեր կրօնն է միայն ճշմարիտ, սուրբ և անսխալ (որն որ նոյն իսկ ձեր մէ-

ջէն քանի՜ քանի նորաղանդներ յանձն չեն առներ ըսելու), ուրեմն ինչո՞ւ կը վախնանք կորընծութեամբ թշնամեաց դիմացը ելլելու, և ձեր հաւատքին պատիւն ու հիմը հաստատուն պահելու համար՝ ուղիղ տրամաբանութեամբ ուղղափառաց հետ վիճելու, որոնք անվախ դիմացնիդ ելեր կեցեր են։ Ա՛ գիտէ թէ օր մը ձեր վրայ ալ ըլլայ ան փոփոխութիւնը՝ ինչ որ եղաւ քանի մը տարի առաջ քարոզչի մը որ Լուչերնա քաղքին մէջ քարոզութիւններ կ'ըներ. առ նորաղանդին անունը Յովհաննէս Տաննա էր։

Աս քարոզիչը (ինչպէս որ ինքը կըպատմէ իր գրքերուն մէկուն մէջ, որ ուղղափառութիւնը ճանչնալէն ետքը՝ պաղղիարէն ու իտալերէն տպել տըւաւ) աս քարոզիչը հաստատուն միտքը դրած ըլլալով թէ իրեն հաւատքը Քրիստոսի ճշմարիտ հաւատքն է, մեծ ջանքով ամենուն նոյն հաւատքը կը քարոզէր, և անով իրեն հետևողներ կը ժողվէր. օր մը Բելարմինոսի գը-

ռուածքը ձեռքն կյնալով ուզեց անոր դէմ գրել. բայց երբ կարդաց ու քննեց անիկայ, տեսնելով որ իրեն հաւատոյ և սուրբ գրոց դէմ ըրած հակառակ վարդապետութիւնը անոր մէջ զօրաւոր փաստերով հերքած է Բելլարմինոս, յաղթուեցաւ մնաց. և միտքը փոխելով, դէմ գրելու տեղ՝ անոր խօսքերը հաստատեց գրով, ետ կեցաւ իր մոլորութենէն, ու անկէ ետև միշտ ուղղափառ եկեղեցւոյ հնազանդ ու նախանձաւոր որդւոցը մէկը եղաւ։ Աս բանիս մէջ յայտնի կ'երևնայ Աստուծոյ ողորմութիւնը, որուն դուք ալ՝ սիրելի բարեկամք իմ՝ կ'աղաչեմ որ սրտանց յանձնէք զձեզ։

Որովհետև աս գրքուկիս մէջ շատ անգամ ԵԿԵՂԵՑԻ բառը պիտի գործածեմ, հիմակուընէ կ'իմացընեմ թէ աս բառով ես ուրիշ բան չեմ հասկընար՝ բայց եթէ բոլոր հաւատացելոց բազմութիւնը մէկտեղ առած, որոնք ամէնն ալ մի և նոյն վարդապետութիւնը, մի և նոյն կրօնն ու հաւատքը ու֊

նենալով կը դաւանին Քրիստոսի Ճըշմարիտ վարդապետութիւնը՝ իրենց օրինաւոր հովիւներուն առաջնորդութեամբը: Եկեղեցի բառը աս մտքով գործածուած է նոր կտակարանին մէջ (Մատթ. ԺԶ: Գործք Առաք. Ե: Առ Հռովմ. ԺԶ, ևն). նոյն իմաստով նաև հակառակորդները գործածած են: Կը մնայ սիրելի բարեկամք իմ, որ ուշադրութեամբ կարդաք ետևի առաջարկութիւններս, և Աստուած մեզի շնորհք տայ, որպէս զի ես զօրաւոր կերպով անոնք ձեր առջևը դնեմ, դուք ալ հասկընաք ու շահուիք:



# ԺԱ

## ԱՌԱՋԱՐԿՈՒԹԻՒՆ Ա.

*Եկեղեցին ինչուան հինգերորդ դար ինչ բան որ հաւատաց կամ սորվեցուց որ հաւատան, պէտք է որ նորադարձներն ալ նոյն բաներն ընդունին, և հաւատան անոնց։*

## ԱՊԱՑՈՅՑ

Քրիստոսի ճշմարիտ եկեղեցին ինչ բանի որ կը հաւատայ և ուրիշներուն ալ կը քարոզէ որ հաւատան, (որ է առաքելական սուրբ վարդապետութիւնը,) ով որ ճշմարիտ քրիստոնեայ է և Քրիստոսի ճշմարիտ աշակերտ՝ առանց հակառակելու պէտք է հաւատայ նոյն բաներուն։ Իսկ արդ եկեղեցին առջի հինգ դարերուն մէջ՝ Քրիստոսի ճշմարիտ եկեղեցին էր, և կը քարոզէր առաքելոց ճշմարիտ վարդապետութիւնը, ինչպէս նորադարձներն ալ կը խոս-

տօվանին, ու կը պարծին թէ իրենք են ճշմարիտ քրիստոնեայ և ճշմարիտ աշակերտ Քրիստոսի. ապա ուրեմն եկեղեցին առջի հինգ դարերուն մէջ ինչ բաներու որ հաւատաց և ուրիշներուն ալ սորվեցուց, պէտք է նորաղանդներն ալ նոյն բաներն ընդունին, և առանց հակառակելու հաւատան։ Ասկէ կը հետևի թէ նախնական եկեղեցին ինչ որոշմունքներ որ ըրաւ ան առջի հինգ դարերուն մէջ՝ սուրբ գրոց խօսքին ու նոյն ատենի հարց գրուածոցը նայելով, պէտք է որ նորաղանդներն ալ առանց հակառակելու ընդունին։

ՙՆիկիոյ սուրբ ժողովքը եղաւ 325ին. և առջի հինգ դարերուն մէջ՝ որչափ որ սուրբ հարք կան, որ են Իգնատիոս, Երանոս, Յուստինոս, Կղեմէս աղեքսանդրացի, Կիպրիանոս, Աթանաս, Իլարիոն, Կիւրեղ, Գրիգոր ՙՆիւսացի, Բարսեղ, Գրիգոր ՙՆազիանզացի, Եպիփան, Ամբրոսիոս, Ոսկեբերան, Օգոստինոս, Հերոնիմոս և

ուրիշ սուրբ Հարք [1], պէտք է որ մեծապէս պատուեն զասոնք. նաև ուղղափառ եկեղեցիէն դուրս եղած աղանդաւորները, այս ինքն լուտերականները՝ որ իրենք զիրենք Աւետարանական կը կոչեն. և Կալվինականները՝ որ զիրենք Նորոգող կ՚անուանեն, և ուրիշ նորաղանդները. վասն զի իրենք ալ կը խոստովանին թէ վերը յիշուած սուրբ Հարք իրաւցընէ Քրիստոսի Ճշմարիտ եկեղեցւոյն վարդապետներն եղան։

Բայց կան նաև նորաղանդներ որ չեն հաւատար թէ Քրիստոսի եկեղեցին անարատ մնացած ըլլայ առջի հինգ դարերուն մէջ. ոմանք կ՚ըսեն թէ եկեղեցին 300 տարիէն ետքը սխալեցաւ, և ոմանք՝ թէ առջի դարուն մէջ։ Կարծեմ թէ աս՝ բանս անոր համար կ՚ըսեն, որպէս զի չհաւատան մեծամեծ

1 Նոյն ատեններն են նաև մեր սուրբ Լուսաւորիչը, սուրբն Յակոբ Մծբնայ, և այլն։

ժողովքներու և սրբոց հարց՝ որ եկե֊
ղեցւոյ առջի դարերուն մէջ փայլեցան։
Թ.է որ նորաղանդներուն ուղղափա֊
ռաց հետ չմիաբանելուն պատճառը
աս միայն ըլլար, շատ դիւրին էր զի֊
րենք միաբանելը. վասն զի եկեղեցին
ինչ վարդապետութիւն որ ունէր առ֊
ջի դարերուն մէջ՝ որուն նորաղանդ֊
ներն ալ կը հաւատան, ամենևին նոյն
վարդապետութիւնն ունեցեր է և ու֊
նի նաև մինչև հիմա հռոմէական ե֊
կեղեցին։ Գրքիս կարճութիւնը թող
չտար որ երկար խօսիմ աս առաջար֊
կութեան վրայ. բայց թէ որ ան նոր֊
աղանդներէն էք՝ որոնք եկեղեցւոյ
անսխալականութեանը քիչ ժամանակ
կ'ուտան, ու կ'ուզէք որ մէկը աւելի
ընդարձակ լուծումն տայ ձեր խըն֊
դրոյն՝ գնացէք իմաստուն և հմուտ
հռոմէական վարդապետի մը յայտնե֊
ցէք ձեր միտքը, անիկայ դիւրաւ կըր֊
նայ զձեզ համոզել։

# ԺԲ

## ԱՌԱՋԱՐԿՈՒԹԻՒՆ Բ.

*Քրիստոսի մէկ ճշմարիտ եկեղեցիէն զատ չէ՛ եղած, ու չկրնար ըլլալ աշխարհիս վրայ ուրիշ ճշմարիտ եկեղեցի։*

### ԱՊԱՑՈՅՑ

*Ա. Հոգին սուրբ ատ իր եկեղեցւոյն վրայ խօսելու ատեն միշտ եզակի թուով կը խօսի իբրև մէկ բանի վրայ։ Կը նմանցընէ զանիկայ այգիի, քաղաքի, լուսոյ, և այլն. (Մատթ. Ի. և Ե։) և յայտնի կը կոչէ հարս, աղաւնի. «Մի՛ է աղաւնի իմ, կատարեալ իմ». (Երգ երգոց. Զ։) Ս՛ս նմանութիւններէն և փոխաբերաբար զուրցուածքներէն կ'իմացուի թէ Քրիստոսի եկեղեցին մէկ հատ է։*

*Բ. Սուրբ գիրքը կը սորվեցընէ մեզի թէ հաւատքը, կրօնքը և Քրիստոսի եկեղեցին մէկ հատէն աւելի չեն*

կրնար ըլլալ. ուրեմն պէտք է որ ասանկ ըլլայ, և ամէն քրիստոնեայք այսպէս հաւատան: Սուրբ գրքին խիստ բացայայտ վկայութեանց մէջէն մէկ քանին դնենք հոս. « Եղիցին մի հօտ և մի հովիւ ». (Յովհ. Ժ:) « Հայր սուրբ, պահեա զնոսա յանուն քո զորս ետուր ինձ, զի եղիցին մի որպէս և մեք մի եմք ». (Յովհ. ԺԷ:) « Մի տէր, մի հաւատք և մի մկրտութիւն ». (Եփես. Դ:) « Որպէս մարմին մի է, և անդամս բազումս ունի, նոյնպէս և Քրիստոս. քանզի միով հոգւովամենեքեան՚ի մի մարմին մկրտեցաք ». (Ա Կորնթ. ԺԲ:) Ահա աս վկայութիւններով յայտնի կ՚իմացուի թէ ամէն մկրտեալ ազգք և ազինք մէկտեղ գալով պիտի ըլլայ մէկ կրօն և մէկ եկեղեցի Քրիստոսի: Աս ճշմարտութիւնս կը գտնուի առաքելական հանգանակին մէջ « Հաւատամք ՚ի սուրբ եկեղեցի ». և Նիկիոյ հանգանակին մէջ. « Ի մի միայն եկեղեցի »: Աս բանս կը հաստատեն նաև եկեղեցւոյ սկիզբէն ՚ի

վեր եղած բոլոր սուրբ Հարք և ժողովք[1]։ Ուրեմն պէտք է որ աս աներկբայ ճշմարտութեան հաւատան նաև նորաղանդները։

Գ. Թէ որ Քրիստոսի ճշմարիտ եկեղեցին երկու կամ աւելի ըլլար, ասոնք իրարու հետ կամ միաբան կ'ըլլային կամ անմիաբան։ Չենք կրնար ըսել թէ անմիաբան պիտի ըլլային։

1 «Մի է մայր մեր եկեղեցի որ երկնեաց զմեզ, և մի է հայր մեր սուրբ Հոգին որ ծնաւ զմեզ. զհարց համահարք և միոյ մօր որդիք՝ երկպառակք լիցին և ոչ միաբան»։ Սուրբն Յովսէփ առ Եղիշէի, Պատմ. Վրդ. Է։

«Զի մի քայքայեալ ցրուեսցին մերձ 'ի դժոխս՝ գեղեցկապէս միաւորեալ Քրիստոսի անդամքն, այլ ամենեքին միոյ գաւաթի, միոյ քնական գաւազանին յարդարեսցին լինել հօտ»։ Յովհ. Իմաստասէր յԱտէնաբ։

«Մի Քրիստոս, մի մկրտութիւն և մի եկեղեցի. զոր ոչ Պօղոս, այլ որ ինքեամբ ընդ մեզ խօսէր՝ յայտնեաց մեզ»։ Գրիգոր Կաթող. Տղայ։

վասն զի անկարելի է որ Քրիստոս իր հաւատացելոցը փոխանակ ճշմարիտ հաւատոյ վարդապետութիւնը սորվեցընելու՝ անոր ներհակ սխալ վարդապետութիւն քարոզէր. ուրեմն պէտք է որ իրարու հետ բոլորովին միաբան ըլլան: Թէ որ պէտք է միաբանին, ան ատեն եկեղեցին չկրնար ըլլալ շատ, հապա մի միայն: Ինչպէս այլ և այլ ազգ չըսուիր ան ժողովուրդը որ նոյն լեզուն կը խօսի, նոյն օրէնքները ունի, և նոյն տէրութեան տակն է. նոյնպէս այլ և այլ մարմիններ չեն ան անդամները որ նոյն արիւնը, նոյն միսը և նոյն կենդանացուցիչ հոգին ունին. հապա մէկ ժողովուրդ՝ մէկ մարմին են: Այս ուրեմն բաց ՚ի Քրիստոսի մէկ ճշմարիտ եկեղեցիէն ուրիշ ճշմարիտ եկեղեցի չէ եղած և չկրնար ըլլալ աշխարհիս վրայ:

## ԺԳ.

## ԱՌԱՋԱՐԿՈՒԹԻՒՆ Գ.

*Հռոմէական, լուտերական և կալվինական եկեղեցիները չեն կրնար ըսուիլ անխտիր Քրիստոսի մէկ ճշմարիտ եկեղեցի։*

## ԱՊԱՑՈՅՑ

*Քրիստոսի ճշմարիտ եկեղեցին չկրնար իրեն վարդապետած հաւատոյ մասանցը մէջ իրարու ներհակ բաներ սորվեցընել, և ոչ կրնայ հաւատալ ու սորվեցընել ան բաները որ իր վարդապետութենէն դուրս են ու անոր կը հակառակին։ Իսկ արդ հռոմէական, լուտերական և կալվինական եկեղեցիները իրարու կը հակառակին հաւատոյ մասանց մէջ, և կը հաւատան ու կը սորվեցընեն այնպիսի բաներ որ մէկմէկու ներհակ են (ինչպէս որ կ'երևնայ իրենց վարդապետութիւններէն՝ որոնց վրայ պիտի խօսինք). ապա ու-*

րեմն հռովմէական, լուտերական և կալվինական եկեղեցիները չկրնար ըլլալ որ նոյնպէս Քրիստոսի մի և նոյն ճըշմարիտ եկեղեցին ըլլան անխտիր. Հապա անոնցմէ մէկը միայն պիտի ըլլայ [1]:

## ԺԴ.

## ԱՌԱՋԱՐԿՈՒԹԻՒՆ Դ.

*Քրիստոնեայք որ և իցէ կրօնի մէջ ապրելով չեն կրնար փրկուիլ:*

### ԱՊԱՑՈՅՑ

Չկրնար փրկուիլ մէկը՝ ինչուան որ Քրիստոսի ճշմարիտ եկեղեցւոյն մէջ չգանուի, և անոր անդամը չըլլայ: Աս բանս շատ պարզ է, ու սուրբ գըրքին խօսքերովը հաստատուած է. « Ն-

1 « Առաքելական եկեղեցիք Թէպէտ և ընդ բազում տեղիս են, սակայն մի ասին վասն միաբանական հաւատոյն ». Խոսրով՝ Մեկն. Պատարագ:

թէ որ ոչ է հաստատեալ յիս ; ել նա արտաքս իբրև զուռն և ցամաքեցաւ . և ժողովեն զնա և 'ի հուր արկանեն , և այրի » . ( Յովհ . ԺԵ . ) ուրիշ ասոր նման վկայութիւններ ալ շատ կան ։ Արդ ամէն քրիստոնեայ իր կրօնքը պաշտելով՝ չզատուիր Քրիստոսի Ճըշմարիտ եկեղեցւոյն մէջ , և ոչ անոր անդամն է ։ Թէպէտ և հռոմէական , լուտերական ու կալվինական եկեղեցիները ամէնն ալ քրիստոնեայ են , վասն զի մկրտութիւն ունին , բայց ասոնցմէ մէկն է միայն Քրիստոսի Ճշմարիտ եկեղեցին . իսկ մէկալները նոյն Ճըշմարիտ եկեղեցւոյ մարմնոյն ապականեալ ու կտրուած անդամներն են . ինչպէս որ նախընթաց գլխոյն մէջ ըսինք ։ Ուրեմն ամէն քրիստոնեայ չկըրնար փրկուիլ իր կրօնքին մէջ ( բաց 'ի անյաղթելի տգիտութեան մէջ եղողներէն ) . ուրեմն կամ հռոմէական եկեղեցւոյն անդամները , կամ լուտերականները և կամ կալվինականները յաւիտենական փրկութեն Ճամբէն դուրս

են. վասն զի Քրիստոսի Ճշմարիտ Եկեղեցիէն դուրս են ¹ :

## ԺԵ

### ԱՌԱՋԱՐԿՈՒԹԻՒՆ Ե.

Քրիստոսի Ճշմարիտ Եկեղեցին ճանչնալու համար, պէտք է դիտել մէկ քանի յայտնի նշաններ, որ են եկեղեցւոյն մի, սուրբ, կաթուղիկէ և առաքելական ըլլալը ²:

### ԱՊԱՑՈՅՑ

Աստուած ամենակարող, ամենիմաստ, ամենաբարի չէր ըլլար՝ թէ

1 « Դաւիթ դուռն տեառն զեկեղեցի ասէ, և արդարք մտանեն ընդ սա. զի որ ոչ մտանէ յեկեղեցի՝ ոչ մտանէ յարքայութիւն ». Տէրտուղիանոս:

« Որ 'ի ծով այս աշխարհի՝ շինեաց տապան զեկեղեցի, և 'ի սմա զօժանդակեալ հոգիս փրկեաց 'ի ջուրց մեղաց ». Շարական:

2 « Աղաչեսցուք զամենակալն Աս-

որ ուզենար որ մարդիկ աշխարհիս վրայ զինքը փառաւորեն , և ետքը արքայութեան մէջ վայելեն զինքը , ու չկարենար կամ չուզենար անոնց մէկ քանի յայտնի ու անսխալ նշաններ տալ՝ որով իմացընէր թէ ինչ պաշտօնով և կրօնքով կ'ուզէ որ իրեն ծառայեն՝ որպէս զի վերջը յաւիտենական փառօք զիրենք վարձատրէ ։ Ուրեմն թէ որ Աստուծոյ ստորոգելիքները անսահման են , պէտք է որ մէկ քանի յայտնի ու պարզ նշաններ ըլլան՝ որոնցմով կարենանք ճանչնալ թէ որն է ան ճշմարիտ կրօնքը և Քրիստոսի եկեղեցին , ուսկից դուրս եղողին փրկութեան յոյս չկայ , ինչպէս որ ցուցինք ։ Ասկէ կը հետևի թէ Աստուած իր նախախնամութեամբը հարկ կը սեպէ իր հաւատքը տարածողներուն օգնել , ինչպէս որ միշտ օգնած է , որ-

տուած . . վասն միայնոյ , սուրբ , կաթուղիկէ և առաքելական եկեղեցւոյ ». Ժամագիրք ։

պէս զի անոնց իրենն պաշտօնեաներն ըլ-լալը դիւրաւ ճանչցուի , ու ոչ ոք կարե-նայ տարակուսիլ անոնց վարդապե-տած հաւատքին ճշմարտութեանը վրայ, տեսնելով որ աստուածային հրաշք-ներով կը հաստատեն ։ Աս նշանները Ղ'ւկիոյ հանգանակին մէջ որոշ դը-րուած են , մենք ալ հոս համառօտ կեր-պով խօսինք ։ Որդ պէտք է որ Քրիս-տոսի ճշմարիտ եկեղեցին մի միայն ըլ-լայ ։

Ա. Մէ է , վասն զի պէտք է որ իր սորվեցուցած վարդապետութիւնը , կրօնքը ու հաւատքը բոլոր աշխարհք մի և նոյն ըլլայ , ինչպէս որ ութերորդ գլխուն մէջ ըսինք ։ Դարձեալ , մի է ե-կեղեցին անով որ մէկ երևելի գլուխ ու-նի 'ի Քրիստոսէ հաստատուած ։ Վասն զի թէ որ աս խօսքես « Նյւ եղեցին մի հօտ » պէտք է հասկընանք թէ ան հօ-տը միշտ մէկ պիտի մնայ , և երևելի պիտի ըլլայ ինչուան աշխարհիս վերջը , նոյնպէս աս խօսքս ալ « Նյւ մի հովիւ » պիտի հասկընանք մէկ երևելի հովուի

մը վրայ, որ ինչուան աշխարհիս վերջը պիտի մնայ։ Այսպիսի երեւելի հովիւ մը ուզեց տալ Քրիստոս իր եկեղեցւոյն՝ քանի որ ինքը անձամբ կը կառավարէր զանիկայ, իրեն փոխանորդ ընելով զսուրբն Պետրոս։ Արդ ի՞նչպէս կրնայ Քրիստոս թողուլ առանց երեւելի հովուի մը իր եկեղեցին, մանաւանդ ան կարօտութեան ժամանակը որ հարկաւոր էր իր հօտը ընդարձակել ու աշխարհներուն թիւը բազմացընել։ Ուրեմն պէտք է որ անիկայ ըլլայ Քրիստոսի Ճշմարիտ եկեղեցին՝ որուն թէ վարդապետութիւնը, թէ կրօնքը, թէ հաւատքը միշտ նոյն եղած է, եւ նոյնպէս քարոզուած, եւ մէկ հովիւ ու մէկ երեւելի գլուխ ունեցեր է եւ ունի, որ երբեւ փոխանորդ Քրիստոսի կը հովուէ իր հօտը եւ Քրիստոսի խորհրդաւոր մարմնոյն երեւելի անդամները՝ որ մենք ենք։ « Իսկ դուք մարմին Քրիստոսի էք, եւ անդամք յանդամոց նորա » ( Կորնթ. ԺԲ )։ Ըս կերպով Աստուած նաեւ

Հին օրինաց եկեղեցին, որ Հրէից ժողովարանն էր, կը կառավարէր մէկ քահանայապետով կամ երեւելի մարգարէի մը ձեռքով¹ ։

Բ. Առաջին պէտք է ըլլայ Քրիստոսի եկեղեցին. այսինքն իրեն սորվեցուցած վարդապետութիւնը սուրբ պիտի ըլլայ, իր վարքը սուրբ պիտի ըլլայ, եւ իր սրբութիւնը հրաշքներով հաստատուած պիտի ըլլայ ։ Վարդապետութեանց ու

1 «Ժողովեցան հեթանոսք եւ եղեն եկեղեցի Քրիստոսի միաձայնութեամբ հաւատոց, միով հոգւով միացեալ ՚ի մարմին մի յօդիւ խաղաղութեամբ... իբրեւ անդամք շարադրեալք ՚ի գլուխն Քրիստոս»։ Անանիա Վարդապետ, ՚ի Յոճան ։

«Մի է տէր, մի հաւատք, մի մկրտութիւն, մի եկեղեցի ՚ի զանազան ազգաց որոշեալ, և մկրտութեամբ ծնեալ եւ Քրիստոսի անուանեալ... Իսկ թէ ասես, Քրիստոս մի է, բայց առ Նա հաւատոցն որքա զանազանապէս բերին, ծանիր.. որպէս զՔրիստոս մի, եւ զարցս հաւատոյն առ Նա միապէս»։ Լամբրոն. ՚Ի Մէկն. Պատար ։

վարուց կողմանէ սուրբ ըլլալուն ամենեւին տարակոյս չկայ. և կարելի ալ չէ որ կրօնք մը ճշմարիտ ըլլայ, ու վրան չտեսնուի աստուածային օրինաց ճիշդ պահպանութիւն, մոլութեանց դէմ ատելութիւն, և առաքինութեանց սէր։ Իսկ հրաշքները միշտ Քրիստոսի եկեղեցւոյն ամենաստոյգ ու մեծ նշաններէն մէկը եղած են, և նոյն եկեղեցւոյ տուեր է Աստուած ճշմարիտ հրաշագործութեան կարողութիւնը, որպէս զի անսխալ ապացոյց ըլլան անոր քարոզած ճշմարտութեանցը։ «Նշանք այնոցիկ որ հաւատասցեն՝ երթիցեն զհետ այսոցիկ. յանուն իմ դեւս հանցեն, լեզուս խօսեսցին» (Մարկ. ԺԶ)։ Ուրեմն ան եկեղեցին է Քրիստոսի ճշմարիտ եկեղեցին՝ որ իր վարդապետութեանց մէջ սրբութիւն կը սորվեցընէ, սուրբ է իր վարքը, ու հրաշքներով կը հաստատուէ իրեն սուրբ ըլլալը [1]։

1 «Եւ անուանեսջիր դու կամք իմ։ Եւ երբ կոչեցաւ անուն քաղաքին Երու-

Գ. Կաթողիկէ կամ ընդհանրական պի-
տի ըլլայ Քրիստոսի Ճշմարիտ եկեղե-
ցին. այսինքն ամէն ժամանակ եղած
ըլլայ և ամէն տեղ քարոզուած՝ գոնէ
հետ զհետէ։ Աս բանս կը ցուցուի
սուրբ գրքին շատ վկայութիւններո-
վը. «Երթայք յաշխարհ ամենայն և
քարոզեցէք զաւետարանն ամենայն ա-
րարածոց» (Մարկ. ԺԶ)։ «Ընդ ա-
մենայն երկիր ել բարբառ նոցա, և մին-
չև ՚ի ծագս աշխարհի են խօսք նոցա»
(Սաղմ. ԺԸ)։ Ուրեմն ան է Քրիս-
տոսի Ճշմարիտ եկեղեցին, որն որ վե-
րի ըսած պայմանները ունենալով կա-
թուղիկէ և ընդհանրական է [1]։

սաղեմի կամք Աստուծոյ։ Ապա յայտ է
զի զեկեղեցւոյ է բանս՝ ՚ի լնուլն զկամս
Աստուծոյ, որ է սրբութիւնն մեր. յո-
րում բնակէ Աստուած ՚ի սուրբս որպէս
՚ի գեղեցիկ շինուածի». Գէորգ Վարդա-
պետ ՚ի Մէկն. Եսայ։

1 «Զինչ է կաթուղիկէն. — Տիեզե-
րական. զի ամենայն եկեղեցիք ուղղափա-
ռաց որ ընդ տիեզերս են՝ մի են։ Զի ուր
և հաստանիցէ Ճշմարիտ հաւատացեալն՝ յե-

Դ. Առաքէլեան պիտի ըլլայ Քրիստոսի ճշմարիտ եկեղեցին. այսինքն Քրիստոսէ սկսուած, անոր աշակերտներէն քարոզուած, և սրբոյն Պետրոսի և իր ընկերացը սորվեցուցած վարդապետութեանը վրայ հիմնած. «Դու ես վէմ, և 'ի վերայ այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ» (Մատթ. ԺԶ). Ուրեմն ան է Քրիստոսի ճշմարիտ եկեղեցին՝ որն որ ցուցուի թէ Քրիստոսէ սկսած է, և մինչև հիմա անընդհատ տևած՝ անարատ պահելով իրեն առաքելական վարդապետութիւնը[1]։

կեղեցի է. և ոչ որոշէ զնա ոչ աշխարհն և ոչ լեզուոյն օտարութիւնն, այլ ընդունի որպէս մայր 'ի գիրկս իւր սաստիկ սիրով» Խոսրով 'ի Մեկն. Պատար.։

1 «Որք թիւրեալքն են յառաքելոցն դաւանութենէ՝ նոքա ոչ են առաքելական կոչին». Խոսրով 'ի Մեկն. Պատար.։

# ԺԶ

## ԱՌԱՋԱՐԿՈՒԹԻՒՆ Զ.

*Քրիստոսի ճշմարիտ եկեղեցին չկրնար սխալիլ, ոչ վերցուիլ, և ոչ ծածուկ մնալ։*

## ԱՊԱՑՈՅՑ

*Չկրնար ըլլալ որ Աստուած իր խոստմունքը չկատարէ։ Իսկ արդ ինքը խոստացաւ միշտ իր եկեղեցւոյն օգնելու, որպէս զի չսխալի հաւատոյ մասանց մէջ, չվերցուի, և ոչ ծածուկ մնայ. ուրեմն Քրիստոսի ճշմարիտ եկեղեցին չկրնար ամենևին սխալիլ հաւատոյ մասանց մէջ, ոչ վերցուիլ, և ոչ ծածուկ մնալ։ Ասիկայ ամենասոյգ ճշմարտութիւն մըն է որ յայտնի կ'երևնայ սուրբ գրքին մէջ. Թէպէտ և նորաղանդները աս բանիս սաստիկ դէմ կը կենան։ «Դուք էք լոյս աշխարհի։ Ոչ կարէ քաղաք թաքչել որ 'ի վերայ լերին կայցէ» (Մատթ.*

Ե): «Դրունք դժոխոց զնա մի յաղ-թահարեսցեն»(ԺԶ): «Ահաւասիկ ես ընդ ձեզ եմ զամենայն աւուրս մինչև 'ի կատարած աշխարհի»,(ԻԸ): «Եկեղեցի Աստուծոյ կենդանւոյ, սիւն և հաստատութիւն ճշմարտութեան» (Տիմ. Գ): «Ճշմարտութիւն տեառն մնայ յաւիտեան» են (Սաղմ. ՃԺԶ):

Այս վկայութիւնները բովանդակ պէտք է Քրիստոսի եկեղեցւոյն վրայ հասկընալ, և չէ թէ առանձին մէկ քա-նի եկեղեցիներու վրայ. և պէտք է հաւատալ իբրև աներկբայ ճշմարտու-թիւն, թէ Աստուած չկրնար թողուլ որ իրեն բոլոր հաւատացեալները ի-րենց երևելի գլխովը մէկտեղ սխալին, ու յանձն առնուն և քարոզեն՝ աւե-տարանին և առաքելական վարդա-պետութեանցը հակառակ սկզբունք-ներ[1]: Սակայն առանձին քրիստոնեայք,

1 «Իբրև զեառն յաւիտենական անհա-րուածելի է 'ի գլխաւորաց. ըմբռնէ զհոգևորս իբր զհնարադրութիւն մեծին

և առ ճշմարիտ եկեղեցւոյն անդամնե-րէն ոմանք կրնան սխալիլ ու մոլորիլ, և մոլորեցան. Ինչպէս որ յայտնի գի-

արուեստի. անմեղս և անվրիպութիւնս՝ ըստ Քրիստոսի հետոցն ընթանայ». Գ.ՆԳ. Նարէկ :

« Հիմն այնմ քաղաքի առաքեալք և մարգարէք, և շինուածք՝ դասք ամենայն արդարոց. Նոքին դարձեալ են բնակիչք. և ասէ. Մի երկնչիք, զի այս քաղաք եկեղեցի որ 'ի վերայ երկնային լերին հաստատեալ է՝ ոչ թաքչի, և դրունք դժոխոց զնա մի յաղթահարեսցեն ». Ներս. Շնորհ. 'Ի Մէկն. Մատթ. :

« Որպէս շուշան երևի և վայելուչ է 'ի մէջ զանազան խոտոց, այսպէս սուրբ եկեղեցի Քրիստոսի հրաշափառ փայլեալ ծագեսցէ 'ի մէջ ազգաց ». Զաքար. Կաթող. 'Ի Մէկն. Երգ :

« Զկերպարանս քո ունէր տապանն Նոյեան, այլ 'ի զիջանել ջրոյն՝ մնաց թափուր... Իսկ դու ունեալ բաւես մինչ յերևել երկնաւոր փեսային հայրական իշխանութեամբ ». Նոյն անդ :

« Լուսով աստուածութեան քո Քրիստոս լուսաւորեցեր սուրբ զեկեղեցի. պահեա զսա անշարժ յաւիտեան ». Շարական :

անենք. և աս բանս Քրիստոս ալ առաջուց գուշակած էր ըսելով, թէ «Բազում սուտ մարգարէք յարիցեն և ըզբազումս մոլորեցուսցեն» (Մատթ. ԻԴ). և թէ «Ի ձէնջ յարիցեն արք որ խօսիցին թիւրս, ձգել զաշակերտսն զկնի իւրեանց» (Գործք. Ի): Այսպէս մոլորեցան իրենց հետևողներովը մէկտեղ Արիոս՝ որ Քրիստոսի աստուածութիւնը ուրացաւ. Մակեդոն՝ որ Հոգւոյն սրբոյ աստուածութիւնը ուրացաւ. Նեստոր՝ որ ՚ի Քրիստոս երկու անձն դրաւ. Եւտիքէս և Դիոսկորոս՝ որ ըսին թէ Քրիստոս մէկ բընութիւն ունի. Պեղագիոս՝ որ սկըզբնական մեղքը, և շնորհաց հարկաւորութիւնը ուրացաւ. Միակամեայք՝ որ կ՚ըսէին թէ Քրիստոս մէկ կամք միայն ունի. Դոնատեանք՝ որ կ՚ըսէին թէ եկեղեցին բոլորովին ջնջուած է, և միայն իրենց Դոնատոս առաջնորդին վրայ մնացեր է, և ուրիշ ասանց նման հերետիկոսներ, որոնք ամէնքն ալ եկեղեցին դատապարտեց, ու իբրև

փտած անդամներ՝ հաւատացեալոց առողջ մարմինէն կտրեց։ Աս ըսածիս ճշմարտութեանը չէ թէ միայն հռովմէականք պիտի հաւատան, հապա նա և ամէն նորադարձք, թէ լուտերականք և թէ կալվինականք. վասն զի չեն կրնար մերժել առաջին դարերու մէջ նախնական եկեղեցւոյն ըրած վճիռները, որ բոլոր հիմակուան քրիստոնեայք իբրև Քրիստոսի ճշմարիտ եկեղեցի կը ճանչնան։

## ԺԸ

## ԱՌԱՋԱՐԿՈՒԹԻՒՆ Է.

*Չկրնար մէկը հաւատքով միայն փրկուիլ՝ առանց բարի գործքերու։*

### ԱՊԱՑՈՅՑ

Թէ որ միայն հաւատքով կարենայինք փրկուիլ՝ առանց բարի գործքերու, հարկ պիտի չըլլար աստուածային պատուիրանները պահել։ Իսկ

արդ. մենք գիտենք թէ փրկուելու համար շատ հարկաւոր է աստուածային պատուիրանները պահել, ինչպէս կը սորվեցընէ մեզի սուրբ գիրքը. ուրեմն առանց բարի գործքերու չենք կրնար հաւատքով միայն փրկուիլ։ Սուրբ գրքէն մէկ քանի վկայութիւններ դընենք հոս. «Եթէ կամիս 'ի կեանսն յաւիտենականս մտանել, պահեա զպատուիրանս» (Մատթ. ԺԹ)։ «Որ ունի զպատուիրանս իմ և պահէ զնոսա, նա է որ սիրէ զիս» (Յովհ. ԺԴ)։ «Աստուած հատուցանէ իւրաքանչիւր ըստ գործս իւրեանց» (Հռովմ. Բ)։ «Իւրաքանչիւր ոք զիւր վարձս առնուցու ըստ իւրում վաստակոց» (Ա Կոր. Գ)։ «Զի ոչ եթէ որ լսելիք օրինացն են՝ արդարացեալ են առաջի Աստուծոյ, այլ առնելիք օրինացն արդարասցին» (Հռովմ. Բ)։ Նորաղանդներուն աս առաջարկութեանս դէմ սուրբ գրքէն բերած վկայութիւնները ամենևին չեն հակառակիր մեր բերած վկայութիւններուն. ինչու որ անոնց ի-

մասամբ ալ պէտք է աս կերպով հասկը-նալ՝ թէ գործք առանց ճշմարիտ հաւատոյ չեն կրնար փրկել զմարդ. ինչ կերպով որ նաև առաջին եկեղեցւոյ սուրբ հարք հասկըցած են։

Բայց Լուտեր և իրեն հետևողները չեն հասնիր ան սրբոց հարց տուած մեկնութեանը. վասն զի Լուտեր կը պնդէ թէ միայն հաւատքը բաւական է փրկուելու համար. և իր սխալ կար-ծիքը պաշտպանելու մտքով չէ թէ միայն սուրբ գրքին մէկ քանի վկայու-թեանցը ծուռ մեկնութիւններ կուտայ, հապա նաև կը յանդգնի մէկ քանին իր ուզածին պէս փոփոխել, և բոլոր Հոգւոյն սրբոյ ըսածները կ'աւրէ, իբր թէ Հոգին սուրբ անանկ անճռո-նի կերպով մարդուս տուն տուած ըլ-լար նոյն վկայութիւնները։ Ինչպէս Պօղոս առաքելոյն աս վկայութեանը վրայ, « Համարիմք հաւատով արդա-րանալ մարդոյ » ( Հռովմ. գ. ), ինքը կ'աւելցընէ « Միայն հաւատով ». և սրբոյն Պետրոսի աս վկայութենէն

« Եղբարք, առաւել փութացիք զի բարեացն գործովք հաստատուն զձեր կոչումն և զընտրութիւն պահիցէք » (Պետր. Բ), ինքը կը վերցընէ աս երկու խօսքը « բարեացն գործովք »: Լուտերին աս գիրքը յիրաւի շատ յարմար է ամէն դժուարութիւն դիւրաւ մեկնելու համար. բայց աս գիրքը միայն պարզամիտ ու տխմար մարդիկները խաբելու կը ծառայէ. վասն զի որոնք որ քիչ մը տեղեակ են սուրբ գրքին՝ մէկէն կ'իմանան խարդախութիւնը, և կը զարմանան, կը խնդին իրեն այնպիսի խաբէութեանը վրայ:

Աս առաջարկութեան Ճշմարտութիւնը նաև սուրբն Յակոբոս առաքեալ իր թղթին մէջ կը հաստատէ. « Այնպէս և հաւատք եթէ գործս ոչ ունիցին՝ մեռեալ են առանձինն » (Յակ. Բ). և քիչ մը ետքը կ'ըսէ. « Տեսանէ՞ք զի 'ի գործոց արդարանայ մարդ, և ոչ 'ի հաւատոց միայն »: Ահա աս է պատճառը որ Նորաղանդները աս թուղթը չեն ընդունիր. վասն

զի պարզապէս կը հակառակի իրենց վարդապետութեանը, և կ'ուզեն որ կանոնականն գրոց կարգը չանցուի։ Բայց չեն կրնար մերժել՝ ինչուան որ իրաւացի պատճառ չցուցընեն, որ յաւիտեան ցուցընելիք չունին. ուստի միշտ պիտի ըլլայ անհակառակելի ճըշմարտութիւն աստուածային հաւատոյ, թէ « Հաւատք առանց գործոց մեռեալ են », ինչպէս որ կը հաստատէ Յակոբոս առաքեալ։

## ԺԲ

## ԱՌԱՋԱՐԿՈՒԹԻՒՆ Ը.

*Քրիստոսի ճշմարիտ եկեղեցւոյն մէջ գըտնուելու համար՝ բաւական չէ հաւատոյ մէկ քանի գլխաւոր մասանցը հաւատալ, հապա պէտք է ամենուն ալ հաւատալ։*

## ԱՊԱՑՈՅՑ

*Քրիստոսի ճշմարիտ եկեղեցւոյն մէջ ըլլալու համար պէտք է հաւատալ*

թէ ինչ որ Աստուած յայտնած է՝ ամէնն ալ ճշմարիտ են. իսկ արդ հաւատոյ ամէն մասունքն ալ Աստուծմէ յայտնուած են. վասն զի թէ որ Աստուած յայտնած չըլլար, հաւատոյ մասունք չէին սեպուէր. ուրեմն Քրիստոսի ճշմարիտ եկեղեցւոյն մէջ ըլլալու համար բաւական չէ հաւատոյ մէկ քանի գլխաւոր մասանցը հաւտալ, հապա պէտք է ամէնուն ալ հաւտալ։ Ըսկէ կը հետևի թէ հաւատոյ մասանց մէջ չենք կրնար զանազանութիւն դնել. իբր թէ ոմանք էական ըլլան և ոմանք պարագայական. վասն զի ամէնքն ալ Աստուծմէ յայտնուած ըլլալով հարկաւոր են մեր հաւատքին. և նոյնպէս հերետիկոս կ՚ըլլան թէ ան՝ որ ուրանայ Քրիստոսի յարութիւն առնելէն ետև երկինք ելլելը, և թէ ան՝ որ ուրանայ Քրիստոսի Զաքէոսին տունը երթալը. վասն զի ինչպէս մէկը՝ նոյնպէս մէկալն ալ աւետարանական ճշմարտութիւն է. Աստուած անսխալ է՝ ինչպէս մեծ բաներու մէջ՝

նոյնպէս նաև պզտիկ բաներու մէջ. և մեծ հայհոյութիւն կ'ըլլար ըսելը թէ Աստուած պզտի բաներու մէջ կըրնայ խաբուիլ կամ խաբել. ուստի մեծապէս կ'անարգէ զԱստուած ան մարդը որ բոլոր սրտանց չհաւատայ ինչ և իցէ բաներու որ Աստուած իբրև ճըշմարիտ յայտնած է ։ Աս ըսածիս ճըշմարտութիւնը նաև սրբոյն Աթանասի հանգանակին մէջ որոշ կը տեսնուի. « Եթէ ոք կամիցի փրկութեան հասանել, հարկ՚ի վերայ կայ զի յառաջ քան զամենայն ունիցի կաթուղիկէ հաւատս, և եթէ ոք ոչ անխախտ և ամբողջ պահիցէ զնոյն, անտարակոյս կայ մնայ նմա կորնչել յաւիտեան » ։

ԺԹ

Ինչպէս կ'երևնան ձեզի, բարեկամք իմ, աս ըսած առաջարկութիւններս ։ Թէ որ ինչպէս ինծի և ամէն ողջամիտ մարդու՝ նոյնպէս ալ ձեզի անժխտելի կ'երևնան, ուրեմն ընդունեցէք

զանոնք , ու ետքը մէկտեղ առած եր֊ թանք՝ ինչուան որ աս ուղիղ ճամբով գտնենք Քրիստոսի ճշմարիտ եկեղե֊ ցին :

Բայց աս ճշմարիտ եկեղեցւոյ վրայ տեղն 'ի տեղը խօսելէն առաջ՝ ձեր առ֊ ջեւը ուրիշ քանի մը ճշմարտութիւններ ալ պէտք է դնեմ. վասն զի ես ալ ա֊ նոնցմով իմ նպատակիս հասայ , այս֊ ինքն ճշմարտութիւնը ճանչցայ :

Վերոյիշեալ ընդհանուր ճշմարտու֊ թիւններէն զատ ( որ սուրբ գրոց վը֊ կայութիւններու և բանաւոր պատճառ֊ ներու վրայ հաստատուած ըլլալով՝ պէտք է որ ամենայն քրիստոնեայք ընդ֊ ունին), յայտնի է որ իւրաքանչիւր կրօն իրեն յատուկ սկզբունք և վարդապե֊ տութիւններ ունի , որ իր աստուածաբա֊ նութեան ծուծը կը սեպուին : Շիտա֊ կը զրուցելով, որչափ որ հռոմէական եկեղեցւոյն վրայ շինուեցայ՝ երբոր իր վճիռներն ու սկզբունքը համաձայն գտայ թէ մարդկային խելքի և թէ սուրբ գրոց , նոյնչափ ալ գայթակղե֊

ցայ լուսաւորականաց և կալվինականաց
և ուրիշ Նորաղանդից սկզբանցը վրայ՝
որ բոլորն ալ անճոռնի, ամօթալի, և
Հոգւոյն սրբոյ ըսածներուն դէմ են։
Օրինակի համար՝ երկու կողմի ա-
տուածաբանութեանն ալ գլխաւոր ը-
կզբանցը մէկ քանին դնեմ։

## Ի

Հռոմէական դաւանութեան սկզբունքն
ու վարդապետութիւնները։

Ա. Ո՛ր և իցէ մահացու մեղքէ
պէտք է զգուշանալ. և Աստուծոյ շը-
նորհքովը ամէն մարդ կարող է աս
զգուշութիւնս ընել։

Բ. Ո՛ր և իցէ մահացու մեղք ար-
ժանի է յաւիտենական պատժոյ. ար-
դար մարդուն ալ ո՛ր և իցէ բարի գործ-
քը արժանաւոր է յաւիտենական կե-
նաց։

Գ. Մեղաց թողութիւն չըլլար՝ ին-
չուան որ մարդ անոր վրայ չզղջայ. և

ծանր մեղքէ մը ետքը՝ կամ ապաշխարանք կը մնայ եւ կամ դժոխք։

Դ. Ամէն ծանր մեղք խոստովանանքի մէջ պիտի զուրցուի. եւ վրան սրտանց ցաւելու, եւ հաստատուն առաջադրութիւն ընելու է՝ նոյն մեղքը մէյմ'ալ չգործելու։

Ե. Ամենեւին մեղք պիտի չգործուի ինչ եւ իցէ պատճառաւ. եւ պէտք է ամէն նեղութիւն յանձն առնուլ՝ քան թէ մեղք մը գործել, թէպէտ եւ թեթեւ ըլլայ. վասն զի ան թեթեւ մեղքին համար ալ պատասխան պիտի տանք Աստուծոյ։

Զ. Քրիստոս տէրն մեր ամենուն համար մեռաւ. եւ ամէն մարդ կրնայ փրկուիլ՝ թէ որ բոլոր սրտանց փրկութեան փափաքի, ու բարի գործքերով իրեն մերձեցընէ Քրիստոսի փրկագործութեան առատ արդիւնքը։

Է. Առանց Աստուծոյ շնորհացը չենք կրնար բարի գործ մը ընել՝ որ յաւիտենական վարձուց արժանի ըլլայ. Աստուած ալ իր շնորհքը կուտայ

մեզի՝ թէ որ մենք շնորհք ընդունելու անհոգ չկենանք. ասով աստուածային պատուիրանաց պահպանութիւնը ոչ միայն կարելի՝ հապա նաև դիւրին կ'ըլլայ ։

Ը. Մարդս արքայութիւն չմտներ՝ ինչուան որ բոլորովին չորբուի ու չազատի իրեն մեղքերէն և մեղաց պատիժներէն. ուստի անդիի աշխարհքը քաւարան կայ, և հոն մարդս իր մնացած պարտքերուն հատուցումը կ'ընէ ։

Թ. Սուրբերը պէտք է բարեխօս ընել, և անոնց պատկերները ու մասունքը պատուել ։

Ժ. Ողջախոհութիւնը, հնազանդութիւը, աւետարանական աղքատութիւնը և կրօնաւորական վիճակը խիստ գովելի և աստուածահաճոյ առաքինութիւններ են ։

Հիմայ գանք նորադարձներուն ըսկզբունքը քննելու՝ որ հոս համառօտ մը կը յիշեմ ։

# ԻԱ

Նորաղանդից սկզբունքն ու վարդապետութիւնները ։

Ա. Անկարելի բան է Աստուծոյ պատուիրանքները պահելը ։

Բ. Ամէն մարդ պարտական է հաւատալու թէ ինքը նախասահմանեալ է, և թէ անտարակոյս պիտի փրկուի ։

Գ. Ով որ կը հաւատայ թէ ինքը նախասահմանեալ է, ամենևին չկրնար մեղք գործել. և ինչ և իցէ բան ընէ, թէպէտ և ըրածը ամենագէշ բան ըլլայ՝ Աստուած զանիկայ մեղքի տեղ չդներ ։

Դ. Արդարոյն ըրած բարի գործքերը յաւիտենական կենաց արժանաւոր չեն ։

Ե. Մեղքէ ետ կենալը մեր ձեռքը չէ. վասն զի Ադամայ մեղքովը մեր ազատութիւնը կորսնցուցած ենք ։

Զ. Մեր մեղացը վրայ պէտք չէ ապաշխարենք, վասն զի Քրիստոս ա-

նոնց կատարեալ հատուցումն ըլլալ իր արդիւնքովը :

Է. Պէտք չէ ողջախոհութիւն պահել. և կրօնաւորական կեանքը և ուխտերը՝ աշխարհիս վրայէն ջնջելու է. վասն զի դէշ ու սատանայական վիճակ մըն է: Ըսիկայ Լուտերի յայտնի և ամօթալի վարդապետութիւններէն մէկն է:

Ը. Խոստովանանքը աւելորդ բան է. և թէ որ մէկը ուզենայ խոստովանիլ՝ կրնայ նաև աշխարհական մը, կնիկ մարդէ մը կամ որ և իցէ անձէ արձակումն առնուլ:

Թ. Սուրբերը ոչ կարելի է և ոչ ալ պէտք է բարեխօս բռնել, և անոնց պատկերները կամ մասունքը պէտք չէ պատուել:

Ժ. Ընդլի աշխարհքը քաւարան չկայ, և պատարագի խորհրդին պէտք չէ հաւատալ: Խորհուրդներուն համար ալ որը կ՚ըսէ թէ միայն իրեք են, որը երկուք, որն ալ մէկ:

ԺԱ. Քրիստոս էակապէս հաղորդութեան մէջ ներկայ չէ, հապա ան-

ցողաբար . և միայն մարդուս հաղորդուելու առենը հացին ու գինւոյն գոյացութեանը հետ է . անոր համար հաղորդուելու առեն երկու տեսակէն ալ պէտք է տալ ամէն մարդու ։ Լուտեր սուրբ հաղորդութեան վրայ աս կերպով կը խօսի . բայց Կալվին՝ ինչպէս ուրիշ շատ բաներու մէջ, աս բանիս մէջ ալ Լուտերին դէմ կը պնդէ թէ Քրիստոս ամենևին մէկ կերպով մը ներկայ չէ հաղորդութեան մէջ . որ սուրբ գրոց բացայայտ վկայութիւններուն բոլորովին հակառակ է , ինչպէս որ քիչ մը ետքը պիտի տեսնենք ։ Կալվինական նորաղանդները ուրիշ վարդապետութիւններ ալ ունին . ինչպէս կ՚ըսեն թէ Աստուծոյ կատարելութիւնները անսահման չեն ։ Որդին Աստուած և Հոգին սուրբ Հօր Աստուծոյ հաւասար չեն ։ Քրիստոս միայն նախասահմանելոց համար մեռաւ . խաչին վրայ իր հաւատքէն թուլցաւ , իր փրկութեանը վրայ տարակուսեցաւ և ասոր համար դժոխքը իջաւ ու հոն պատիժ քա֊

չեց ։ Ըսուած է մեղաց պատճառ , և անփոփոխելի վճռով՚ի յաւիտենից որոշած է որ զոմանս երանութեան հասցընէ և զոմանս դատապարտէ՝ առանց ամենևին անոնց ազատութեանը նայելու , հապա մանաւանդ թէ մարդուս ազատութիւնը բոլորովին կը վերցընէ ։ Անկրօնութիւնը հաւատացելոց տղոցը համար աւելորդ է ․ իսկ անհաւատից համար անօգուտ , և այլն ։

Լուտերի և Կալվինի վարդապետութենէն ուրիշ այլևայլ աղանդներ ալ ելան ․ ինչպէս բուն Բօղօտօրէօս կամ Փօօլէչօլանէ ըսուած նորաղանդները Անգղիայի մէջ , որոնց դաւանութիւնը լուտերականաց և կալվինականաց վարդապետութենէն բաղադրած բան մըն է , և իրենց եկեղեցւոյն գլուխ կը ճանչնան թագաւորը ։ Մօտրօօնէր կամ Փօօրէլլան ըսուածները , որ կալվինականաց խիստն են , և փրոթէսթանթներուն հակառակ ։ Ինտնօգլօ-խննէրը՝ որ փրոթէսթանթներուն և մաքրասէրներուն դէմ կը պնդեն թէ ոչ եկեղեցի

և ոչ զլուխ եկեղեցւոյ պէտք է ճանչնալ, հապա ինչ որ Հոգին սուրբ մարդուս սիրտը կ'ազդէ՝ անոր պէտք է հետևիլ։ Դողդոջողները՝ որոնք սուրբ գիրքը չեն ընդունիր, գծուծ հագուստ մը կը հագնին, և դիւահարածի պէս զարմանալի տեսիլներ ու յայտնութիւններ կը պատմեն։ Մէնոնէանք՝ որ աւելի Հոլանտայի մէջ կը գտնուին, և Կրկնակնունքներուն պէս՝ սկզբնական մեղքը և տղոց մկրտութիւնը կը մերժեն։ Ուրիշ շատ աղանդներ ալ կան որ ինչուան հարիւրի չափ կը հասնին, և շատ բանի մէջ իրարու հետ համաձայն կ'երթան, շատ բանի մէջ ալ անհամաձայն. Թէպէտ և ամենուն ալ հիմը Կալվինի ու Լուտերի վարդապետութիւններն են։

Հոս համառօտ մը. աս բանս կը ծանուցանեմ, թէ նորաղանդներէն ոմանք Թէպէտ և Լուտերը՝ Կալվինը և ուրիշ աղանդապետները իբրև իրենց եղբայր կ'ընդունին, բայց իբրև իրենց կրօնքին հիմնադիր չեն ընդունիր, և

կ՚ըսեն թէ իրենց կրօնը խիստ հին, ու Քրիստոսէ և անոր աշակերտներէն հիմնած է։ Աս նորաղանդներն ու փռո-թէսթանթները Ալբիգեանք ըսուած աղանդաւորներուն մէկ տեսակն են. ու Ալբիգեանք ըսուելնուն պատճառն ան է որ Ալբի կամ Ալպի անունով կոմսը պատերազմներով իրենց պաշտ-պանութիւն ըրած է. մէկ պատճառն ալ ան է որ Ալպիի ձորովքը աս ա-ղանդաւորները հերքեց։ Շատ տեղ ալ նոյն աղանդաւորները կը կոչուին Վալ-տեանք, Առաքելականք, Աղքատք Լիո-նի, Բարեմարդիկք, Հենրիկեանք, Տօ-լովմականք, և ուրիշ անուններ ալ ու-նին՝ որ կամ իրենց բուն գաւառին, կամ իրենց մէջ անուանի եղող վարդապետ-ներուն, և կամ իրենց դաւանանքին անուններէն առած են։ Իսկ հիմա իրենց գլխաւոր անունն է Մօր------րք, որ Գաղղիայէն Լուչերնա քշուելէն ետքը հնարեցին. և կ՚ըսեն թէ իրենց մէջ ասիկայ պատուոյ անուն է, ու միայն իրենց եկեղեցականներուն կու-

սան ; ինչպէս մենք հայր բառը մեր քա֊
հանաներուն ։ Ըս աղանդը խառնուրդ
մըն է ուրիշ հին ու նոր աղանդներէ ․
Եւ ես որչափ անգամ որ աս տեսակ
նորաղանդներուն հետ վիճեցի՝ չկրցայ
մէկ կերպով մը ստոյգ իմանալ թէ ի֊
րենց բուն վարդապետութիւնը ինչ
է ։ Ըս միայն ստոյգ իմացայ, որ ի֊
րենք կ'ըսեն թէ Քրիստոսի ճշմարիտ
եկեղեցին երրորդ դարէն քիչ մը ետքը
վերցուեցաւ, և հիմակուան Հռովմայ
եկեղեցին՝ Քրիստոսի ճշմարիտ եկե֊
ղեցին չէ, և իրենք են միայն առաքե֊
լական անարատ վարդապետութիւնը
քարոզող ։ Թէ որ աս գրքոյկս նոյն ա֊
ղանդաւորներէն մէկուն ձեռքը իյնայ,
կը խնդրեմ որ աղէկ քննէ թէ իր կրօ֊
նին վարդապետութիւնը ինչ է, և շատ
մոլորութիւններ կարճ՝ բայց զօրաւոր
պատճառներով հոս դուրս հանած ու
հերքած կը տեսնէ ։ Ուստի երբոր մէ֊
կը պզտի տարակոյս մը ունենայ թէ
արդեօք ինքը մոլորութեան մէջ է, ու
յաւիտենական փրկութեան ճամբէն

դո՞րս է թէ չէ, իրեն վարդապետութիւններէն մէկը քննէ. զոր օրինակ ան՝ որ կ'ըսեն թէ Քրիստոս իսկապէս սուրբ հաղորդութեան մէջ ներկայ չէ. (աս մոլար վարդապետութիւնը հերքած կը գտնես ԺԲ գլխուն մէջ.) Ետքը ինքն իրեն աս հաւաքաբանութիւնս ընէ, որ հռոմէական եկեղեցւոյն հակառակ եղած ամէն աղանդներուն դէմ ալ կը զօրէ. «Ո՛ր կրօնն որ սուրբ գրոց դէմ, Քրիստոսի վարդապետութեանը դէմ, և առաջին եկեղեցւոյ սովորեցուցածին հակառակ վարդապետութիւն կը դաւանի՝ չկրնար ըլլալ Քրիստոսի ճշմարիտ եկեղեցին։ Իսկ արդ իմ կրօնս նոյնպիսի հակառակ վարդապետութիւն ունի (զոր օրինակ կ'ըսէ թէ Քրիստոս իսկապէս հաղորդութեան մէջ ներկայ չէ, որ թէ սուրբ գրոց, թէ Քրիստոսի վարդապետութեանը, և թէ առաջին եկեղեցւոյ սովորեցուցածին հակառակ է), ուրեմն չկրնար ըլլալ որ իմ կրօնս ըլլայ ճշմարիտ եկեղեցի Քրիստոսի»։

Աստուած օգնէ ձեզի իր շնորհքովը, որպէս զի տեսնէք իմանաք աս ձեռնարկութեան ուժը, և ամենայն կերպով ետևէ լինաք գտնելու անճըշմարտութիւնը՝ ուսկից կախուած է ձեր յաւիտենական փրկութիւնը։ Թէ որ դուք ինչպէս որ պէտք է չկարենաք հասկընալ աս հաւաքարանութեան ուժը, աս գրքուկիս մէջի ապացոյցները կարդալէն ետև մտերմութեամբ մէկ իմաստուն ու հմուտ հոգևականի մը աղաչեցէք որ ձեզի բացատրէ, և պատճառներով ցուցընէ նոյն հաւաքարանութեան ճշմարտութիւնը. և անշուշտ մէկէն կը համոզուիք ու կը մխիթարուիք՝ յաւիտենական երջանկութեանը ապահով ճամբան ձեր աչքին առջև տեսնելով։ Բայց ես վախեմ թէ աւելի ձեր կամքը հակառակի համոզուելու, քան թէ ձեր միտքը. վասն զի թէ որ լաւ հասկըցընող մը գտնէք, որ ձեզի զօրաւոր պատճառներով մեկնէ ու ապացուցանէ, ալ դէմ դնելու բան չմնար, բայց

եթէ մէկը կամակորութեամբ ուզել յանձն առնու մոլորութեան մէջ ապրիլ ու մեռնիլ, և յաւիտենական տանջանաց մատնուիլ՝ քան թէ ճշմարտութիւնը ընդունիլ։ Աստուած պահէ զձեզ այսպիսի սատանայական կամակորութենէ, որուն վրայ օր մը չարաչար կը զղջայ՝ բայց անօգուտ տեղը։ Ես միջանկեալ խօսակցութենէն ետքը գանք մեր առջի ընկերներուն։

## ԻԲ

Հիմա շիտակն ըսէք ինծի, սիրելի բարեկամք իմ. աս կրօններուն մէջ աւելի որը կերևնայ թէ Քրիստոսի ճըշմարիտ եկեղեցին է։ Անկարելի է ըսելը թէ ամէնքն ալ սուրբ և աստուածային են, որովհետև մէջերնին այնչափ իրարու հակառակ վարդապետութիւններ կան։ Ուրեմն հարկաւ աս եկեղեցիներէն շատը սուտ և գիւական են, և ասոնցմէ մէկն է միայն Քրիստոսի եկեղեցին, որ Դ պիտի ըլլայ,

ինչպէս որ ցուցուցի ։ Ամէն կրօնքի վրայ եղած ստոյգ պատմութիւններէն ու իրենց վարդապետութիւններէն յայտնի է թէ վերը յիշուած տեսակ տեսակ կրօնները ինչպէս սկսած են ։

Սեղանակապուտ անզգամին մէկը 1523ին ատենները՝ եօթը ազնուական կուսանք յափշտակեր էր Սիմ քաղաքին կուսաստանէն ։ Լուտեր բեմին վրայ ելած՝ ան աստիճան գովեց սա անզգամին ըրած անօրէնութիւնը, որ զինքը Քրիստոսի նմանցուց՝ որ լիմպոսն իջաւ ու բանտարկեալները դժոխքէն ազատեց ։ Ի՞նչ կ՚ըսէք, սիրելիք, աս գովեստին վրայ. ո՞ր հոգին իրեն տուն տուած է ան գովեստը ։ Իրաւցընէ աշխարհքիս մէջ և ոչ կռապաշտներու մէջ հնարուած է այնպիսի անկարգ և գէշ օրէնք մը՝ ինչպէս է նորաղանդներուն դաւանած ու վարդապետած օրէնքը, որ իրենք զիրենք ուղղափառ եկեղեցւոյն նորոգող կը կոչեն ։ Այս սակայն Լուտեր չամչցաւ պնդելու թէ « Այս ստոյգ գիտեմ որ իմ վարդապե-

տութիւնս երկնքէն է։ Ես ամենաստոյգ գիտեմ որ իմ վարդապետութիւնս իմս չէ, հապա Յիսուսի Քրիստոսի վարդապետութիւնն է»։ Նոյնպիսի յանդգնութեամբ պարծեցաւ նաև Կալվին՝ ըսելով թէ «Ես մարգարէ եմ։ Ես Աստուծոյ հոգւովը լցուած եմ։ Ես չեմ կրնար մոլորիլ. և թէ որ ես մոլորութեան մէջ եմ, դու ես Աստուած իմ՝ որ ինծի կ'ազդես այն մոլորութիւնը»։ Աս խօսքերը բառ առ բառ իրենց ըսած խօսքերն են, որ թարգմանած ու տպել տուած են իրենց այլ և այլ գրքերուն մէջ։ Ո՞ւր է ուրեմն Քրիստոսի սորվեցուցած խոնարհութեան կերպը։

## ԻԳ

Նորաղանդները հիմա կ'ելլեն իրենց օրէնսդիրները պաշտպանելու համար կ'ըսեն. «Անոնց այսպէս համարձակ խօսելնուն պատճառը՝ նախանձն Աստուծոյ էր, որ զիրենք կը բռնադա-

տէր. ինչպէս որ նոյնպէս տաք տաք խօսեցան նաև սուրբն Պետրոս և սուրբըն Պօղոս, և ուրիշ սուրբեր ու մարգարէներ հին և նոր կտակարանի մէջ»։ Իրաւցընէ, ինչպէս ալ կը վայլէ որ աս նոր աղանդաւորները աշխարհքիս վըրայ երևցած փառաւոր սուրբերուն հետ բաղդատուին՝ որովհետև այնպիսի անարատ վարք ունեցան որ իրենց քարոզած գեղեցիկ վարդապետութեանը կը նմանի։

Ամէն մարդ գիտէ թէ Մարտինոս Լուտերը տասնըհինգ տարի քահանայութիւն ըրաւ. և թէպէտ ասով ալ աւելի պարտական էր ողջախոհութիւն պահելու, և սակայն չսոսկալով ուխտեալ կուսան մը յափշտակելու, և անոր հետ բոլոր կեանքը սոսկալի անառակութեամբ ու գայթակղութեամբ անցուց. ու այնպիսի կենաց համեմատ մահ ալ ունեցաւ, այսինքն՝ ինչպէս որ սովորական է այսպիսեաց՝ հարկաւորութեան ելած ատենը՝ հոգին փչեց։

«Նմանապէս բոլոր աշխարհք գիտէ,

թէ Յովհաննէս Կալվինն ալ նոյնպէս առաջ ուղղափառ եկեղեցւոյ քահանայ էր. և անկէ ապստամբելէն ետքը՝ անունը չարաչար աւրեց ամէն տեսակ անզգամութեամբ, մանաւանդ մարմնական մեղաց ետևէ ըլլալով, ինչուան վճիռ եղաւ որ զինքը Նոյոնի մէջ ողջ ողջ այրեն. և թէպէտ իրեն աս շնորհքն ըրին որ մահուընէ ազատեցին, բայց որպէս զի ըրած անկարգութեանցը մէկ կերպով մը հատուցմունք ըլլայ՝ հրապարակաւ աղէկ մը ծեծեցին զինքը. Ասով թէպէտ մարդկային արդարութեան ծանր պատժէն ազատեցաւ, բայց աստուածային բարկութենէն չխալըսեցաւ, որ զինքը նաև աս աշխարհքիս մէջ ուզեց չարաչար տանջանքով պատժել. ուստի Կալվին ոտքէն ինչուան գլուխը վէրքերով լեցուած ու որդնոտած՝ իր կեանքը նզովելով հալեցաւ մաշեցաւ, ու աս աշխարհքիս վրայէն դժոխքին ճամբ առաւ։

Ասոնով ես ալ կարծէի թէ աս բաներս ուղղափառաց զրպարտութիւն-

ներն են՝ նորաղանդէց հիմնադիրնե-
րուն անունը առնելու համար հնա-
րուած. բայց եթէ մանրամասն քըն-
նելով նորաղանդէց հաւատոյ սկզբունք-
ները, տեսայ որ ինչ որ կ՚ըսեն ուղ-
ղափառք նորաղանդից վարդապետու-
թեանը և սովորութիւններուն վրայ՝ ոչ
միայն սուտ չեն, հապա ամենաստոյգ
պատմութիւն են. և այնպիսի ճշմա-
րիտ ապացոյցներով հաստատուած՝ որ
մէկ ուրիշ մարդկային պատմութեանց
մէջ ան աստիճան ճշմարտութիւն չը-
տեսնուիր:

Ուրեմն այսպիսի վարք ունեցող
մարդիկը կրնան Աստուծմէ խրկուած
սեպուիլ որ աստուածային օգնութ̃
քրիստոնէութիւնը նորոգեն: Կարելի՞
բան է այսպիսիները պատուել իբրև
ճշմարիտ առաքեալ Քրիստոսի, ճշմա-
րիտ նորոգիչ բարոյականի, քաջ աւան-
դապահ սուրբ գրոց, անմոլար անդամ-
ժողովոց, տուող եկեղեցականն կանո-
նաց, և առաջնորդ ճշմարիտ վարդա-
պետութեան ու սրբութեան՝ որ ատոնք

միայն ուղղափառ եկեղեցին աղբիւրի պէս կը ծառայէ ։ Խե՜ղճ ողորմելիներ ․ թէ որ հիմա կարենային իրենց եղած տեղէն խօսիլ իրենց հետեւողներուն հետ, արդեօք ո՜րչափ տարբեր բան պիտի քարոզէին ։

## ԻԴ.

Սիրեցէք, սիրելիք, աս ձեր հիմնադիրներուն դէմ ըրած խօսակցութեանս, որ ատենով նաև ինծի հաւատոյ վարդապետ էին ։ Թէ որ չըվախնայի ձեր սիրտը դառնացընելէն, թէպէտ և բոլորովին պաղած ալ չըլլայի ձեր կողմը պաշտպանելէն՝ դեռ շատ բան ունէի առաջ քաշելու ու խօսելու իրենց տեսակ տեսակ խաբէութիւններուն, խարդախութիւններուն, թէ հին և թէ հիմակուան նորադարձ քահանայից դիւական հնարքներուն, և իրենց հետեւողները՝ մանաւանդ ռամիկ ժողովուրդը խաբելնուն վրայ, որ ձեզ կ'ապշեցընէի ։ Ս՛ր և իյէ խա-

բէութեան մեծ խայտառակիչը անի֊
կայ է՝ որ երկայն ատեն նոյն բանին
վկայ ու գործակից եղած է․ ուստի
երբոր յանցաւորները շատուոր ըլլան՝
դատաւորը դիւրաւ անոնցմէ մէկ քա֊
նիին կը ներէ, որպէս զի անանկով ա֊
ւելի դիւրութեամբ ու ապահովու֊
թեամբ չարեաց գլուխը ճանչնայ։
Դժբաղդութեամբ երկայն ատեն թըշ֊
նամի էի ես հռովմէական ուղղափառ
եկեղեցւոյ․ և ինչպէս որ դուք՝ ես ալ
նորաղանդութեան քարոզիչ էի, ու
շատ անգամ երբոր սիրտս ուզէր, ու
մանաւանդ երբոր շահ մը տեսնէի՝
մէկ աղանդէն մէկալը կ՚անցնէի․ վասն
զի նորաղանդներուն հաւատքը իրենց
շահուն վրայ կեցած է։ Ուրեմն ա֊
ռանց տարակուսելու կրնայ մէկը հա֊
ւատալ ինծի՝ երբոր իրական պատմու֊
թիւններ կը պատմեմ, և չկրնար մէկը
զիս մեղադրել թէ դու աղէկ տեղեակ
չես ըսածներուդ։ Ուստի համարձակ
կը զուրցեմ, սիրելիք, թէ նորաղան֊
դից կրօններէն մէկն ալ աստուա֊

ծայրին կրօնի նշան չունի։ Ըսածիս վրայ ուշադրութեամբ մտածեցէք, և յուսամ որ բերնովդ ալ չէ նէ՝ գոնէ սըրտերնուդ մէջ իմ ըսածս կը հաստատէք։

Հիմա գանք մէկ քանի ուրիշ խնդիրները լուծելու, որոնց վրայ մեծ վէճ կայ ուղղափառաց ու Նորաղանդից մէջ։ Աս նիւթերուս վրայ խօսելու առեն կ՚ուզեմ որ իմ աս գրքուկիս մէջ գիտած երկու նպատակիս ալ հասնիմ. մէյմը որ ես զիս արդարացընեմ, մէյմըն ալ որ դուք ձեր մոլորութիւնը ճանչնաք։ Ուստի առանց ձանձրանալու ըսածներուս ուշ դրէք, և սիրտ առէք, մի՛ լքանիք. վասն զի առջևի գործքերնիդ խիստ հարկաւոր բան է. Թող որ դուք մոլորութեան մէջ ըլլալով աւելի ջանք պիտի ընէք որ ելլէք անկէ, քան թէ ես՝ որ զրպարտուած ըլլալով ինք զինքս պիտի ջանամ արդարացընել։

## ԻԵ

## ՍՈՒՐԲ ԳՐՈՑ ՎՐԱՅ

Վէճ է թէ արդեօք միայն սուրբ գիրքը կրնա՞յ հաստատուն և հաստատ կանոն հաւատոյ ըլլալ. և կարելի՞ է որ սուրբ գրքով միայն որոշուին հաւատոյ վրայ եղած ամենայն խնդիրները: Նորաղանդները կը պնդեն թէ սուրբ գիրքը միայն բաւական է. իսկ ուղղափառք չէ՛ կ՚ըսեն. և ասոնք իրենց խօսքը այսպէս կը հաստատեն:

Ա. Թէ որ միայն սուրբ գիրքը ըլլար բացայայտ և հաստատուն կանոն հաւատոյ, և միայն անոր վկայութիւններովը ճշմարիտ հաւատոյ դէմ եղած ամենայն հակառակութիւն լուծուէր, ան ատեն սուրբ գրոց վճիռը հրատարակելէն ետև՝ ալ ամէն վէճ պիտի դադրէր, վիճողներն ալ մէկմէկու հակառակութիւն պիտի չունենային: Իսկ արդ սուրբ գրոց վճիռը այնչափ ատենէ ՚ի վեր հրատարակուած է, և

սակայն վէճը չդադրեցաւ, և վիճողներուն մէջ դեռ հակառակութիւն կը բանի իմաստին վրայ (վասն զի տարակոյս կը հանեն թէ արդեօք ան խօսքով ա՛ս ըսել կ'ուզէ թէ ուրիշ բան), և շատ յայտնի է ըսածս ուղղափառաց և Նորաղանդներուն մէջ սուրբ գրոց բուն իմաստին վրայ եղած ներհակ կարծիքէն, որ ամէնքը պնդելով կ'ուզեն որ իրենց հասկցածին պէս հասկցուի: Ուրեմն միայն սուրբ գիրքը չկրնար ըլլալ բացայայտ կանոն և հաւաստիք հաւատոյ, և ոչ բացարձակապէս որոշել հաւատոյ վրայ եղած ամենայն խնդիրները:

Բ. Նոյն իսկ սուրբ գրքէն կըցուցանի՝ թէ ո՛չ մութ ըլլալով դժուար է տեղ տեղ դիւրաւ իմանալ միտքը. ուստի հաւատոյ վերաբերեալ ամէն խնդիրներու վրայ բացայայտ վճիռ չգտնուիր մէջը: Սուրբ գրոց մէջէն մէկ քանի վկայութիւններ բերենք՝ որոնցմով կը տեսնուի աս առաջարկութեան ճշմարտութիւնը. « Նու սկը-

սեալ 'ի Մովսիսէ և յամենայն մարգարէից, մեկնէր նոցա՝ որ ինչ յամենայն գիրս գրեալ է զնմանէ » (Ղուկ. ԻԴ.)։ Եթէ պէտք եղաւ որ Քրիստոս մեկնէ իր աշակերտացը սուրբ գրքին իմաստը, ըսել է թէ դիւրաւ հասկընալու բան չէր՝ ինչպէս որ նորաշաւնդները կը պնդեն։ Սուրբն Պետրոս՝ սրբոյն Պօղոսի թղթերուն համար կ'ըսէ. « Որպէս և յամենայն իւր թուղթսն խօսի վասն այսոցիկ. յորս գտանի ինչ ինչ դժուարիմաց, զոր անուսմունքն և յողդողդքն կամակորեն » (Բ Պետրոս. Գ.)։ Սուրբն Օգոստինոս իրեն համար կ'ըսէ թէ « Սուրբ գրքին մէջ չգիտցած բաներս աւելի շատ են՝ քան թէ գիտցածներս »։ Խ.է որ Օգոստինոսի պէս անձը այսպէս կ'ըսէ, հապա ուրիշները ինչ պիտի ըսեն[1]։

1 « Ի համարելն թէ հասի՝ եւ առաւել գիտացի զիս հեռի 'ի հասողութենէն. զի 'ի տեսանելն զարեգակն ճշմարիտ, 'ի ձեռն լուսոյն ծանեայ՝ թէ որչափ հեռի եմ 'ի

Գ. Քննեցէք ասս վկայութիւնները, և թէ որ կրնաք՝ առանց մեկնութեան կարօտելու հասկըցէք ասոնց բաւական իմաստը. «Լաւ է չարութիւն առն՝ քան զկին բարեբարոյ» (Սիրաք. ԽԲ): «Մի՛ տար պատասխանի անզգամին ըստ նորա անզգամութեանն» (Առակ. ԻԶ): Նոյն քիչ մը ետքը կ՚ըսէ. «Այլ տուր նմա պատասխանի ըստ անզգամութեանն նորա»: «Ո՛չ ոք է որ 'ի մահու յիշէ զքեզ» (Սաղ. Զ): «Տէր յերկնից նայեցաւ յամենայն որդիս մարդկան՝ տեսանել թէ իցէ՞ ոք իմաստուն որ խնդրիցէ զԱստուած: Ամենեքեան խոտորեցան 'ի միասին և անպիտանացան. ոչ ոք է որ

գիտութենէն». Գրիգ. Նարէկ. Ի Մեկն. Երգ:

«Դժուարատեսանելի գոյ իմաստից որ 'ի սոսա ծածկեալ կայ, և մանաւանդ ըսքանչացման արժանաւոր. սորին վասն ուշիմ մտաց մեզ պէտք են, և եւս առաւել աղօթից, և Հոգւոյն սրբոյ առաջնորդութեան, յայտնել մեզ զիմաստից տեսութիւն». Սարգիս. Ի Մեկն. Ընդհ. Պետր:

առնէ զքաղցրութիւն, և չէ ոք մինչև 'ի մի » (Սաղ. ԺԳ)։ «Զի զայն՝ որ ոչն գիտէր զմեղս, վասն մեր մեղս արար » (Բ Կոր. Ե)։ Անկէ զատ՝ ըսաւ Քրիստոս վերջի ընթրիքին մէջ. «Արբէք 'ի դմանէ ամենեքին » (Մատթ. ԻԶ)։ Նոյնպէս ըսաւ. « Եւ դուք պարտիք զմիմեանց ոտս լուանալ՛ » (Յովհ. ԺԳ)։ Թէ որ առջի խօսքուվը հաղորդութեան խորհուրդը կը պատուիրէ, ուսկից կը ցուցուի թէ մէկալ խօսքովը չուզեր պատուիրել որ իրարու ոտքը լուանք։ Յայտնի է որ ան խօսքին իմաստը սուրբ գիրքը չէ մեզի հասկըցընողը, հապա Քրիստոսի եկեղեցին է։ Ուրիշ ասոնց նման օրինակներ լեցուն են սուրբ գրոց մէջ։

Ուրեմն յայտնի է թէ սուրբ գիրքը ըստ ինքեան մութ է, և մեկնութեան կը կարօտի, ուստի չկընար ըլլալ մինակ բացայայտ կանոն հաւատոյ։ Նաև ինչպէս որ քաղաքական քարեկարգութեան համար՝ միայն օրինաց գիրքը բաւական չէ, հապա

նաև դատաւոր ալ հարկաւոր է՝ որ ան օրինաց իմաստը հասկընայ ու հասկըցընէ , և հակառակորդաց մէջ վճիռ կտրէ ․ այսպէս ալ եկեղեցական բարեկարգութեան համար՝ սուրբ գիրքը միայն բաւական չէ , որուն մէջ եկեղեցւոյ օրէնքները գրուած են , հապա հարկաւոր է նաև դատաւոր մը որ ան օրէնքները մեկնէ , և անոնց հակառակ վարդապետութիւնները հերքէ ։ Այս դատաւորը՝ մենք կ՚ըսենք թէ Հռովմայ քահանայապետն է , որ է դատաւոր անսխալ՚ի վարդապետութիւնս հաւատոյ ․ վասն զի հաւատոյ խնդիրները Հոգւոյն սրբոյ օգնութեամբը կ՚որոշէ , ինչպէս որ խոստացեր էր Քրիստոս սրբոյն Պետրոսի ․ և անոր օրինաւոր յաջորդն է Պապն Հռովմայ , ինչպէս որ պիտի ցուցընենք ԼՁ գլխոյն մէջ ։

# ԻԶ

## ԱՒԱՆԴՈՒԹԵԱՆ ՎՐԱՅ

Մեծ վէճ է՝ թէ արդեօք բաց 'ի սուրբ գրքէն պէ՛տք է ընդունիլ նաև ուրիշ աւանդութիւններ ալ՝ որ նոյնպէս աստուածային ըլլան. այսինքն բաց 'ի Աստուծոյ գրաւոր խօսքերէն (աստուածաշունչէն), պէ՛տք է ընդունիլ նաև Աստուծոյ ան խօսքերն որ գրով չեն տրուած, հապա 'ի Քրիստոսէ ու յառաքելոց ինչուան մեզի եկած են խօսքով՝ որդւոց որդի ու բերնէ բերան աւանդելով։ Բողոքականներն աւանդութիւնը կը մերժեն, իսկ Հռոմէականները կ'ընդունին, ու այսպէս կը հաստատեն։

Ա. Շատ նիւթեր կան հաւատքի մէջ, որոնց պէտք է հաւտալ՝ փրկութեան հասնելու համար. աս նիւթերուն վրայ թէպէտ և սուրբ գրոց մէջ որոշ խօսք չկայ, բայց նոյն բաները Քրիստոս բերնով վարդապետեց իր

առաքեալներուն, առաքեալք ալ եկեղեցւոյ ։ Ուստի կը հետեւի թէ պէտք է ընդունիլ նաեւ աւանդութիւնը, այսինքն Աստուծոյ անգիր խօսքերը որ իր եկեղեցւոյն մէջ որդւոց որդի անցնելով ինչուան մեզի եկած է ։ Այս անգիր աւանդութիւններէն մէկ քանին դնենք ։

ա̃ . Աստուածաշունչը և աւետարանները կանոնական գրքեր են, և ճշմարտապէս աստուածաշունչ, այսինքն Աստուծմէ տուն տրուած ։

բ̃ . Տղաքը պէտք է մկրտել՝ թէպէտ և իրենց բանականութիւնը բացուած չըլլայ ։

գ̃ . Մկրտելու ատենը հարկաւոր է աս տեսակ նիւթ գործածել և աս խօսքերը զուրցել ։

դ̃ . Հերետիկոսներէն մկրտուածները՝ նորէն պէտք չէ մկրտել ։

ե̃ . Հրէից շաբաթ օրուանը տեղ՝ պէտք է կիրակի օրը սուրբ պահել ։

զ̃ . Բոլոր քրիստոնէից ընդունած հաւատոյ հանգանակը՝ ճշմարիտ է ու առաքելական ։

Է. Սուրբ Աստուածածինը միշտ կոյս մնաց։ — Նաեւ ուրիշ ասոնց նման ճշմարտութիւններ որ նաեւ նորաղանդներն ալ ընդունած են իբրեւ մասն Հաւատոյ՝ որոնց վրայ սուրբ գրքին մէջ ամենեւին խօսք չկայ։

Ը. Սուրբն Պօղոս աւանդութեան համար յայտնի կը զուրցէ. « Այսուհետեւ եղբարք՝ հաստատուն կացէք, եւ պինդ՝ կալարուք զաւանդութիւնսն զոր ուսարուք՝ եթէ բանիւ եւ եթէ թղթով մերով» (Բ Թես. Բ)։ Բոլոր սուրբ հարք ալ աւանդութիւնը կ'ընդունին, ինչպէս սուրբն Հերոնիմոս կ'ըսէ. « Մ՛եք զմի քառասնօրդական պահս յառաքելական աւանդութենէ պահեմք » ( Թղթ. առ Մարկեղոս )։ Սուրբն Օգոստինոս. « Զայն ինչ իբրեւ անգիր աւանդութեամբ պահեմք որ կարծիս յառաքելոց աւանդեալ եւ կամ 'ի հանրական ժողովոց » ( Թղթ. ԾԻԸ )։ Ուրեմն սուրբ գրքէն զատ, պէտք է ընդունիլ նաեւ ուրիշ աւանդութիւններ որ նոյնպէս Աստուծոյ գրա-

ւոր խօսքին չափ զօրութիւն ունին ու անոնք ալ Քրիստոսի եկեղեցւոյն հաւատացելոցը համար անսխալ կանոններ են. ինչպէս նաեւ բնական ու ետքը Մովսիսական գրաւոր օրինաց ատենն ալ հաւատացելոց մէջ աւանդութիւններ կային. եւ ինչուան Մովսէս 2000 տարի հաւատացեալք միայն աւանդութեամբ գնացին, եւ Մովսէսէն ետքն ալ թէպէտ եւ գրաւոր օրէնք կար, բայց հաւատոյ շատ մասերը միայն աւանդութեամբ որդիք իրենց հայրերէն կը սորվէին [1]։

1 « Ամենայն նահապետացն շատակեաց եղեալ 'ի բարերարութենէն Աստուծոյ, սերեալք բազմացան. նոյնպէս և յետ ծննդոցն յերկարակեացս արարեալ, զի ողք Աստուծոյն ստացան՝ պատմեսցեն հարց որդւոց, զի երբեւ պատուիրանք զգուշացուցիչք լինիցին՝ առ 'ի ծանօթ առնել զնոսա Աստուծոյ. որպէս ասացաւն՝ թէ հարցջիր զհարս քո և պատմեսցեն քեզ». Սուրբն Գրիգ. Լուսաւորիչ, յԱգաթ։

« Առաքեալքն զյոլով ժամանակս 'ի տաճարին զառ 'ի Քրիստոսէ նոցուն կա-

տորէին աւանդեալ զխորհուրդս եթէ զագօթից, եթէ զհաղորդութեան։ Իսկ այժմ կանոնական սահմանաւ զմեզ պարտաւորեալ զգուշացուցին նոյին աւանդապահք և ժառանգորդք՝ ոչ երթալ 'ի ժողովարանս և 'ի մատրունս Հրէից կամ հեթանոսաց”. Յովհ. Իմաստ. յԱփէնոսէ։

“Զնայսքան և զայսպիսի յեկեղեցւոյն քարեկարգութեան յօրինուածս և հանճելի դրութիւնս՝ կոչեն համառօտիւ 'ի տեսչութենէ յօրինման անօրէնութիւն. առ սոքօք և ընդ սոսին զամենայն յիշատակելովն որքանինչ յիշատակ աւանդեցաւ 'ի տեսանէ քրիստոնէից՝ և յառաջելոց իւրոց վարուց և բանից պարկեշտութիւն. որոց անատես 'և մատակարար հաւատարիմ է առաջնորդացն այսր մեծի և հրաշափառագունի տան Աստուծոյ”. Յովհ. Սարկաւագ Վարդապետ։

“Զայս դաւանութիւն, և զև ևս անճառագոյնս, յառաջելոցն սրբոց որպէս աստուածային ժառանգութիւն որդի 'ի հօրէ առեալ հասուցին մինչև առ մեզ”. Սարգիս., 'Ի Մեկն. Ընդհ. Պետր։

“Ճշմարիտ և սուրբ հաւատ ոչ միայն զխոստովանութիւն սուրբ երրորդութեան առէ, այլ և զհաստատեալն եկեղեցական քարեկարգ աւանդութեանցս”. Ներս. Լամբր. 'Ի Մեկն. Պատար։

## ԻԷ

## ԽՈՐՀՐԴՈՑ ՎՐԱՅ

Վէճ է թէ արդեօք քանի՛ են Քրիստոսի եկեղեցւոյն խորհուրդները, և ինչ վախճանի համար դրուած են։ Խորհրդոց քանի՛ ըլլալուն վրայ Նորաղանդները նաև իրենց մէջ անմիաբան են։ Լուտեր՝ միայն մկրտութիւնը խորհուրդի տեղ կը դնէ. բայց շատ լուտերականներ նաև սուրբ հաղորդութեան ու ապաշխարութեան համար ալ կ՚ըսեն թէ խորհուրդ են. Մելանքթոն, Քեմնից և ուրիշները մկրտութիւնն ու հաղորդութիւնը իբրև խորհուրդ կ՚ընդունին։ Զուինգլիոս մկրտութիւնը, հաղորդութիւնն ու պսակը։ Կալվին պսակին տեղը՝ քահանայութեան կարգը խորհուրդ է կ՚ըսէ, թէպէտ և ուրիշ տեղ միայն մկրտութիւնն ու հաղորդութիւնը իբրև խորհուրդ կ՚ընդունի։ Կը տեսնէք

թէ աս ի՛նչ շփոթութիւն է ։ Իսկ թէ
որ հարցընենք թէ ի՛նչ վախճանաւ խոր֊
հուրդները դրուած են՝ կ'ըսեն թէ ո֊
րովհետեւ մարդիկ հաւատքով միայն
կրնան փրկուիլ, աս հաւատքը վառե֊
լու համար հաստատուած են խոր֊
հուրդները ։

Հռոմէականք եօթը խհդ կ'ընդ֊
ունին, ինչպէս որ միշտ Քրիստոսի ա֊
ռաջին եկեղեցին ճանչցած է, և ինչ֊
պէս որ առաջին դարերէն ինչուան մեր
ատենը աւանդութեամբ նոյն վարդա֊
պետութիւնը եկած է ուղղափառ ե֊
կեղեցւոյ մէջ. և ընդունած խորհուրդ֊
ները ասոնք են. մկրտութիւն, դրոշմ,
հաղորդութիւն, ապաշխարութիւն,
վերջին օծումն, կարգ քահանայու֊
թեան և պսակ. և աս բանիս մէջ ա֊
մէն սուրբ հարք ու ընդհանրական
ժողովք միաբան են ։

Իսկ խորհրդոց ի՛նչ վախճանաւ հաս֊
տատուած ըլլալուն համար ուղղա֊
փառները կ'ըսեն թէ սրբարար շնորհք
կը բերեն. և ասկէ զատ՝ ամէն խոր֊

հուրդ ալ սեպհական շնորհք կը բերէ, ըստ որում ամէն խորհուրդ մէյմէկ վախճանաւ հաստատուած է 'ի Քրիստոսէ։ Հաւատքը հարկաւոր է չափահաս մարդկանց՝ իբրև նախընթաց պատրաստութիւն առ շնորհս, և չէ Թէ խորհրդով հաւատք կը ստանայ մէկը։ «Գնացէք այսուհետև աշակերտեցէք զամենայն հեթանոսս. մկրտեցէք զնոսա» և այլն (Մատթ. ԻԸ)։ «Որ հաւատայ և մկրտեսցի՝ կեցցէ» (Մարկ. ԺԶ)։ Սուրբ խորհուրդը ընդունելէն առաջ պէտք է հաւատք ունենալ։ Ուղղափառ եկեղեցին 'ի սկզբանէ 'ի վեր ինչ վարդապետութիւն որ ունէր սուրբ խորհրդոց վրայ՝ նոյնը միշտ անարատ պահեր է, ու առջի դարերէն 'ի վեր սուրբ հարք և ժողովք միշտ նոյնը դաւաներ ու քարոզեր են. և աս վարդապետութիւնը հաստատուած է սուրբ գրքին խօսքերուն վրայ, որ յայտնի կ'ըսէ Թէ սուրբ խորհուրդներով մարդուս վրայ շնորհք կ'իջնայ։ Թէպէտ և խորհրդոց

վրայ խօսելու շատ բան կար, բայց հոս աս ընդհանուր տեղեկութիւնը բաւական ըլլայ, ու միայն համառօտ կերպով մը հաղորդութեան ու ապաշխարութեան խորհուրդներուն վրայ առանձին խօսինք, ու քանի մը անդրադարձութիւններ ընենք. վասն զի հիմակուան նորաղանդները աս երկու խորհուրդներուն շատ դէմ կը կենան։

## ԻԲ

## ՀԱՂՈՐԴՈՒԹԵԱՆ ՎՐԱՅ

Շատ տեսակ ընդդիմութիւններ կը հանեն նորաղանդք հաղորդութեան վրայ։ Կալվինականները չեն ընդունիր Քրիստոսի անձամբ հաղորդութեան մէջ գտնուիլը, ու կ՚ըսեն թէ միայն իրեն օրինակն է հաղորդութիւնը։ Լուտերականները կ՚ըսեն թէ իրաւ Քրիստոս հաղորդութեան մէջ ներկայ է, բայց մարդուս հաղորդուելու ատենը միայն. կ՚ըսեն նաև թէ

հացին գոյացութիւնը անփոփոխ կը մնայ՝ նոյն իսկ Քրիստոսի Հաղորդութեան մէջ եղած ատենը ։ Այլ ասոնց նման՝ իրենց կուսակից աղանդաւորներուն հետ ուրիշ այլանդակ մոլորութիւններ կը քարոզեն , որոնց ամէնուն դէմ ուղղափառ եկեղեցւոյ ճշմարիտ վարդապետութիւնը ասիկայ է ․

Հաղորդութեան մէջ է իսկապէս և գոյացապէս ճշմարիտ մարմին և արիւն, հոգին և աստուածութիւնն Քրիստոսի ․ և հացն ու գինին սրբագործուելէն ետև՝ միայն իրենց համը՝ գոյնը և ձևը չեն՛ փոխեր ։

Ա ․ Ըս վարդապետութեան ճշմարիտ ըլլալը կը հաստատուի սուրբ գրքին վկայութիւններովը , զոր օրինակ ․ « Առէք կերայք , այս է մարմին իմ ։ Արբէք՛ի դմանէ ամենեքեան ․ զի այդ է արիւն իմ, որ վասն ձեր հեղու » ( Մատթ ․ ԻԶ ) ։ « Այս է մարմին իմ, որ վասն ձեր տուեալ » ( Ղուկ ․ ԻԲ ) ։ « Զի մարմին իմ ճշմարիտ կերակուր է , և արիւն իմ ճշմարիտ ըմպելի է »

(Յովհ. Դ)։ Սուրբ գրոց աս ու ատոնց նման վկայութիւնները խիստ պայծառ են, ու պէտք է զանոնք ըստ նկարագրին հասկընալ, որքոյն Օգոստինոսի կանոնին հետևելով (որ ամէն աստուածաբանութեան դպրոցները ընդունած են) թէ երբոր սուրբ գրոց խօսքերը կրնան ըստ նկարագրին իմացուիլ՝ պէտք չէ զանոնք այլաբանութեամբ ու փոխաբերութեամբ հասկընալ։ Արեմն ուղղափառ կաթուղիկէ եկեղեցւոյն հաղորդութեան վրայ ըրած վարդապետութիւնը ամենաճշմարիտ է, որ կ՚ըսէ թէ իսկապէս հաղորդութեան մէջ ներկայ է Քրիստոսի մարմինը՝ որ վասն մեր փոխեցաւ, և արիւնը՝ որ վասն մեր հեղաւ. վասն զի (ինչպէս նաև նորադանդներն ալ կը վկայեն) Քրիստոս չէ թէ առերևոյթ կերպով հապա իրապէս խաչուեցաւ ու իրապէս արիւնը թափեց մեր փրկութեանը համար։

Սուրբ գրոց աս վկայութիւններուն զանազան մեկնութիւն կուտան հա-

կառավարողները, և ուղղափառաց վարդապետութիւնը չընդունելու համար՝ հազար ու մէկ պատճառներ կը կարկըտեն ու փախուստ կուտան, ըսելով թէ Քրիստոս «Այս է մարմին իմ» խօսքը ան մտքով ըսաւ ինչ մտքով որ ըսեր էր «Ես եմ որթ, ես եմ հաց, ես եմ ճանապարհ», և այլն. Քրիստոսի մարմինը երկնքէն զատ իրապէս ուրիշ տեղ չէ կ'ըսեն, ու միայն հաւատքով մտքերնիս կը դնենք թէ Քրիստոսի մարմինը կը ճաշակենք. և վկայութեան մէջի այս դերանունը ասոր մակբային տեղը կը հասկընան: Այսպիսի ծուռ մեկնութեանց դէմ ահա մէկ զօրաւոր ու անժխտելի ապացոյց մը. այսինքն

Բ. Չկրնար ըլլալ որ նախնական եկեղեցին սխալէր ու սուրբ գրքին ստոյգ իմաստը չկարենար հասկընալ: Իսկ արդ ան եկեղեցին ինչպէս որ հասկցաւ՝ նոյնպէս ալ սորվեցուց, թէ վերոյիշեալ վկայութիւններուն միտքը աս է որ Քրիստոս չէ թէ առերևոյթ կերպով հապա իսկապէս հա-

ղօրդութեան մէջ է . ուրեմն պէտք է հաւատալ թէ Քրիստոս իսկապէս հաղորդութեան մէջ է, ու չէ թէ առերևոյթ կերպով ։ Իրաւ է թէ աս ապացուցին փոքրագոյն մասը միայն կրնան ժխտել ձեր աստուածաբանները . բայց ես որովհետև կ'ուզեմ համառօտութեան մէջ կենալ՝ անոր համար չեմ կրնար հոս սուրբ հարց խօսքերն ու իմաստները մէկիկ մէկիկ մէջ բերել[1] ։

1 “ Զինչ է նայելն զգուշութեամբ . Մի՛ իբրև լոկ հաց և գինի նայել որք 'ի ներքս մնայցեն , այլ մարմին և արիւն Աստուծոյ հաւատալ զառաջի եդեալն ” . Մեծն Խոսրով, 'Ի Մեկն . Պտրգ ։

“ Այս է խորհուրդն . զի ոչ ըստ տեսանելոյն , այլ իմանալոյն է հաւատալն . զի տեսանի հաց և գինի , և իմանի մարմին և արիւն Որդւոյն Աստուծոյ ” . Նոյն . անդ ։

“ Հաւատալ և 'ի մարմին և յարիւն Որդւոյն Աստուծոյ , որ պատարագի 'ի վերայ սրբոյ սեղանոյն՝ թէ ճշմարտապէս է նա մարմին և արիւն Քրիստոսի ” . Գրիգ . Նարեկ . 'Ի Հրահանգս հաւատոյ ։

“ Հաւատամ թէ որ զինչ և է հաց՝ յոր-

ժամ աղօթքն նուիրեցաւ մարմին է Քրիս-
տոսի, և է Ճշմարտապէս »։ Ներս. Լամբր.
յԱտէն ։

« Ո՞րպէս պարտիմք հաւատալ թէ ճըշ-
մարտապէս Քրիստոս է սա, առ որ հա-
ղորդեցաքս. և մարմին Քրիստոսի, և ոչ
օրինակ մարմնոյն Քրիստոսի ։ Բազում և
պէսպէս բանք վասն այսր 'ի տեառնէ ա-
սացեալ և յառաքելոց նորին՝ կարող են
ածել զիմաստունս 'ի հաւանութիւն. զի
ասաց բարձրաքարոզաւ 'ի ժողովուրդն՝
յուսուցանելն 'ի Կափառնաում. Որ ոչ
ուտէ զմարմին իմ և ըմպէ զարիւն իմ, ոչ
ունի կեանս յանձին ։ Զմարմին իմ ասաց,
և ոչ զօրինակ մարմնոյն ։ Իսկ որ ուտէ և
ըմպէ, նա յիս բնակեսցէ և ես 'ի նմա ։
Ցեառ որոյ զբանիւ ասացեալն՝ գործով կա-
տարեաց. զի եառ ասէ՝ հաց, գոհացաւ,
օրհնեաց, սրբեաց և ետ աշակերտացն և
ասէ. Առէք կերէք 'ի սմանէ, այս է մար-
մին իմ, և ոչ օրինակ նորին ։ Նոյնպէս և
զբաժակն արիւն անուանեաց, և ոչ օրի-
նակ արեան ։ Զոր Ճաշակողքն աղաղակեն.
Արիւնն Յիսուսի սրբէ զմեզ յամենայն մե-
ղաց ։ Եւ որ ուտէ և ըմպէ զնա անարժա-
նութեամբ, ոչ թէ զօրինակն ոչ խայրէ,
այլ զմարմինն Տեառն... Համաքնութիւն
է Աստուծոյ, և ոչ՝ օրինակ ... Աստուած

Միայն աս կ՚ըսեմ, որ եթէ դուք կը փափաքիք ուղղափառ եկեղեցւոյն հետեւելու՝ թէ որ հասկընաք թէ հռոմէական եկեղեցին ինչ պատճառներով պաշտպանած է միշտ աս ճշմարտութիւնը, իմաստուն ուղղափառ քահանայի մը դիմեցէք՝ որ ստոյգ պատճառներով զձեզ կը համոզէ։ Ես աս միայն կը յիշեցընեմ թէ առջի քրիստոնեաները իրենց աս վարդապետութեանը համար, որ հրապարակաւ կը քարոզէին ու ամենայն կերպով կը պաշտպանէին, Տաւրդաւնէր ըսուեցան հեթանոսներէն։ Ավերրոյէ անուանի փիլիսոփան ու հռչակաւոր անձը՝ գրեց թէ բոլոր աշխարհք պտըտեցայ եւ դէն, կ՚ըսէ թէ քրիստոնէիցմէ աւելի անզգամ մարդիկ չտեսայ. և սանկ ըսելուն պատճառ աս կը բերէ (որ մեծ հաստատութիւն է մեր վերի ըսած ճըշմարտութենը). «Քանզի զԱստուածն

հոգւին ընդ մարմին հացիս խառնեալ՝ Քրիստոս և Աստուած զատ առանց յերկուանալոյ օծանէ »։ Նոյն. անդ։

իւրեանց զօր պաշտեն՝ զնոյն և ուտեն » կ՚ըսէ ։

Գ. Այն Ճշմարտութիւնը՝ թէ Քրիստոս իսկապէս ներկայ է Հաղորդութեան մէջ, շատ տեսակ ու մեծամեծ հրաշքներով հաստատուած է. զոր օրինակ Քրիստոս յայտնի նշխարքին մէջ երևցեր է. Հաղորդութեան աղաչանք ընողներուն խնդիրքները կատարուեր են. սուրբ Հաղորդութիւնը արհամարհողներուն վրայ մեծամեծ պատիժներ եկեր են, որ խիստ շատ հանդիպած է ու կը հանդիպի աշխարհիս վրայ, են ։

Այսպիսի պատճառներն ու հրաշքները մտածելով հռչակաւոր Բերենգարիոսը, որ Խորհրդականք ըսուած աղանդաւորներուն պարագլուխն էր, ճանչցաւ իր մոլորութիւնը, ու մեռնելէն առաջ սրտանց զղջում ըրաւ, և հրապարակաւ մերժեց իր աղանդը՝ աս խօսքերը զուրցելով. « Ես Բերենգարիոս սրտանց կը հաւատամ, ու բերնովս կը դաւանիմ որ սուրբ սեղանին վրայ դրուած հացն ու գինին խորհրդաւոր

սուրբ աղօթքին ուժովը ու մեր Փրկչին հրամանաւը գոյացած կը փոխուին 'ի ճշմարիտ և 'ի կենդանարար մարմին և արիւն Քրիստոսի տեառն մերոյ. ասանկ կը հաւատամ, ու ոչ երբէք աս հաւատքին ներհակ բան կը քարոզեմ ասկէ ետքը»։

Ինչուան հիմայ ըսածներուս դէմ Նորաղանդները տալու պատասխան չունին, այլ միայն յամառութեամբ կը պնդեն ու զանոնք կը մերժեն. չեն ուզեր հաւատալ թէ հրաշքները ճշմարիտ են, հապա կ'ըսեն թէ պապականներուն խաբէութիւններն են, պարզամիտ մարդկանց մտածութիւններ ու սատանայական կախարդութիւններ են. և ասանկով նոյն չար լեզուն կը բանեցընեն՝ ինչ որ փարիսեցիք Քրիստոսի հրաշքներուն վրայ խօսելու ատեն կը բանեցընէին։ Բայց ասոնց վրայ պէտք է խղճալ. վասն զի կ'ուզեն իրենց յամառութեան մէջ հաստատուն մնալ. և կարծես թէ իրենք զիրենք արդարացընելու հնարքէն ալ յուսահատելով՝ ուրիշ ճար

չէին գտներ , բայց եթէ աս կերպը բա-
նեցընել․ այսինքն ամէն տեսակ հրաշք-
ներուն համար՝ սուտ է ըսել ։ Իսկ
թէ այդպիսի բան ըսելը որչափ տկար
ու ծաղրական է , անոնց կը թողում
քննել՝ որոնք որ կտոր մը խելք ու դա-
տումն ունին ։

## ԻԹ

## ՊԱՏԱՐԱԳԻ ՎՐԱՅ

Վէճ է թէ արդեօք պատարագը
զո՞հ է թէ չէ ։ Նորաղանդները ոչ միայն
կ'ըսեն թէ զոհ չէ , հապա նաև սըր-
բապղծութիւն, սեղանակապտութիւն,
կռապաշտութիւն ու պապականնե-
րուն հնարքն է կ'ըսեն ։ Ընդ հակա-
ռակն ուղղափառները կը հաստատեն
թէ պատարագն է ճշմարիտ զոհ մը
որ Աստուծոյ կ'ընծայուի ․ և իրենց
տուած սահմանը աս է ․ « Պատա-
րագն է մէկ ճշմարիտ և զգալի նուիր-
մունք մը , որ հասարակաց հաւանու-

թեամբ ընտրուած օրինաւոր պաշտօ-
նեան՝ մարդկանց կողմանէ Աստուծոյ
կը նուիրէ, սրբագործելով զհացն ու
զինին. ու ետքը նոյն նուիրեալ նիւ-
թէն ինքը ճաշակելով ուրիշներուն ալ
կը բաշխէ։ Այս աս զոհը ոչ միայն 'ի
փառաբանութիւն Աստուծոյ և 'ի
շնորհակալութիւն կը մատուցուի, այլ
նաև 'ի քաւութի մեղաց կենդանեաց
և ննջեցելոց»։ Այս աս բանս ասանկ
կը հաստատուի.

Ա. Աստուած ոչ երբէք իր եկեղե-
ցին ու կրօնը առանց զոհի թողեր է,
հապա ուզեր է որ միշտ տեսակ մը
զոհագործութիւն կատարուի, և ասի-
կայ մէյմը յարգութեան նշան ըլլայ,
մէյմըն ալ անով մարդիկ կարենան
զԱստուած իրենց հետ հաշտեցընել,
և ուզած խնդիրքնին ընդունիլ. ուս-
տի աս բանիս համար թէ բնական և
թէ մովսիսական օրինաց ատենը զոհ
կար։ Ուրեմն անտեղի բան է ըսելը՝
թէ Աստուած նոր օրէնքէն ու քրիս-
տոնէական հաւատքէն բոլորովին վեր-

ցուցած է զոհը ։ Իսկ արդ թէ որ պա-
տարագը զոհ չըլլայ՝ քրիստոնէական
հաւատքին մէջ ամենևին զոհ չմնար.
ընդ հակառակն Քրիստոս բոլոր հին
օրինաց զոհերը վերցուց, ու անոնց
տեղը սուրբ պատարագը հաստատեց,
որովհետև հին զոհերը անոր ստուերն
էին. ուրեմն սուրբ պատարագը ճշմա-
րիտ զոհ մըն է որ քրիստոնեայք կը
մատուցանեն Աստուծոյ՝ զինքը փառա-
ւորելու, իրեն շնորհակալ ըլլալու,
զինքը հաշտեցընելու, ու իրեն աղա-
չելու համար վասն կենդանեաց և
ննջեցելոց ։

Բ. Նախնական եկեղեցին միշտ հա-
ւատացեր ու սորվեցուցեր է թէ Քրիս-
տոս հաղորդութիւնը վերջին ընթրեաց
ատենը հաստատեց՝ ոչ միայն իբրև
խորհուրդ, հապա նաև իբրև զոհ՝ որ
քահանայք բոլոր ժողովրդեան կողմա-
նէ Աստուծոյ մեծվայելչութեանը կը
մատուցանեն. և աս խօսքերովս հաս-
տատեց. «Զայս արարէք առ իմոյ
յիշատակի» (Ղուկ. ԻԲ)։ Եկեղե-

ցույ աս վարդապետութիւնը բոլոր աշխարհք յայտնի է, ու ամէն ժամանակ ընդունելի եղած է. անոր համար միշտ ալ եկեղեցիներ ու քահանաներ չեն պակսած՝ աս ահաւոր զոհը կատարելու համար։ Ուրեմն նորադարձները աս ճշմարտութեանց դէմ չեն կրնար դնել՝ առանց դէմ կենալու նախնական եկեղեցւոյն վարդապետութեանը ու հաւատքին, որուն անսխալ ըլլալը իրենք ալ կ'ընդունին, ու իբրև ուսուցիչ առաքելական ճշմարիտ վարդապետութեան՝ կը յարգեն[1]։

1 « Ետուր մեզ զորդիդ քո միածին պարտապան և պարտս, զենումն և օծեալ, գառն և երկնաւոր հաց, քահանայապետ և պատարագ ». Պատարագ։

« Որ յանուն զենման միշտ յիշատակաւ քոց չարչարանաց առ Հայր քո բարերար աղօթել զմեզ համարձակեցեր ». Գրիգ. Նարեկ։

## Լ

Վէճ է թէ արդեօք ամէն քրիստոնեայք հաղորդուելու ատեն՝ պէ՞տք է որ երկու տեսակն ալ, այսինքն Քրիստոսի թէ մարմինը և թէ արիւնը ճաշակեն ։ Լուտերականներն ու իրենց կողմնակիցները՝ պէտք է կ՚ըսեն . իսկ ուղղափառները՝ հարկ չէ կ՚ըսեն , ու ատանկ կը ցուցընեն .

Սուրբ գրոց մէջ մասնաւոր պատուէր մը չկայ թէ աշխարհականները նաև սուրբ արենէն հաղորդուին . ուրեմն հարկ չկայ որ ամէն քրիստոնեայ երկու տեսակով ալ հաղորդուի , այսինքն սուրբ մարմնոյն հետ սուրբ արիւնն ալ ճաշակէ ։ Հակառակորդները աս մեր առաջարկութեան առջի մասը կ՚ուրանան , և սուրբ գրոց աս խօսքը մէջ կը բերեն . « Եթէ ոչ կերիջիք զմարմին որդւոյ մարդոյ , և արբջիք զարիւն նորա , ոչ ունիք կեանս յանձինս » ( Յովհ . Զ ) ։ Ռամակին

վրայ ալ ըստ՝ կ՚ըսէն՝ Քրիստոս. «Արբէք՚ի դմանէ ամենեքին» (Մատթ. ԻԶ)։ Որջի վկայութեան պատասխանը աս է, թէ հաղորդուած կը սեպուի քրիստոնեայ մը (ինչպէս որ սուրբ գրոց շատ տեղերէն յայտնի է) երբոր միայն հացէն կը ճաշակէ. ինչու որ սուրբ մարմինն առնելով առած կ՚ըլլայ նաև Քրիստոսի արիւնը, որովհետև Քրիստոսի ամբողջ ու կենդանի մարմինը կը ճաշակէ։ Իսկ երկրորդ վկայութիւնը՝ միայն առաքելոց ըսաւ Քրիստոս, այսինքն բոլոր քահանայից՝ որ աս մեծ զոհը կը կատարեն։ Նաև վկայութեան մէջի ամենեքին բառը հոն տեղս բոլոր առաքելոց համար՝ ու չէ թէ բոլոր քրիստոնէից համար ըսուած ըլլալը յայտնի կ՚երևնայ Մարկոսի աւետարանէն որ կ՚ըսէ. «Արբին՚ի նմանէ ամենեքեան» (Մարկ. ԺԴ). որ աս խօսքը հիմակուան բոլոր քրիստոնէից համար չկրնար հասկցուիլ։

Սերեմ յայտնի եղաւ թէ սուրբ

մէջ մասնաւոր պատուէրք մը չը֊
է աշխարհականները երկու տե֊
լալ հաղորդուին . վասն զի քրիս֊
այ մը միայն սուրբ մարմինէն ճա֊
ովը՝ պակաս բան մը առած չըլ֊
հապա նոյնպէս Քրիստոսի թէ
նը և թէ արիւնը ճաշակած կ'ըլ֊
յու աշխարհականաց միայն սուրբ
նէն տալը ուրիշ բանի համար
այց եթէ վտանգներէ զգուշանա֊
սմար , որ չըլլայ թէ արիւնը ժո֊
եան մէջ պտըտցընելու ժամա֊
թափի , ու անանկով անպատուու֊
պատճառ ըլլայ սուրբ խորհըր֊
Ընկէ զատ , որովհետև շատ
ու անծանօթ երկիրներ կան՝
ազիւ քիչ մը գինի կը գտնուի ,
ուրդն ալ բաւական կարողու֊
չունի կարգէ դուրս ծախք ընե֊
բոլոր ժողովրդեան հաղորդուե֊
ամար գինի ճարէ , ուստի սուրբ
ցին բաւական կը համարի աշ֊
ական քրիստոնէից սուրբ մար֊
միայն տալը ։ Իսկ հայը ամէն

տեղ առատ է ․ ու սոսկ սրբագործեալ Հայէն հաղորդուելով նոյնպէս կը մխիթարուին անձն քրիստոնեայք ․ ու միայն անով ալ անձնքը կրնան յաւիտենական կենաց հասնիլ, ինչպէս որ Քրիստոս ալ առանց արիւն կամ գինի յիշելու ըսաւ ․ « Որ ուտէ զհացս զայս՝ կեցցէ յաւիտեան » (Յովհ․ Զ)։ Ինքն իսկ Քրիստոս Էմմաւուս գնացած աշակերտները միայն հացով հաղորդեց ․ նոյնպէս ըրին շատ անգամ նաև առաքեալները նորածին եկեղեցւոյն մէջ ․ նոյն սովորութիւնը պահեց նաև նախնական եկեղեցին ։

Ասով չեն ուզեր ըսել ուղղափառները՝ թէ եկեղեցին աշխարհականաց կ՚արգիլէ սուրբ արենէն հաղորդուիլը ․ վասն զի յայտնի է որ ատենով ամէն քրիստոնեայք երկու տեսակէն ալ կը հաղորդուէին, ու ինչուան հիմայ ալ արևելեան ուղղափառներուն մէջ մնացած է նոյն սովորութիւնը ․ Հապա վերը յիշուած պատճառներուն համար ։ Մանաւանդ որ Մանիքեցւոց

հերետիկոսութեան ժամանակը որով֊
հետև անոնք զինքին ներքև եղած
Քրիստոսի սուրբ արիւնը կը հայհոյ֊
էին, ամենուն ապացուցեց որ զանէ եր֊
բեմն երբեմն նաև արիւնն ալ ճա֊
շակեն. վերջերը Գաղղիայի թագա֊
ւորներուն ալ մասնաւոր արտօնութիւն
տուաւ որ Քրիստոսի մարմնոյն հետ
սուրբ արիւնն ալ ճաշակեն։ Եկեղե֊
ցին աս բանիս միայն դէմ կը կենայ՝
որ կ'ըսեն թէ աստուածային պատուի֊
րան է որ աշխարհականները երկու
տեսակով ալ հաղորդուին։ Աս պա֊
տուիրանը միայն քահանայից համար է՝
երբոր պատարագ կը մատուցանեն 'ի
յիշատակ չարչարանաց Քրիստոսի, և
իրեն մեր փրկութեանը համար թա֊
փած արեանը։ Այսպիսի բաներու
մէջ՝ պէտք է սուրբ եկեղեցւոյն կար֊
գադրութեանցը հնազանդիլ. վասն զի
անոր կ'իյնայ իր հաւատացեալ որդի֊
քը կրթել և ուսուցանել՝ ինչ կերպով
որ պատշաճ կը տեսնէ Աստուծոյ փա֊
ռացը համար։

## ԼԱ

## ԽՈՍՏՈՎԱՆՈՒԹԵԱՆ ՎՐԱՅ

Աս խորհրդիս վրայ ալ մեծ վէճ կայ։ Ընդհանրապէս նորադարձները խոստովանութիւնը կը մերժեն, և բաւական կը սեպեն որ մեղաւորը գաղտուկ Աստուծոյ առջևը զղջայ, ու հաստատուն հաւատայ թէ իրեն մեղացը թողութիւն գտաւ. Թէպէտ և լուտերականներէն շատը չեն միաբանիր աս կարծիքին վրայ, և կ'ըսեն թէ պէտք է որ մեղաւորը գոնէ վեր 'ի վերոյ կերպով քահանայի մը առջև ամբաստանէ իրեն մեղքերը։

Ասոնց դէմ հռոմէական ուղղափառները աս Ճշմարտութիւնը կը քարոզեն. Ո՛ր և իցէ քրիստոնեայ՝ որ մահացու մեղաց մէջ իյնայ, պէտք է ըստ հրամանին Քրիստոսի՝ ըրած մեղքը խոստովանի առ քահանային՝ որ աս բանիս համար օրինաւորապէս ընտրուած է. խոստովանանքը պիտի ըլլա-

տանց ըլլայ , և ըրած մեղքերուն համրանքն ու տեսակները որոշ պիտի զուրցուին . գործած մեղքերուն վրայ մարդ պիտի ողբայ , ու առաջադրէ պիտի մէյմըն ալ չընելու . և խոստովանահօրը դրած ապաշխարանքը պիտի կատարէ ։ Աս Ճշմարտութիւնը այսպէս կը ցուցուի .

Ա . Քրիստոս առաքելոց ըսաւ . « Զոր կապիցէք յերկրի՝ եղիցի կապեալ յերկինս , և զոր արձակիցէք յերկրի՝ եղիցի արձակեալ յերկինս » ( Մատթ . ԺԸ ) ։ « Առէք հոգի սուրբ . եթէ ումեք թողուցուք զմեղս , թողեալ լիցի նոցա . և եթէ զուրուք ունիցիք , կալեալ լիցի » ( Յովհ . Ի ) ։ Արդ աս վկայութիւնները Քրիստոսի եկեղեցին ( որ է հռոմէականը ) մեզ իբրև աստուածային պատուէր ընդունէր է . ուստի խոստովանութեան կը պարտաւորին ամէն ծանր մեղքի մէջ իյնողները , ինչպէս որ վերը զուրցեցինք . ուրեմն այսպիսի պարտաւորութիւնը մերժել չըլլար ։ Բայց թէ ար-

զնոք նախնական եկեղեցւոյն վարդապետութիւնն այլ մինչ աս է եղեր, բաւական է նոյն ատենուան սուրբ Հարց գրուածները կարդալ՝ որ պարզ կերպով ընդարձակ կը գրեն¹։ Իսկ

1 « Զաղտեղեալն և զախտացեալն հոգւով և մարմնով սրբէ սոյն խոստովանութիւնն ըստ աւազանին շնորհի. որ գայցէ յապաշխարութիւն գործակցութեամբ հոգւոյն սրբոյ, լինի նորոգ բնակարան »։ Սուրբն Գրիգ. Լուսաւորիչ։

« Մարդոյ քեզ նմանւոյ առնել խոստովան լինել զմեղս քո, որ 'ի ներքոյ անկեալ կայ այնոցիկ կարեաց որպէս և դու, և գիտէ խորով տկարութեանն և զքոյն չափել և մարդասիրութեամբ ուղղել. զի և ինքն կարօտ է Աստուծոյ մարդասիրութեանն, և նորին աղագաւ և առ քեզ ներող գտանի »։ Սուրբն 'Ի Մնէն. Եղբ. Կամ։

« Մի՛ ոք 'ի քահանայից առանց գիտելոյ զխոստովանութիւն մարդոյ՝ զհաւատոյն և զգործոցն, կամ իւր ինքեան, կամ այլում քահանայի. տացէ նմա զհաղորդութիւն մարմնոյ և արեանն Քրիստոսի՝ 'ի յառողջութեան կամ 'ի հիւանդութեան »։ Սուրբն Ներսէս Լամբ. յԸնդհանուր։

սուրբն Կիպրիանոս , սուրբն Օգոստինոս և ուրիշները աս ալ կը հաստատեն թէ Նովատեանց վարդապետութիւնը՝ որ խոստովանութիւնը կը մերժէին՝ եկեղեցին իբրև հերետիկոսութիւն դատապարտեց. ուրեմն նոյնպէս հերետիկոսական է նոյն վարդապետութիւնը՝ որ նորաղանդներուն ձեռքովը նորէն ելած է. վասն զի չկրնար ըլլալ որ հիմա ճշմարիտ ըլլայ այն վարդապետութիւնը՝ որ նախնական եկեղեցին դատապարտեր է՝ մոլար անուանելով։

Բ. Քրիստոսի եկեղեցւոյն մէջ դատաւորներ ընտրուած են որ իշխանութիւն ունին կապելու և արձակելու ՚ի մեղաց , ինչպէս որ վերը բերուած վկայութիւններէն յայտնի կը տեսնուի. Իսկ արդ դատաւորը չկրնար և ոչ պէտք է որ վճիռ տայ , ոչ արձակէ և ոչ կապէ՝ ինչուան որ դատաստանին ինչ ըլլալը բաւական չիմանայ. ուրեմն Քրիստոսի եկեղեցւոյն մէջ ընտրուած դատաւորները որ իշխանութիւն ունին

կապելու կամ արձակելու 'ի մեղաց՝ պարտական են վճիռ տալէն առաջ բաւական տեղեկանալ դատաստանին։ Աս բանս ապահով ու օգտակար ընելու համար ուրիշ ճար չկայ, բայց եթէ յանցաւորը պարտաւորել որ բրածը պարզ կերպով ծածուկ դատաստանարանի մէջ խոստովանի. և ով որ խոստովանի՝ կ'արձակուի, իսկ ով որ իւր զինքը արդարացընել ջանայ՝ կը դատապարտուի։ Ուրեմն պէտք է ընդունիլ աս վարդապետութիւնը ոչ միայն անոր համար որ սուրբ գրոց խօսքերուն վրայ հաստատուած է, հապա նաև անոր համար որ շատ համաձայն է քրիստոսական քաղցր օրէնքին։

Հակառակորդները աս ճշմարտութեանս դէմ չեն կրնար զօրեցընել Քրիստոսի ըրածը, որ Մագդաղենացւոյն և ուրիշներու մեղքերուն թողութիւն տուաւ՝ առանց անոնց մեղքերը լսելու. ասոր պատճառը յայտնի է։ Քրիստոս Աստուած ըլլալով, արդէն անոնց մեղքերը գիտէր. ուստի

հարկ չէր որ յանցաւորներէն լսէր. դարձեալ, Քրիստոս ըլլալով բացարձակ տէր, կրնար՝ ինչ կերպով որ կամենար՝ որ և իցէ մեղք ունեցող յանցաւորին Թողութիւն տալ: Ընդ հակառակն խոստովանահայրերը պարտական են իրենց դատաւորական իշխանութիւնը ինչ կերպով որ որոշած է՝ այնպէս բանեցընել. ուստի չեն կըրնար իրենց չիմացած մեղքերուն արձակում տալ, և չեն կրնար ալ իմանալ՝ ինչուան որ յանցանքը ընողը իր բերնովը չխոստովանի. ուստի ամէն խոստովանահայր Քրիստոսի դրած օրէնքներովը պիտի շարժի, այսինքն ան օրէնքներով որ սուրբ եկեղեցին Քրիստոսի կողմանէ հրատարակած է:

## ԼԲ

Թէ խոստովանանքը անտանելի բան չէ:

Գիտեմ, սիրելիք, որ սա նիւթիս մէջ ձեր ամէն դժուարութիւնները առ֊

Չես պիտի թափէք. կամ թէ ձեր մտքէն պիտի ըսէք. « Աս խոստովանութեան վարդապետութիւնը որչափ ալ խելացի ու սքանչելի բան երեւնայ, մեր մարդկային տկարութեանը նայելով շատ դժուար բան է ։ Ի՞նչ ըսել է որ մէկ պատուաւոր ու յարգելի մարդ մը երթայ իրեն ամէն ծածուկ ու նաեւ ամօթալի մեղքերը ուրիշի մը յայտնէ, կասկածելով ալ որ չըլլայ թէ խոստովանահայրը կերպով մը յայտնէ իրեն ծածուկ մեղքերը, եւ ամէնքին ալ իմանան իրեն գործածները ։ Իրաւցընէ աս բանս անտանելի բան կ'երեւնայ. ու շատ անախորժ դեղ մըն է. եւ աս խստութիւնն ու ճշդութիւններն են՝ որ զմարդ կը վախցընեն ուղղափառ հաւատքին հեռանելէն » ։

Դուք այսպէս կ'ըսէք, սիրելիք. հաւատացէք խօսքիս որ ես ալ ատեն մը ատանկ կ'ըսէի. բայց հիմա իմացայ որ խաբուած եմ եղեր, եւ ան զուրցածներս անխելք խօսքեր են եղեր. եւ որպէս զի դուք ալ իմանաք իմ սխալ-

մունքս, զուրցածիս ուշադրութեամբ մտիկ ըրէք ։

Ըմենեւին պէտք չէ որ մարդ մտածէ խոստովանութեան խորհրդին մէջ քաշած նեղութիւնն ու դառնութիւնը, հապա պէտք է նայի թէ որչափ օգուտ կ'ըլլայ անկէ, ու մեղաւորին խղճմտանքին ինչ հանգստութիւն կը բերէ ։ Իրաւ է, ինչպէս որ կ'ըսէք խիստ դժուար բան է որ մէկը իր յանցանքը ուրիշի յայտնէ, մանաւանդ երբ որ ամօթալի բաներ ըլլան. բայց թէ որ աս բանս չընէք, ձեզի փրկութիւն չկայ, և աս աշխարհքէս կը սկսիք դըժոխքին համը առնել, հոս խղճմտանքի դժոխքին մէջ տանջուելով անդին ալ կրակի դժոխքին մէջ ։ Հիմա ըսէք տեսնեմ. աս պատիժներն ալ ձեզի շատ խիստ չե՞ն երեւնար. համարձակ ու անկեղծութեամբ ըսէք, աս երկու դառնութիւններէն որը աւելի կ'ընտրէք. խոստովանա՞նքը թէ դժոխքը ։ Դնենք թէ սաստիկ հիւանդութեան մը համար հարկ ըլլար լեղի դեղ մը

խմել, կամ մսերնիդ կամ մէկ թևերնիդ կտրել. որը աւելի յանձն կ'առնուիք. մեռնիլ չէ նէ աս բաները ընել. յայտնի է թէ երկրորդը։ Ո՛ւր թողունք որ մարդիկ շատ անգամ միայն քիչ մը աւելի ապրելու համար՝ քան զայս դժընդակ դեղեր յանձն կ'առնուն։ Նոյնպէս մտածելու է նաև հոգևոր հիւանդութեան վրայ։ Կամ ան է որ խոստովանութեան անախորժ դեղը պէտք է առնել, կամ ան է որ յաւիտեան պէտք է դատապարտուիլ. ասկէ զատ ուրիշ ճամբայ չկայ. և աս բանիս կը պարտաւորեն զմեզ նաև Աստուծոյ պատուիրանները, ինչպէս որ վերը ցըցուցինք։

Ամենևին պէտք չէ վախնալ՝ ըսելով որ չըլլայ թէ խոստովանահայրը մեղքերս յայտնէ. վասն զի սուրբ եկեղեցին խոստովանահօր բերանը Աստուծոյ անուամբը այնպէս մը կոցած է՝ որ թէ և բոլոր աշխարհք զինքը ստիպեն, խոստովանանքին մէջ լսած մեղքերը չկրնար դուրս հանել։ Բայց

կ՚ըսէք թէ· ասով մարդ ապահով չըլ֊
լար ։ — Ուրեմն ապահով չենք ըսելով
բոլորովին եւս պիտի քաշուինք խոստո֊
վանանքէն ։ Նախ պէտք էր ասկէ վախ֊
նայիք որ չըլլայ թէ որուն հետ որ
մեղք կ՚ընէք՝ անիկայ ելլէ յայտնէ ձեր
մեղքը , ինչպէս որ շատ անգամ կը պա֊
տահի . ուր ընդ հակառակն ասկէ ա֊
մենեւին չէք վախնար ։ Մեղք առնելէն
չէք վախնար , իսկ ան վերջին համար
դեղ առնելու որ կուգայ՝ ան ատեն
կը սկսիք այսպիսի երեւակայութիւններ ,
այսչափ կասկածներ և այսչափ փուճ
վախեր ունենալ ։ Ասոր տարակոյս չը֊
կայ թէ խոստովանութեան պարտքը
կերպով մը մեղաւորին մեղքերուն պա֊
տիժն ալ է . բայց թէ որ ինքը պատ֊
ժէն կը վախնայ , թող յանցանքէն ալ
վախնայ՝ որուն համար պատիժը կը
տրուի ։ Ամենայն կերպով պատշաճաւոր
բան է որ Աստուած մեղաւորներուն
թողութիւն շնորհելու ատենը քիչ մը
դժուարութիւն իմացընէ անոնց . որ֊
պէս զի անով մեղքերէ աւելի զգուշա֊

նան . ինչպէս նաև բնութիւնն ալ այս֊
պէս կը սորվեցընէ թէ հիւանդ մը չա֊
ռողջանար՝ ինչուան որ լեղի դեղերը
չառնու , և անով ամէն մարդ իր ա֊
ռողջութիւնը պաշտպանելու արթուն
կ'ըլլայ ։

Ուրեմն մի՛ զուրցէք սիրելիք , թէ
խոստովանութիւնը մեծ վիշտ կամ՝ ան֊
տանելի նեղութիւն մըն է . վասն զի
անանկ չէ . մանաւանդ թէ մէկ կող֊
մանէ շատ պատշաճաւոր ըլլալուն՝ մէ֊
կալ կողմանէ ալ շատ քաղցր ու ա֊
նուշ , մէկէն կ'իմացուի թէ իրաւցընէ
Քրիստոսի տուած օրէնքն է որ կ'ըսէ .
« Լուծ իմ քաղցր է և բեռն իմ փոքր֊
ոգի » ( Մատթ . ԺԱ ) ։ Մէկ մահու֊
չափ մեղքի մը համար մէկը յաւիտե֊
նական դատապարտութեան արժա֊
նի կ'ըլլայ . ընդ հակառակն մէկ ան֊
գամ խոստովանելովը ամէն ծանր մեղ֊
քերը կը ջնջուին , թէպէտ և միլիո֊
նաւոր մեղքեր ունենայ , և այսպէս
դժոխքէն կ'ազատի ու Աստուծոյ հետ
կը հաշտուի , և միանգամայն երանե֊

լեաց Հետ երկնային փառքը ժառանգելու իրաւունք կ'ունենայ ։ Ո՞վ կըրնայ ըսել թէ այսպիսի օրէնք մը խիստ է կամ ծանր է ։ Մարդուս բնութիւնը այնպէս է որ միշտ քիչ բանով գոհ չըլլալէն զատ՝ նաև կը տրտնջայ ։

Վերջապէս կը տեսնեմ ընդհանրապէս որ ձեր կերպը աւելի դիւրին է, քան թէ ուղղափառացը․ որովհետև բաւական կը սեպէք ձեր մեղքերը միայն Աստուծոյ զուրցել, կամ վեր 'ի վերոյ կերպով քահանայի մը․ աս դեղը իրաւ է որ ձեր աւրուած բերնին համմար աւելի համով կ'երևնայ, բայց ինչ շահ երբոր նոյն դեղը սուտ է, և զօրութիւն չունի որ ազդէ ։ Ձեր խոստովանանքին սուտ ըլլալը ասկէ յայտնի է որ սուրբ գրոց ու եկեղեցւոյ վըճիռներուն վրայ հաստատուած չէ․ մանաւանդ թէ եկեղեցին իրեն վարդապետներովը աս ձեր խորհուրդը կը դատապարտէ՝ իբրև թունաւոր ու մահաբեր ։ Զօրութիւն ալ չունի․ վասն զի ոչ ձեր խղճմտանքը կը հանգստացը֊

նէ և ոչ ձեր սրտին խայթերը կը վեր-
ցընէ ․ աս բաներուս վրայ դուք ինձմէ
աւելի աղէկ կրնաք դատաստան ընել,
որովհետև փորձով ալ գիտէք ։

## ԼԳ

## ՔԱՒԱՐԱՆԻ ՎՐԱՅ

Մեծ վէճ է թէ արդեօք անդիի աշ-
խարհքը արքայութենէն ու դժոխքէն
զատ՝ խելահաս ննջեցելոց համար եր-
րորդ միջին տեղ մըն ալ կայ թէ չէ ։
Լուտերականք ու Կալվինականք չը-
կայ կ'ըսեն, ինչպէս կ'ըսէր Սրբեաննաւ
Ոյեախոս՝ որ աս հերետիկոսութեր
համար եկեղեցիէն դատապարտուե-
ցաւ ։ Ուղղափառ եկեղեցին կ'ընդու-
նի թէ անդիի աշխարհքը այնպիսի
տեղ մըն ալ կայ որ կ'ըսուի Քաւարան ․
ու ներելի կամ թեթև մեղքերով մեռած
արդարոց հոգիքը հոն իրենց պարտքը
վճարելէն ու մաքրուելէն ետքը՝ ար-
քայութեան փառքը կը ժառանգեն , և

սա քաւարանին մէջի հոգիքը կրնան կենդանի հաւատացեալներէն օգնութիւն գտնել։

Աս բանիս առջի ապացոյցը սուրբ գրքէն ունինք. « Բայց որ զՀոգւոյն սրբոյ ասիցէ, մի՛ թողցի նմա, մի՛ յայսմ աշխարհի և մի՛ 'ի հանդերձելումն » (Մատ. ԺԲ). ուրեմն անդին աշխարհքը մեղքերու թողութիւն կ'ըլլայ. ինչպէս որ աս խօսքերէն ալ յայտնի կ'երևնայ. « Ամէն ասեմ քեզ, ոչ ելանիցես անտի մինչև հատուցանիցես զյետին նաքարակիտն » (Մատթ. Ե)։ « Նա ինքն կեցցէ, այլ այնպէս որպէս թէ 'ի հուր » (Ա Կորնթ. Գ)։ Աս խօսքերը քաւարանին վրայ են, ինչպէս որ կը հաստատեն Կիպրիանոս, Իլարիոն, Ամբրոսիոս, Հերոնիմոս, Օգոստինոս և եկեղեցւոյ ուրիշ ամենայն վարդապետները։ « Սրբութ̃ քաջութեամբ վասն մեռելոցն զմտաւ ածէր այց լինել մեղացն թողութեան » (Բ Մակաբ. ԺԲ)։ Յուդայ Մակաբէ շատ կը գովուի ան ողորմու֊

թեանը համար, որ տաճարին ընծայեց տասնուերկու հազար. արծաթ դրամոկշիռ, որպէս զի պատերազմի մէջ մեռնող զինուորներուն մեղքը թողութիւն ու անոնց հոգւոյն նպաստ մը ըլլայ: Այս ալ գիտեմ թէ աս խօսքերը ձեզի անհաճոյ պիտի ըլլան, վասն զի Մակաբայեցւոց գիրքը ձեր աստուածաբաններուն անհաճոյ է, և ինչպէս որ կարծեմ՝ միայն աս վկայութեան համար ան սուրբ գիրքը անկանոն կը սեպեն: Բայց կ'աղաչեմ՝ որ մէյմը սուրբ Օգոստինոսին Յաղագս Քաղաքին Աստուծոյ ըսուած գիրքը աչքէ անցընէք (Գիրք ԺԸ. գլ. ԼԶ.). հոն յայտնի կը տեսնէք որ եկեղեցւոյ մէջ իբրև կանոնական ու աստուածային գիրք ընդունելի եղած էր հին ատենէն 'ի վեր. և դուք ալ որ այնչափ կը յարգէք սուրբ Օգոստինոսին աս գիրքը, նայեցէք որ անոր վարդապետութենէն չխոտորիք: Ուրեմն, ինչպէս որ ըսինք, ուղղափառ հաւատոյ մասն է թէ անդին քաւարան կայ, և ան

տեղի հոգիները օգնութիւն կրնան գտնել մեզմէ ։ Այս բանս կը հաստատուի 'ի սուրբ գրոց, ինչպէս որ ցցուցինք ․ Քրիստոսի եկեղեցին ալ հին ատենէն 'ի վեր կը դաւանի ու կը հաստատէ [1] ։

1 « Իսկ զհաւատացելոց մեռուցելոց և մապաշխարողաց, և հաղորդեալ փրկական խորհրդոյն, և հրաժարեալք յաշխարհէս, և նոցա կատարեսցին յիշատակք՝ Քրիստոսի պատարագաւն, և աղօթիւք, և գթով անանկաց և այլ բարի գործովք ․ զի մեռեղ-նովքս բարեգործութեամբք՝ հանգուցեալքն նորոգեսցին նորոգութեամբ կենացն յաւիտենից » ․ Սուրբն Գրիգ ․ Լուսաւորիչ ։

« Ահեղ խորհուրդ քահանային, բազկատարած կայր 'ի բեմին առաջի սուրբ սեղանոյն, հուր չիջանի, խաւար մերժի, արտամեալ հոգիքն ուրախանան՝ զի թողութիւն մեղաց լինի » ․ Շնորհալին ։

« Այդ եթէ կենդանեացն աղօթիւք 'ի մեռելութենէ 'ի կենդանութիւն գիւտէ ածել աստուածային զօրութիւնն, կարի յոյժ և մեղաց թողութիւն հաւատասցուք առնուլ ննջեցելոցն որք 'ի կենդանեաց յԱստուծոյ յաղագս նոցա խնդրեսցին » ․ Աբրահ ․ Եպիսկ ․ Մամիկ ․ 'ի կանոնագիրս ։

Երկրորդ, բնական խելքով ալ կ'իմացուի. վասն զի յիշուած որ մարդուս յանցանքը չջնջուիր և պատիժը կատարելապէս չվճարուի՝ արքայութեան փառացը չկրնար համնիլ, ինչպէս կ'ըսէ Յայտնութեան գրքին մէջ. «Ոչ մտցէ անդ չարակամ» (ԻԱ)։ Իսկ արդ շատ արդարներ կան որ մեռնելու ատեն թեթև յանցանքներ կ'ունենան կամ պատիժնին վճարած չեն ըլլար, ուրեմն երանական փառաց դեռ չհասած՝ պէտք է պարտքերնին վճարեն և մեղքերնին քաւեն։ Արդ որովհետև այսպիսի հատուցմունք արքայութեան մէջ չկայ, վասն զի հոն պատիժ չկայ, հապա միայն երջանկութիւն է. դժոխքին մէջ ալ՝ արքայութեան հակառակ՝ ամենևին բարի յոյս մը չկայ, ուրեմն հարկաւ կը հետևի թէ մէկ երրորդ տեղ մը պիտի ըլլայ, ուր որ աս հատուցմունքն ըլլայ. և ահա ասիկայ է քաւարան ըսուածը։

Հիմա կը մնայ ցուցընել թէ արդարները անդիի աշխարհքին ալ քաշելիք ու-

նին թէ չէ ։ Ո՛ս քանս այսպէս կը ցու-
ցընենք․ թէպէտ և արդարները աս աշ-
խարհքիս մէջ կը զրկուին ու կը մաք-
րուին ժամանակաւոր պատժով , բայց
ասով իրենց բոլոր մեղքերը կամ պա-
տիժը ամէն անգամ չքաւուիր , հապա
միայն յաւիտենականին պատժէն կ՚ազա-
տին․ ինչպէս յայտնի է ՚ի սուրբ գրոց՝
Դաւթի և ուրիշ արդարոց վրայ․ որ
թէպէտ և իրենց մեծ յանցանքներուն
համար Աստուծմէ թողութիւն առին ,
բայց ժամանակաւոր պատիժ մըն ալ
ունեցան անոնց մեղքը քաւելու համար ։
Իսկ արդ ամենաստոյգ բան է , թէ ժա-
մանակաւոր պատիժը շատ անգամ աս
աշխարհքիս մէջ չըլլար․ ինչպէս շատ
անգամ կը պատահի որ չարագործ ու
անհաւատ մարդիկ իրենց վերջի օրե-
րը , կամ թէ դէշ վարքերնին մէկ դի
ձգելէն ետև , առանց աս աշխարհքիս
մէջ հատուցումն ընելու մահուան ժա-
մանակը կը դառնան ու կ՚ապաշխարեն․
կը մեռնին․ ուրեմն պէտք է որ իրենց
պատիժը անդիի աշխարհքը քաշեն ։

Ասկէ զատ, որչափ որ մէկը սուրբ ըլլայ՝ գրեթէ անկարելի բան է որ ներելի մեղք չունենայ. և շատ անգամ մարդուս անձնասիրութիւնը չթողուր որ աղէկ մաքըրուի. կամ թէ երբեմն կը պատահի որ յանկարծական մահուամբ կը մեռնի. ասով կ'իմացուի թէ անդին քաւարան գնելը շատ հարկաւոր բան է, որ հոն մարդուս թեթև մեղքերուն քաւութիւն ըլլայ։

## ԼԴ

## ՆԵՐՈՂՈՒԹԵԱՆ ՎՐԱՅ

Քրիստոսի սուրբ եկեղեցին աս իշխանութիւնս ալ ունի, որ մեղաւորները խոստովանցընելէն ետքը՝ անոնց ժամանակաւոր պատժոյն ալ ներումն կրնայ շնորհել։ Լուտեր և Կալվին չեն ընդունիր եկեղեցւոյն աս իշխանութիւնը. և իրենց աս վարդապետութեանը հետևեցան նաև Պետրոս Վալթոն, Յովհաննէս Վիքլեֆ, Յովհաննէս

Հուս , և ուրիշ հերետիկոսներ ։ Իսկ ուղղափառները եկեղեցւոյն ալ իշխանութիւնը ասանկ կը հաստատեն .

Քրիստոս սրբոյն Պետրոսի և անոր յաջորդներուն բացարձակ իշխանութիւն տուաւ մեղաւորները 'ի մեղաց և 'ի յաւիտենական պատժոց արձըկելու . ուրեմն և ս առաւել կրնան ժամանակաւոր պատիժներէն զանոնք ազատել ։ Այս բանս Քրիստոսի խօսքէն ալ պարզ կերպով կ'երևնայ , որ Պետրոս առաքելոյն ըսաւ . « Տաց քեզ զփականս արքայութեան երկնից . և զոր միանգամ արձակեսցես յերկրի , եղիցի արձակեալ յերկինս » ( Մատթ . ԺԶ ) ։ Այսպիսի բացարձակ իշխանութիւն առնելէն ետքը , որ և իցէ մեղք ու պատիժ կրնար դնել և արձըկել ։

Քրիստոս Աստուծոյ արդարութեանը առատապէս հատուցմունք ըրած ըլլալով , և անթիւ սուրբերուն արդիւնքըն ալ՝ որ իրենց պարտքէն աւելի հատուցին՝ մէկտեղ դնելով , Աստուծոյ

ողորմութեանը զանձը եղան. և Քրիստոս այս ամէն զանձուց բանալիքները իրեն փոխանորդին՝ սուրբ եկեղեցւոյ ձեռքը տուաւ, որպէս զի կենդանի ու մեռած հաւատացելոց համար երբ ու որչափ որ պէտք ըլլայ նպաստ ու օգնութիւն ընէ եկեղեցին՝ որչափ որ Աստուծոյ պատուոյն յարմար սեպէ:

Սուրբ եկեղեցին միշտ այս Ճամբան բռներ է, և այս կարծիքը ունեցեր է. և այս բաները Լուտեր քան զամէն մարդ աղէկ պիտոր գիտնար. որովհետև ինչուան իր ատենը ներողութիւնները իր կրօնակիցներուն ձեռքովը կը բաժնուէին, և երբոր տեսաւ թէ պապը այս իշխանութիւնը իրենցմէ վերցուց՝ Դոմինիկեան կրօնաւորներուն տուաւ, ան ատեն մարդկային այլ և այլ մտապարծութեանց համար՝ Հռովմայ եկեղեցիէն ապստամբեցաւ:

## Ա։

## ՅԱՐԳՈՒԹԻՒՆ ՍՐԲՈՑ

Սրբոց յարգութեան վրայ մեծ հակառակութիւն կայ։ Սուրբ եկեղեցին այսպէս կը հաստատէ՝ թէ Պէտք է որ հրեշտակներն ու սուրբերը իբրև բարեկամ Քրիստոսի՝ բարեխօս բռնենք ու պատիւ ընենք անոնց. և թէ իրենց մասունքներուն ու պատկերներուն պէտք է յարգութիւն տանք. թէ որ եկեղեցին զանոնք սրբացուցած է՝ հրապարակաւ տօնենք, ապա թէ ոչ՝ անյայտ ու առանձին։

Հիմակուան նորաղանդները աս վարդապետութիւնը բոլորովին կը մերժեն, ինչպէս որ ատեն մը մերժեցին Վիգիլանտիոս, Մանի, և Արիոս, որոնք որ եկեղեցին ամէնն ալ հերքեց աս պատճառներովս.

Ա. Սուրբ գրոց մէջէն յայտնի է թէ աշխարհքիս վրայ եղած արդար մարդիկը կրնանք բարեխօս բռնել. ու-

րեմն որչափ ալ ատաւել սուրբերը կըրնանք օգնական և բարեխօս բռնել, որ երկինքը Քրիստոսի հետ կը թագաւորեն։ Շատ վկայութիւններ ալ կան Հին և Նոր կտակարանաց մէջ, որոնց մէկ քանիին հոս դնենք. «Երթայք առ ծառայ իմ Յոբ, և արասցէ ողջակէզս վասն ձեր, և Յոբ ծառայ իմ արասցէ աղօթս վասն ձեր. զի թէ ոչ նմա անձն առնել էր, և եթէ ոչ վասն նորա էր, կորուսեալ էր իմ արդեօք զձեզ» (Յոբ. ԽԲ)։ Ահա Աստուած կը հրամայէ որ երկրիս վրայ կենդանի սուրբերէն օգնութիւն խնդրենք. «Աղօթս արարէք, եղբարք, միանգամայն և վասն մեր» (Կողոս. Դ)։ «Աղաչեմ զձեզ, եղբարք, ի ձեռն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, և սիրով հոգւոյն, պատերազմակից լինել ինձ յաղօթս վասն իմ առ Աստուած» (Հռովմ. ԺԵ)։ Ահա Պօղոս առաքեալը կենդանի հաւատացելոց աղօթքը կը խնդրէ։

Աս ճշմարտութիւնը անանկ պայ֊

ծառ վկայութիւններով հաստատուած է, որ հակառակորդները կը պապանձին ու ամենևին չեն կրնար դէմ բան մը զուրցել։ Արդեմն ինչու համար սուրբերուն մեռնելէն առաջ զանոնք բարեխօս պիտի բռնենք, ու մեռնելէն և Քրիստոսի հետ թագաւորելէն ետքը պիտի աղօթք չընենք։ Իսկ թէ որ մէկը ձեր խօսքին հետևելու ըլլայ՝ այսպէս պէտք է զուրցէ, թէ մէկը քանի որ առանձին քաշուած մարդ մըն էր՝ ամէնքը զինքը կը յարգէին, բայց որովհետև ետքէն ան աստիճան բարձրացաւ, որ թագաւորին խիստ մօտիկ բարեկամ եղաւ, ան ատենը պէտք չէ զինքը օգնութիւն կանչել. ինչու. վասն զի անկէ ետքը չկրնար պզտի օգնութիւն մըն ալ ընել։ Իրաւ որ եթէ այսպէս բան մը ըսէր մէկը. խենդի տեղ կը գնէինք զինքը։ Հիմա թէ որ աս օրինակը մեր խօսքին վրայ դարձընենք, դուք կամ ձեր աստուածաբանները խենդ կամ մոլորած պէտք է սեպուիք. վասն զի

ձեր աստուածաբանները չե՞ն որ կը պատուիրեն թէ քանի որ սուրբերը կենդանի են՝ պէտք է զանոնք պատուել, իսկ մեռնելէն ետքը կռապաշտութիւն է կ՚ըսեն զանոնք պաշտելն ու անոնց աղօթք ընելը ։

Բ. Սրբոց մասունքներն ու պատկերները նաև ամէն ժամանակ ընդհանուր սովորութիւն եղած է, և Աստուած ալ մեծամեծ հրաշքներով հաստատած է աս բանս ։ Սուրբ գրոց մէջ կը կարդանք որ Աստուծոյ հրամանովը կը պատուէին օրինաց տախտակները, Ահարոնին ծաղկած գաւազանը, տապանակին մէջ պահուած մանանան, ու նոյն իսկ տապանակը որուն զօրութեամբը Յորդանան բացուեցաւ որպէս զի Իսրայելացիք անցնին, Երիքովի պարիսպները կործանեցան, Աբեդդարայ տունը օրհնուեցաւ, և Ազա ու փղշտացիները պատժուեցան ։ Եղիսէ ալ Եղիայի վերարկուովը Յորդանան գետը նորէն ճեղքեց, և մէկ մեռել մը Եղիսէին ոսկորներուն դպչելով յա-

րութիւն տուաւ, և ուրիշ այսպիսի հրաշքներ որ սուրբ գրոց մէջ լեցուն են։ Քրիստոսի եկեղեցւոյն մէջ ալ սրբոց պատկերներուն ու մասունքներուն այնչափ հրաշքներ եղած են որ եթէ մէկը աս ամէն բաները ուրանայ, քան զայս անտանելի կամակորութիւն չըլլար։ Թէ որ մէկ հրաշք մը միայն եղած ըլլար, բաւական էր սրբոց մասունքներուն պաշտօնը հաստատելու. վասն զի անկէ յայտնի կըլլար թէ Աստուած հաստատեր է. որովհետև ճըշմարիտ հրաշքներու աղբիւրը միայն ինքն է, և ինքը չկրնար ճշմարիտ ու սուրբ հաւատքին դէմ նոր ու սուտ աղանդ մը հաստատել հրաշքներով։

Հակառակորդներուն ան պատճառները՝ որոնցմով կ'ուզեն հաստատել ու պաշտպանել իրենց կարծիքը, բոլորն ալ փուճ ու տղայական իմաստակութիւններ են. վասն զի կ'ըսեն թէ Աստուած կ'ուզէ որ միայն զինքը պատուենք, ու իրեն միայն յարգուի տանք, և թէ միայն իրմէ կրնայ մարդ օգնութի

առնուլ, և թէ միջնորդ Աստուծոյ և մարդկան միայն Քրիստոս է. և թէ Աստուծոյ մեծվայելչութեանը նախատինք ըրած կ'ըլլայ մէկը՝ թէ որ Աստուծմէ յոյսը կտրելով սուրբերուն պաղատի. և թէ երբոր սուրբերը աղօթքնիս չեն լսեր, անոնց դիմելը բոլորովին անօգուտ է։ Իսկ անոնց պատկերներուն կամ արձաններուն ու մասունքներուն յարգութիւն ընելը կռապաշտութիւն է, պարզամիտներուն ալ գայթակղութիւն. վասն զի տգէտները կը խաբուին ու սրտանց կը հաւտան անոնց։

Աւելէք, թէ որ կ'ուզէք այս առաջարկութիւններուն դէմ մէկ քանի պատրաստ պատասխան, ահա հոս կը գտնեմ։ Նախ իրենց զուրցած պատճառներէն կը հետևի թէ պէտք չէ աշխարհքիս վրայ եղած սուրբերը յարգել, և ոչ զանոնք բարեխօս բռնել. իսկ արդ ասիկայ սուրբ գրոց մէջ ալ դըրուած ըլլալուն՝ իրենք ալ կ'ընդունին իբրև բացայայտ ճշմարտութիւն։ Եր-

կրօրդ, ո՞վ չգիտեր թէ միայն զԱստուած պէտք է պաշտել իբրև գերագոյն տէր տիեզերաց, և ոչ եթէ սուրբերուն ալ նոյն պատիւն ընել. աս բանս անհնարին հայհոյութիւն է, ուստի ուղղափառները ոչ երբեք ասանկ բան զուրցած են. հապա միայն կ'ըսեն թէ սուրբերն ալ կրնան պատիւ ընդունիլ ու բարեխօս բանուիլ, իբրև Քրիստոսի բարեկամք. և Աստուած ալ կը հաճի՝ երբոր կը տեսնէ թէ մենք իրեն սիրելի սուրբերուն պաշտպանութիւնը կը խնդրենք, և իրենց ձեռքովը մեզի շատ աւելի շնորհքներ կ'ընէ. վասն զի իրեն անհուն բարութիւնը՝ իրեն սիրելի սուրբերուն ձեռքովը աւելի կրնայ մեր վրայ իջնալ. ինչպէս որ մարգարէն ալ կ'ըսէ. «Ինձ յոյժ մեծարոյ եղեն բարեկամք քո Աստուած» (Սաղմ. ԼԸ)։ Ուրեմն մենք զԱստուած կը պաշտենք, և սուրբերը կը պատուենք, և զամենասուրբ կոյսն Մարիամ կը յարգենք ու կը պատուենք գերազանց կերպով։

Նյըրօրդ, Հրեշտակներն ու սուրբե-
րը աստուածային էութեանը վրայ նը-
րև մաքուր հայելի մը մէջ Աստուծոյ
արարածները կը տեսնեն. բայց չէ թէ
մարմնական զգայարանքով. վասն զի
ոչ աչք ունին և ոչ ականջ, հապա միայն
հոգւոյ զօրութ̃ք ամենակատար կեր-
պով, իբրև թէ մարմնաւոր զգայա-
րանքներով տեսնէին ու լսէին։ Աս
կերպով պէտք է հասկընալ նաև Ռա-
փայէլ Հրեշտակին Տօբիթայ աղօթքը
լսելն ու Աստուծոյ առջև հանելը։
Հրեշտակները մեղաւորներուն ապաշ-
խարութիւնը կը տեսնեն ու արքայու-
թեան մէջ կ'ուրախանան, ինչպէս նաև
Յայտնութեան գրքին մէջ կ'ըսէ, թէ
քսանևչորս երիցունքը արդարներուն
աղօթքն ընդունեցան ու Աստուծոյ
առջևը տարին. և ուրիշ ասոնց նը-
ման վկայութիւններ շատ կան։ Պատ-
ճառ, ինչպէս կրնայ մէկն ըսել թէ
երկինքը եղած սուրբերը, որոնք քանի
որ աշխարհիս վրայ էին՝ իրենց բարի
վարուցը փոխարէն Աստուծմէ առեր

էին կարողութիւն՝ ըմբռնելիքները գիտ-նալու, և նաև մարդուս ծածուկ խոր-հուրդները իմանալու, նոյն կարողու-թիւնը երկինքը չունենան ։

Չորրորդ, Քրիստոսի, Ա՟ծածնայ, հրեշտակներուն ու սրբոց պատ-կերներուն պատիւ որ կ'ընենք մենք ուղղափառքս, զանոնք կը յարգենք՝ չէ թէ անոնց նիւթին կամ շինուածքին համար, և չենք հաւատար թէ անոնք մասնաւոր զօրութիւն մը ունին (ինչպէս որ յիմարաբար կը հաւատային հեթա-նոսները), այլ իբրև Քրիստոսի ու ի-րեն սուրբերուն պատկերները կը յար-գենք, որպէս զի անոնց յիշատակը մտքերնիս մնայ, և մեր սիրտը արթըն-նայ զիրենք սիրելու ։ Ասոր ան ամէն յարգութիւնն ու պատիւն որ սուրբ պատկերներուն կու տանք՝ իրենց նա-խատիպին կերթայ, որ է Քրիստոս ու իրեն սուրբերը. և աս մտքով իրենց առջևը կ'աղօթենք, օգնութիւն կը խնդրենք, անոնց կ'ապաւինինք, ևն [1] ։

[1] « Զյիշատակս տանել արդարոց կա-տարելոց՝ նոցա նահատակութեանն և սի-

Ըսիկայ է հռոմէական, ուղղափառ, ամենասուրբ եկեղեցւոյն Քրիստոսի 'ի սկզբանէ հետէ դաւանած ու սորվեցուցած վարդապետութիւնը ։ Յուսամ որ այսչափով իմացաք ձեր խաբուած ըլլալը . և այսչափ խօսքով հիմա դուք զձեզ ալ կրնաք համոզել, հակառակորդներուն ալ դէմ գնել ու բերաննին գոցել ։

Է րոյն որ առ Աստուած վկայէ, և բազում շահս անձանց ստանամք սրբոյն բարեխօսութեամբ առ տէր ». Սուրբն Գրիգ. Լուս. 'ի Յաճախ ։

« Այսօր յիշատակ սրբոցն, և փայլին նշխարք սոցա 'ի մէջ եկեղեցւոյ . աղաչեսցուք զտէր, տացէ խնայեա 'ի մեզ » . Շարական ։

« Ոսկերք մարտիրոսաց պայծառին և զծածուկ մեղս 'ի մարդկանէ 'ի բաց սրբեցին ». ՆշՆշ ։

« Որ պատուէ զխաչն Քրիստոսի և զպատկեր նորին, զնոյն ինքն պատուեալ լինի զՔրիստոս . նոյնպէս և թշնամանելովն զնոսա՝ 'ի Քրիստոս լինի մեղուցեալ թշնամանիչն ». Սուրբն Ներս . Լամբր ։

ԼԶ

## ՀՌՈՄԱՅ ՔԱՀԱՆԱՅԱՊԵՏԻՆ ՎՐԱՅ

Վէճ է թէ ո՛վ է Հռովմայ քահանայապետը։ Լուտերականք ու Կալվինականք, և բոլոր հիմակուան նորաղանդները, իրենց սուրբ եկեղեցիէն ապստամբիլը արդարացընելու կամ պատրուակելու համար, աս ծայրագոյն հովուին վրայ շատ դիւական զրպարտութիւններ կ՚ընեն, և կ՚ըսեն թէ ինքն է Նեռը՝ որ սուրբ գիրքը կը սպառնայ խրկելու։ Բայց մենք ընդհակառակն կը հաստատենք՝ թէ ծայրագոյն քահանայապետը, որ Հռովմայ պապը է փոխանորդ Յիսուսի Քրիստոսի երկրիս վրայ, և երևելի գլուխ սուրբ եկեղեցւոյ, ու սրբոյն Պետրոսի օրինաւոր յաջորդը։

Աս վէճը գործնական խնդիր ըլլալուն, պատմութեամբ միայն կրնայ աղէկ ստուգուիլ։ Ուստի նախ աս իշխանութիւնը կամ յաջորդութիւնը

անցաւ 'ի Քրիստոսէ սրբոյն Պետրոսի, և անոր ետևէն յաջորդաբար նստան սուրբն Լինոս, սուրբն Կղետոս, սուրբն Կղեմէս, և Հռոմայ ուրիշ քահանայապետները որ մէկմէկու ետևէ օրինաւոր յաջորդութեամբ շարունակեցին մինչև աս օրս, և ամէնքն ալ Քրիստոսի ճշմարիտ փոխանորդները և սրբոյն Պետրոսի յաջորդներն ու Քրիստոսի եկեղեցւոյն գլուխ ճանչցուած են. ինչպէս հիմակուան պապն ալ գլուխ եկեղեցւոյ կը ճանչնան բոլոր իր իշխանութեան տակն եղած հաւատացեալք՝ եպիսկոպոսք, կրօնաւորք, թագաւորներ, իշխաններ, մեծամեծներ ու բոլոր եկեղեցական և աշխարհական անձինք [1]։

[1] « Սուրբ և առաջին ամենայն եպիսկոպոսապետաց հայրապետն Հռոմայ և փոխանորդն Պետրոսի ». Սուրբն Ներս. Շնորհալի։

« Եւ դու Հռոմայ մայր քաղաքաց,
Գերապայծառ և պատուելի.
Մեծին աթոռդ Պետրոսի,
Առաքելոց գլխաւորի.

Այսչափ բազմութեան առջև դրե- թէ ոչինչ է՝ մնացած քրիստոնէից խումբերը, և իրենց աղանդները ա-

Եկեղեցի անշարժելի,
Ի կեփայեան շինեալ վիմի.
Դրանց դժոխոց անյաղթելի,
Եւ կնիք երկնիցըն բացողի». Նոյն, յՈղբ-
ոյն Եդէս.:

«Յառաջագոյն քան զծնանելն ՚ի Բեթ- ղեհէմ՝ տայ զերկրաւոր պետութիւնն ՚ի Հռովմայեցիսն, որ չորրորդ գազանն ա- նուանեալ ՚ի Դանիէլէ. քանզի ՚ի Հռովմ հանդերձեալ էր կարգել զաթոռն Պետրո- սի և Պօղոսի, և զգլխաւորութիւն սուրբ եկեղեցւոյ. և զՀռովմայեցւոց թագաւո- րութիւնն կոչելոց էր ՚ի հաւատս՝ լինել դաւազան քրիստոսական դաւանութեան ՚ի վերայ դիմամարտից խաչին Քրիստոսի». Զաքար. Կաթողիկոս:

«Իններորդ դասս վերագոյն քան զամե- նեսեան Պապիոս, նմանեալ քերովբէից... և գործ է նորա կարգել զգահս թագաւո- րաց». Մխիթ. Գօշ ՚ի Դատաստանագիրսն:

«Կեցո՛ զորդի ծառայի քո զոր ՚ի Հռով- մայ դահիցն վերադարձուցեր, ուր եդին զվէմն հաւատոյ հիման սուրբ եկեղեցւոյ». Շարական:

մինչեւ ի հիմն չունին։ Հռոմայ քահանայապետաց յաջորդութեան օրինաւոր ըլլալը կը ցուցընեն այնչափ վաւերական գրուածքներ, զանազան ժողովքներ, անթիւ սուրբ հարք, եպիսկոպոսներ և վարդապետներ, որ ամէնքն ալ Հռոմայ՝ պապին հնազանդած են՝ զինքը ճանչնալով ճշմարիտ փոխանորդ Քրիստոսի, մի միայն երևելի գլուխ եկեղեցւոյն Քրիստոսի, ու գերագոյն և անսխալ դատաւոր վարդապետութեանց հաւատոյ. և առ բանիս համար առանց քահանայապետին հրամանին և հաւանութեանը՝ հաւատոյ վրայ եղած որ և իցէ ժողովք և վճիռ անվաւեր կը սեպուի։

Ըս ճշմարտութեան դէմ քանի մը առարկութիւններ կան, որ նորաղանդից հնարքն են։ Բայց իրենք ոչ երբէք կրցեր են՝ ու չեն ալ կրնար ցուցընել թէ մէկ պապ մը կոնդակ հանած ըլլայ քրիստոնէական հաւատոյ մէկ էական մասին դէմ, և կամ ուրիշ պապի մը վճռին դէմ վճիռ հանած ըլլայ։ Ապապ

մը ինչ վարքի մէջ ըլլայ՝ աս յայտնի է որ իրեն սորվեցուցած հաւատոյ վարդապետութիւնները ամենաճշմարիտ են. և Աստուած ինչ խոստմունք որ ըրեր էր սրբոյն Պետրոսի և անոր յաջորդներուն, չկրնար չկատարել. արդ թէ որ նորաղանդները կ'ուզեն ուրանալ Հռոմայ պապին հովուապետ ըլլալը Քրիստոսի եկեղեցւոյն, բաւական չէ իրենց պնդելը թէ պապին իշխանութիւնը ապօրինաւոր է. հապա պէտք է որ ըսածնին այնպիսի զօրաւոր ապացոյցներով ցուցընեն որ ամէն մարդ համոզուի, ու դէմ չկարենայ դնել։ Բայց այնպիսի ապացոյց մը ինչուան հիմա չեն ցուցըրցած. հապա բոլոր ըսածնին զրպարտութիւն և խաբէական ձեռնարկութիւններ են, որով տգէտներուն միտքը միայն կը շփոթեն, և իրենք իրենց յամառութեանը մէջ աւելի կը հաստատուին։ Հռոմայ քահանայապետին իրենք Նեռն կ'ըսեն. ա՛ս բանիս պատճառը ես ալ երկայն ժամանակ չէի գիտեր. այնպէս կարծէի

թէ Նորաղանդները անշուշտ պապա-դաւան ըստ ուղղափառ ժողովուրդը ծառը ընելու համար հնարեր են. բայց ետքը Նորաղանդից գրքերուն մէջ ալ կարդացի, տեսայ որ իրաւցընէ սաստիկ պնդելով կը պաշտպանեն աս յիմարական զրպարտութիւնը. և միաբան ալ չեն իրենց մէջ՝ թէ աս Լեոն ըսուելուն պատճառը ինչ է, ու երբ սկսած է։ Ոմանք կ'ըսեն թէ աս Նախատական անունն ու պաշտօնը սուրբ Գրիգոր պապ (որ մեծն Գրիգոր ալ կ'ըսուի) ամենէն առաջ ունեցեր է. բայց Լուտեր իրենց հիմնադիրը ասոնց դէմ կը պոռայ թէ «Լսածնիդ սուտ է. Գրիգոր պապը իրաւցընէ սրբակաց և բարի մարդ էր»։ Չեմ ուզեր հոս այսպիսի անձոռնի զրպարտութեան վրայ երկայն բարակ վէճ ընել. վասն զի և ոչ աս զրպարտութիւնը պաշտպանողները կը հաւատան. և հիմա աս զրպարտութիւնը հին Նորաղանդից գրքերուն մէջ միայն կը գըտնուի։ Բայց ագէտներուն միտքը բժըշ-

կենլու համար, ու նորաղանդներէ դէմ ճշմարտութիւնը ցուցընելու համար՝ հոս քանի մը ապացոյցներ դնենք։ Նեռն ըսուածը ան է. կամ ան պիտի ըլլայ՝ որ սուրբ գրքին մէջ նեռի վրայ եղած նշանները ունենայ. իսկ արդ Հռոմայ քահանայապետին վրայ աս նշանները չկան, ուրեմն ինքն նեռը չէ։ Նեռին նշանները Յովհաննու յայտնութեան մէջ յայտնի կեցած են (Յայտ. ԺԳ), որ ասոնք են. ա, Նեռը իրեք ու կէս տարի պիտի թագաւորէ. բ, զՔրիստոս պիտի ուրանայ, և Հրեաները զինքը մեսիայի տեղ պիտի դնեն. գ, Երուսաղեմայ մէջ երկու մարգարէներուն 1260 օր քարոզելէն վերջը, զանոնք սպաննել պիտի տայ. աս մարգարէները (որ են Եղիա և Ենովք) իրեք ու կէս օրէն ետքը յարութիւն պիտի առնեն, և ժողովրդեան աչքին առջևը երկինք պիտի ելլեն, ու նոյն միջոցին բոլոր քաղաքը սաստիկ երկրաշարժէ պիտի ցնցուի ու խռովի, և 7000 մարդ պիտի մեռնին. դ, Նեռը

բոլոր իրեն հետեւողներուն ճակատը կնիք մը, կամ ձախ ձեռքերնուն մէջ գիր մը պիտի կոխէ, անանկ որ ան կնիքը կամ գիրը չունեցողը պիտի չը-կարենայ ամենեւին բան մը ծախել կամ գնել։ Ոչ ահա աս նշաններէն մէկն ալ չկայ Հռոմայ քահանայապետին վրայ. ուստի չկրնար ըլլալ որ ինքը նեռն ըլլայ։ Իսկ թէ որ նորաղանդնե-րէն մէկը այնչափ անմիտ ըլլայ որ ը-սէ թէ նեռն ըսուած անզգամը աշ-խարհք եկած է, այնպիսին թող իր աղանդակիցներուն մէջ փնտռէ զան նեռը. և անշուշտ անոնց մէջ աւելի դիւրաւ կը գտնէ՝ քան թէ Հռոմայ եկեղեցւոյն պատուական հովիւներուն մէջ։ Վասն զի նորաղանդները Քրիս-տոսի ճշմարիտ հաւատքին թշնամի ըլ-լալով, նեռին ալ նախորդները կամ պաշտօնեաները կրնան սեպուիլ. ուս-տի իրենց վրայ կրնայ հասկցուիլ նաև սուրբ գրքին ան խօսքը, « Որդեակք, յետին ժամանակ է. և որպէս լուա-րուք՝ նեռն գալոց է. և արդէն իսկ

նեռինք բազումք եկեալ են, որով մարթիւք իմանալ՝ եթէ յետին ժամանակ է» (Ա Յովհ. Բ.)։ Բայց աս նիւթիս վրայ այսչափ խօսիլը բաւական է։

## ԼԵ

## ՇՆՈՐՀԱՑ ԵՒ ԱՆՁՆԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ ՎՐԱՅ

Աս նիւթիս այլ և այլ ճիւղերուն վրայ մեծ վէճ կայ Նորադանդներուն և ուղղափառներուն մէջ. բայց հոս իմ միտքս ան չէ որ աստուածաբանական ձևով երկայն բարակ խօսիմ շնորհաց և ազատ անձնիշխանութեան վրայ. հապա պարզ կերպով թէ Նորադանդներուն և թէ Հռոմէական ուղղափառներուն աս նիւթիս մէջ ունեցած վարդապետութիւնները կը դնեմ, և կը յուսամ որ կարդացողները մէկէն առջի դատաստան ընելով՝ կ'իմանան թէ աս երկու ժողովրդէն որը Քրիստոսի ճշմարիտ վարդապետութիւնը ունի և կը քարոզէ։ Աս նիւթիս վրայ

նախ Կալվինին սկզբունքը դնենք, ուսկից քիչ տարբերութիւն ունին Հիմակուան նորաղանդներուն՝ սկզբունքներն ալ։

Նորաղանդներէն վարդապետութիւնը։

Ա. Աստուած բռնադատիչ վճռով մը, և առանց մարդկային անձնիշխանութեան, կամ մարդուս արդեանցը կամ յանցանացը նայելու՝ ՚ի յաւիտենից որոշած է թէ անոնց թիւը որ կ՚ուզէ փրկել, և թէ անոնց թիւը՝ որ կ՚ուզէ դատապարտել։ Առջիններնը կ՚ըսուին Նախասահմանեալք, մէկալները Անարգեալք։ Աս պատճառաւ՝ Աստուած ոչ միայն թոյլ տուաւ, հապա բացարձակապէս ուզեց որ Ադամ մեղանչէ. ինչպէս ուրիշ ամէն մեղք ալ կ՚ուզէ որ ըլլայ, որպէս զի իրեն ողորմութիւնը ցուցընէ նախասահմանելոց վրայ, և արդարութիւնը անարգելոց վրայ։

Բ. Քրիստոս իր շնորհքը՝ ամենուն չտար, հապա միայն նախասահմանե-

լոց . և միայն անոնց համար մարգա-
ցաւ ու մեռաւ ։ Բայց և ոչ նախասահ-
մանելոց յարդարութեան սրբարար շը-
նորհք կուտայ . հապա միայն առժա-
մանակեայ շնորհք մը . ան ալ այնպէս
քիչ անգամ, որ Աստուծոյ պատուի-
րանները պահելու համար չբաւեր .
ուստի անկարելի բան է Աստուծոյ
պատուիրանները պահելը ։

Գ . Ադամայ մեղքը՝ թէ զինքը և
թէ իրեն յաջորդները զրկեց ազատ կամ-
քէ կամ անձնիշխանութենէ . ուստի
ինչ որ կ՚ընենք՝ գէշ աղէկ , ամէնն ալ
հարկաւ կ՚ընենք , առանց ազատու-
թեան ։ Ճիշդ խօսելով պէտք չէ ը-
սել թէ մենք ինչպէս որ դայ բարի
կամ չար գործք մը կ՚ընենք , հապա
թէ մեզի ամէն բան ընել տուողը Աս-
տուած է ։ Ուստի մարդիկ պէտք չէ
ամենևին մտածեն՝ ոչ իրենց փրկութիւ-
նը և ոչ իրենց դատապարտութիւնը .
վասն զի հարկաւ պիտի կատարուի
ինչ որ Աստուած ՚ի յաւիտենից որո-
շեր է՝ առանց մեր ընելու գործքերուն
նայելու ։

Դ. Թէ որ նախասահմանեալ մը մեծ մեղք մը գործէ, կարօտ է մէկ շնորհքի մը որ իրեն մեղքը քաւէ. բայց աս շնորհքը մարդուս ներքին կընիք կամ պարգև մը չէ, որ արդարոյն սիրտը իջնայ ու անով զինքը նորէն արդարացընէ և զօրացընէ։ Այլ աս կերպով միայն արդարոց մեղքը կը քաւուի, (աղէկ ուշ դրէք, պատուական ընթերցողք, աս եռքի յիմարական վարդապետութիւնը.) ու հաւատալով միայն թէ իրեն մեղքերը կը քաւուին, (և չկրնար չհաւատալ աս բանիս՝ թէ որ մէկը նախասահմանեալ է. ինչպէս որ չկրնար հաւատալ՝ թէ որ մէկը անարգեալ է.) որով բոլորովին կ'արդարանայ այնպիսին ու Աստուծոյ սիրելի կ'ըլլայ, իբր թէ Աստուած փոխ տար անոր թողութիւնը, կամ թէ դրսուանց անոր վրայ աստուածային սրբութիւն ու արդարութիւն իջեցընէր. ամենևին նման երկրթի օրինակին, որ եթէ վրան ոսկեզօծուի, դրսուանց ոսկի կ'երևնայ, բայց բոլոր ներսի գոյացութիւ-

նը երկաթ է. կամ թէ ինչպէս թէա-
տրոնի մարդ մը, որ թագաւորական
վերարկու հագնելով իրաւցընէ թա-
գաւոր չըլլար, հապա միայն թագա-
ւոր կ'երեւնայ. այսպէս ահա դրսուանց
միայն է մարդուս արդարանալը: Նյւ
երբոր Քրիստոս մէկուն մեղացը քա-
ւութիւն կու տայ, մեղաւորին մեղքերը
չէ թէ կը ջնջուին՝ կը վերնան, հա-
պա միայն կը ծածկուին. ինչպէս ոս-
կէզօծած մակերեւութին տակի երկա-
թը, կամ թագաւորական վերարկուին
տակը՝ կատակերգուն: Ասկէ կը հե-
տեւի (տեսէք ինչ խելացի հետեւանք)
թէ կամ Աստուած եղած մեղքերը
չտեսներ, և կամ Աստուած ալ մեղքը
կը սիրէ, և իրեն բարեկամ ու եարն
ալ իրեն փառացը հաղորդ կ'ընէ ան
մարդը՝ որ յայտնի գիտէ թէ մեղաւոր
է ու իրեն թշնամի:

Ահա աս է, սիրելիք, Կալվինի և
ամէն նորաղանդներուն բարակ աս-
տուածաբանութեան ծուծը. և ասկէ
այնչափ անձոռնի հետեւանքներ կը հա-

նեն՝ հակառակ թէ մաքի, թէ ամէն օրուան փորձի, թէ սուրբ գրոց և թէ աստուածային առաքելոց, որ եթէ մէկը ուզենայ հաւատալ՝ պէտք է որ հրեշ մը, կամ անբան անասուն մը, և կամ սատանայական կամակորութիւն լեցուած մարդ ըլլայ։ Ասկէ աւելի ի՞նչ մոլորութիւն կրնայ ըլլալ, որ մարդ զԱստուած բանաւորի տեղ գնէ, և Ներոնէն և Կալիգուլայէն անգութ սեպէ։ Եւ ահա այսպիսի բըռնաւոր մը կ՚ըլլար Աստուած՝ թէ որ Կալվինին ըսածին պէս՝ առանց մեր յանցանքին յաւիտեան զմեզ դատապարտէր։

Ասկէ աւելի մեծ անխելքութիւն կրնա՞յ ըլլալ, որ մէկը բոլորովին մարդուս ունեցած ազատութիւնը ուրանայ, և ըսէ թէ ամէն բան հարկաւ կ՚ընենք։ Այսպիսիներուն համար աղէկ կ՚ըսէ Սկովտ. «Ոչ փաստիւք, այլ գանիւք յաղթահարել պարտ է զայնոսիկ՝ որ զազատութիւն մարդոյ ուրանան». ով որ մարդուս անձնիշ-

խանութիւնը ուրանայ՝ ծեծեցէք, կ'ըսէ, զինքը չարաչար. և թէ որ լայ, կանչէ, աղաչէ, և խօսք տայ մէյմըն ալ այնպիսի բան չըսելու, բայց իր մոլորութեան վրայ յամառեալ կենայ, դուք իրեն ըսէք թէ բան չկայ՝ համբերէ. վասն զի չենք կրնար ծեծելէն դադրիլ. որովհետև ամէն բան հարկաւ կ'ընենք. մարդս ազատ կամք չունի։

Հիմա տեսնենք թէ ուղղափառ եկեղեցւոյն վարդապետութիւնը որչափ գեղեցիկ և ինչպէս խելացի է։

Վարդապետութիւն ուղղափառ եկեղեցւոյ։

Հոս պարզ ու կարճ կերպով ուղղափառ եկեղեցւոյն շնորհաց և ազատ կամքի վրայ ըրած վարդապետութիւնը քանի մը խօսքով կ'ամփոփեմ, որ հաւատոյ մասունք են, և ամէն ուղղափառք իբրև ամենաստոյգ կ'ընդունին։ Իսկ ան խնդիրները՝ որոնց վրայ ուղղափառ աստուածաբանները բանաւոր

պատճառներով կը վերջին՝ զանց կ՚ընեմ։ Ուստի ասոնք են Հռոմայ եկեղեցւոյն դաւանած ու սորվեցուցած անհակառակելի ու ճշմարիտ վարդապետութիւնները։

Ա. Ադամայ սկզբնական մեղքովը մարդս կորսնցուց իր գերբնական ձիրքերը, որ նախ՝ շնորհքն ու սէրը, որոնցմով Աստուծոյ առջև արդար ու սիրելի էր. երկրորդ՝ սկզբնական արդարութիւնը, որով զգայարանքը բոլորովին հնազանդ էր մտքին. երրորդ՝ մարմնոյն անապականութիւնը, որով անեղծ ու անմահ էր։ Բայց չկորսնցուց իր ազատ կամքը կամ անձնիշխանութիւնը, որ ըրած մեղքին պատճառաւը տկարացաւ միայն, և ետքը Քրիստոսի արդիւնքովը զօրացաւ. անանկ որ հիմա ամէն մարդ կրնայ ազատութեամբ գործել՝ թէ բարին և թէ չարը, և ընտրել յաւիտենական մահը կամ կեանքը։

Բ. Երկու տեսակ է շնորհքը՝ ներգործական և ունակական։ Ներգործական

կ՚ըսուի՝ երբոր Աստուած իր լուսովը ու խօսքերովը և զանազան ազդեցութիւններովը կը յորդորէ զմարդ որ փափաքի բարի գործք ընելու․ ուստի ամէն կերպով ալ կ՚օգնէ որ կարենայ բարի գործքեր ընել․ անոր համար մարդուս ըրած առաքինական գործքերը թէ Աստուծոյ բարիքը պէտք է սեպենք՝ որ մեզի կ՚օգնէ, և թէ մարդուս արդիւնքը՝ որ իր ազատ կամքովը Աստուծոյ շնորհքին մտիկ կ՚ընէ ։ Ընդ հակառակն երբոր մարդս մեղք մը ընէ, իր չարութեամբը կ՚ընէ, և կ՚անարգէ Աստուծոյ շնորհքը՝ որ միշտ պատրաստ է օգնելու և լոյս տալու, միայն թէ մէկը ջանք ցուցընէ՝ նոյն շնորհքը արդիւնաւոր ընելու ։

Գ․ Ունակական կամ արդարացուցիչ շնորհքը ան է՝ որով Աստուած զմեղաւորը կ՚արդարացընէ․ աս շնորհքը ճշմարիտ ու հաստատուն կնիք մըն է․ և թէ որ մարդուս հոգւոյն հետ միանայ՝ զանիկայ արդար ու Աստուծոյ սիրելի կ՚ընէ ։ Ուստի մեղաւոր

մը չկրնար արդարանալ՝ ինչուան որ աս որբարար շնորհքը չունենայ. և աս ունակական ու տևական շնորհքով բոլորովին կը ջնջուի որ և իցէ մեղք և յաւիտենական պատիժ. որովհետև աս շնորհքով մարդս չէ թէ դրսուանց, հապա իրօք ու ներսէն կ՚ըլլայ արդար ու հաճոյ Աստուծոյ։

Դ. Աժէն շնորհք Աստուծոյ մասնաւոր տուրքն է որ մարդս կ՚ընդունի Քրիստոսի արդեամբքը, որ մարմնացաւ ու մեռաւ ամէն մարդու համար. և Աստուած կ՚ուզէ որ ամէնքը փրկուին. ուստի իր կողմանէ փրկութեան համար հարկաւոր եղած օգնութիւնները ամենուն կ՚ընէ։ Քրիստոս լիապէս հատուցումն ըրաւ ամենուն մեղացը համար, և զամէնքը արժանի ըրաւ աս շնորհաց և յաւիտենական փառաց։

Ե. Աստուած դրական կամօք ամէն բարի բան կ՚ուզէ, և ան բաներն ալ որ բարւոյն ամենևին հակառակ չեն։ Աստուած մեղք ամենևին չուզեր, բայց

իր անհասանելի խորհրդովը թոյլ կու տայ որ մեղք գործուին։

Զ. Աստուծոյ պատուիրանաց պահպանութիւնը ոչ միայն անկարելի չէ, հապա նաև Աստուծոյ օգնութեամբը դիւրին է։

Է. Նախասահմանութեան վրայ խօսելու համար այլևայլ ուղղափառ աստուածաբաններու վճիռները մէջ կը բերեմ, որպէս զի լաւ կերպով կարենամ աս խնդիրը բացատրել։ Միայն աս կը ծանուցանեմ թէ ուրիշ ուղղափառ աստուածաբաններ՝ ուրիշ կերպ բացատրութիւններ ու վճիռներ տըւած են աս խնդրոյս վրայ՝ որոնց կրնայ մէկը առանց վախնալու հետևիլ։

Ճշմարիտ է թէ Աստուած 'ի յաւիտենից ճանչցած է զանոնք՝ որ բարի գործքերով և աստուածային շնորհքին մէջ յարատևելով պիտի փրկուին, և զանոնք որ չար գործքեր ընելով և մահուչափ մեղաց մէջ մեռնելով իրենց գէշութեանը համար պիտի դատապարտուին. բայց սով մեր ազատ

կամքը ամենևին չարգելուիր. վասն զի Աստուած իր կանխագիտութեամբը 'ի յաւիտենից կը տեսնէ մեր ժամանակաւոր կենացը մէջ ազատ կամքով ընելու գործքերնիս. ուստի ուղղափառաց մէջ շատ հռչակաւոր է աս խօսքը. «Ոչ բանս 'ի հարկէ պիտի ըլլայ՝ չէ թէ անոր համար որ Աստուած գիտէ ըլլալիքը, հապա որովհետև պիտի ըլլայ ան բանը՝ անոր համար Աստուած 'ի հարկէ գիտէ ըլլալիքը»։

Այսպէս ահա Աստուած մարդուս նախասահմանութեան կամ անարգութեան վճիռը (գէթ մեղաւորաց անարգութեան վրայ ըրած վճիռը) յետ նախատես ըլլալու մեղաւորաց անարժանութեանը, և Աստուծոյ անոնց փրկութեանը համար տուած շնորհքները արհամարհելնուն՝ վճռած է։

Ը. Շատ աղէկ կը լուծեն ուղղափառները ան երկսայրաբանութիւնը որ նորաղանդները՝ ուզելով մարդուս ազատութիւնը ուրանալ՝ իբրև զօրաւոր ձեռնարկութիւն մը կ'ընեն, թ̃ «Կամ

նախասահմանեալ եմ և կամ անարգեալ. թէ որ նախասահմանեալ եմ, 'ի հարկէ կը փրկուիմ. իսկ թէ որ անարգեալ եմ, պէտք է որ դատապարտուիմ»: Նորալանգները աս ձեռնարկութեամբ չարաչար պաշարուած (որ իրենց աստուածաբանութեանը մէջ անլուծանելի խնդիր մըն է) կը պնդեն թէ ամէն մարդ պէտք է ուզածն ընէ. վասն զի 'ի յաւիտենից որոշուած է ամենուն ինչ ըլլալիքը, և մարդուս ազատութիւնը ամենևին իրեն փրկութեանը կամ դատապարտութեանը պատճառ չկրնար ըլլալ. Աս ինչ անօրէն ու սատանայական ձեռնարկութիւն և հետևանք է: Տես հիմա թէ ուղղափառները որ մարդուս ազատութիւնը ամենայն կերպով կը պաշտպանեն՝ ինչպէս կը լուծեն աս երկայրաքանութիւնը. «Թէ որ նախասահմանեալ եմ" անշուշտ փրկութեան կը հասնիմ, ըս թէ որ Աստուած որոշեր է որ զիս իր փառացը հասցընէ, թէ որ ես իրեն շնորհքը 'ի գործ դնեմ

ու բարի գործքեր ընեմ (որ աս ընելը իմ ազատութենէս կախուած է), 'ի հարկէ կը փրկուիմ. իսկ թէ որ անարգեալ եմ, անտարակոյս պիտի դատապարտուիմ, ﬔ թէ որ Աստուած որոշեր է որ զիս դժոխք խրկէ իմ ան մեղքերուս համար՝ որոնք. ընելը կամ չընելը իմ ձեռքս է, անտարակոյս կը դատապարտուիմ»։ Աս է պարզ ճշմարտութիւնը, և աս կերպով՝ շատ աղէկ կը լուծուի ան երկսայրաբանութիւնը. և ամենևին մէկու մը անհոգութեան կամ յուսահատութեան պատճառ չը կրնար ըլլալ։

Թ. Օրինակով մը աւելի պարզենք աս երկսայրաբանութեան լուծմունքը. թէ որ դու ծանր հիւանդութեան մը մէջ իյնաս, բժիշկ կը կանչե՞ս թէ չէ. դեղ կ'առնե՞ս թէ չէ, զանազան կերակուրներէ կը զգուշանա՞ս թէ չէ։ Թէ որ չէ ըսես, ամէն խելացի մարդ զքեզ կը դատապարտէ, և ինչուան անձնասպանի տեղ կը դնէ՝ թէ որ բռնուած հիւանդութիւնովդ մեռնիս։ Իսկ թէ

որ ըսես , ամէն ըսածներդ կ՚ընեմ, քու ըրած երկսայրաբանութեամբդ կը բռնուիս , որովհետեւ ըրած հոգդ փուճ է . վասն զի Աստուած կամ կ՚ուզէ որ ըռընտնաս , կամ կ՚ուզէ որ մեռնիս . և աս բանս Աստուած 'ի յաւիտենից որոշած է ։ Թէ որ Աստուած կ՚ուզէ որ ըռընտնաս , ինչո՞ւ զգուշութիւններ կ՚ընես . կամքդ ինչ որ կ՚ուզէ ան ըրէ , 'ի հարկէ կ՚ըռընտնաս . իսկ թէ որ Աստուած կ՚ուզէ որ մեռնիս , նոյնպէս սրտիդ՛ ուզածն ըրէ , 'ի հարկէ պիտի մեռնիս . վասն զի քու մահուանդ կամ կենացդ վճիռը 'ի յաւիտենից կտրուած է , և չկրնար փոխուիլ ։ Ով որ ասանկ կը մտածէ , Աստուծոյ յաւիտենականութիւնը՝ ամենակարողութիւնն ու իրեն կամաց ու վճռոյ անփոփոխ ըլլալը միայն կ՚ըմբռնէ , և չհասկընար ան անհուն իմաստութիւնը որ Աստուծոյ ամէն գործոցը մէջ կը փայլի . չըհասկընար թէ Աստուած իր ծայրագոյն իմաստութեամբը նախագէտ է նաև ան ամէն բաներուն որ մարդս իր

ազատութեամբը կամ պիտի ընէ (թէպէտ և կրնար չընել), կամ պիտի չընէ (թէպէտ և կրնար ընել)։ Աստուծոյ նախագիտութեամբը մարդուս ազատ կամքը ոչ կը վերնայ և ոչ կը պակսի․ վասն զի ինչպէս որ ըսինք՝ չէ թէ անոր համար հարկաւ պիտի ըլլայ աս կամ ան բանը՝ վասն զի Աստուած գիտէ, հապա որովհետև պիտի ըլլայ՝ Աստուած 'ի հարկէ գիտէ։ Աս մեկնութեամբ մարդուս սիրտը կը խաղաղի, և անով արդարը իր վրայ չվստահիր, մեղաւորն ալ չյուսահատիր․ հապա ամէնքնիս ալ յուսոյ ու երկիւղի մէջ ապրելով՝ միշտ մեր ջանքը ան կ'ըլլայ որ նախասահմանեալ ըլլանք, և կատարենք առաքելոյն խրատը․ «Վասն որոյ, եղբարք, առաւել փութասջիք, զի բարեացն գործովք զձեր կոչումն և զընտրութիւնն պահիցէք (Պետ. Բ)։ Վերջապէս ինչպէս Աստուծոյ վճիռներուն անփոփոխ ըլլալը չարգիլեր որ մենք մեր արտաքին գործքերուն մէջ ջանք չընենք, հապա ա-

գատ կը թողու որ ինչպէս դիտենք՝ այնպէս ընենք, նոյնպէս Աստուծոյ անփոփոխ վճիռները մեզի չեն արգիլեր ամէն ջանք ընելու մեր հոգւոյն երջանկութեանը հասնելու համար։ Աստի թէ որ բարի գործքեր ընենք, կը փրկուինք. իսկ թէ որ գէշ վարք անցընենք, կը դատապարտուինք. և Աստուած ՚ի յաւիտենից կանխատես եղած է մեր փրկութեանը կամ դատապարտութեանը՝ տեսնելով որ մենք մեր ժամանակաւոր կենացը մէջ իրեն աստուածային օգնութիւնները և շնորհքները պիտի ընդունինք, կամ թէ պիտի մերժենք։ Ասոր համար՝ է որ ուղղափառաց մէջ տգէտ գեղացին ալ կը հասկընայ թէ ինչպէս որ անօթի մարդը թէ որ ուտէ՝ կ՚ապրի, թէ որ չուտէ՝ քիչ ատենէն կը մեռնի. ուստի կ՚ուտէ որպէս զի ապրի, թէպէտ և ազատութիւն ունի ուտելու կամ չուտելու. նոյնպէս ալ ինքը կ՚ըսէ. թէ որ բարի գործք ընեմ՝ կը փրկուիմ. թէ որ չար, կը դատապարտուիմ. ուս֊

տի բարի գործքեր կ՚ընէ , որպէս զի փրկուի , Թէպէտ և ազատ է բարին կամ չարը գործելու ։

Ի՞նչ պատասխան կրնան տալ նոր-աղանդներուն քաջ աստուածաբանները աս Ձեռնարկութեան ։ Թէ որ իրենց ըսածին նայելով մարդս ազատութիւն չունի . Թէ որ իրենց ըսածին նայելով առանց մէկուն արդեանցը կամ անարժանութեանը նայելու , Աստուած՝ պարզ իրեն ուզելովը զոմանս նախասահմաներ է , զոմանս դատապարտեր է, ուրեմն աս յաւիտենական ու անփոփոխելի վճռոյն մէջ այսչափ բանաւոր արարածներէն որո՞նք կ՚ուզէ եղեր որ փրկուին և որո՞նք դատապարտուին ։ Աս անդրադարձութեամբ բաւական կը համոզուի նաև չափաւոր դատմունք ունեցող նորաղանդ մը որ Հռոմայ եկեղեցւոյն հաւատայ. որով կրնայ փըրկուիլ՝ Թէ որ ուզէ բարի գործքեր ընել , և չմերժել Աստուծոյ օգնութիւնն ու շնորհքը ։ « Ապա Թէ ոք 'ի ձէնջ իցէ նուազեալ յիմաստութենէ , խըն-

դրեսցէ յԱստուծոյ՝ որ տայ ամենայնի առատապէս և ոչ նախատէ, և տացի նմա» (Յակ. Ա)։

Ահա, սիրելիք, հռոմէական սուրբ եկեղեցւոյ աս խնդրոյս վրայ ըրած վարդապետութեան համառօտութիւնը։ Աս վարդապետութիւնը թէ խելքի, թէ փորձի և թէ Աստուծոյ ստորոգելեացը այնչափ համաձայն է, որ հասարակ մարդ մընալ, թող թէ խելացի քրիստոնեայ մը, յայտնի կը տեսնէ որ աս վարդապետութիւնը յայտնողը Աստուած է։ Ուշադրութեամբ և առանց կրից մտածեցէք, սիրելիք, աս բանիս վրայ. և աս քիչ խօսքովս ալ ձեր սխալը կը ճանչնաք, և կրնաք սխալմունքէն ետ կենալ, և ճշմարտութեան հետևիլ։



## ԼԲ

## ՔՐԻՍՏՈՍԻ ՃՇՄԱՐԻՏ ԵԿԵՂԵՑԻՈՅՆ ՎՐԱՅ

*Մեծ վէճ կայ թէ արդեօք ո՞ւր է և կամ ո՞րն է Քրիստոսի ճշմարիտ եկեղեցին. և քրիստոնէից այլ և այլ կրօնքներուն մէջ եղած ամենէն մեծ խնդիրը աս է. վասն զի ամէնքը կը ջանան իրենք զիրենք անուանել Քրիստոսի ճշմարիտ եկեղեցին, ու կ՚ըսեն թէ Աստուած իրենց միայն տուեր է ան շնորհքները որ մարդուս փրկութեանը համար հարկաւոր են. և աս բանս սուրբ գրոց վկայութիւններով ալ կը ջանան հաստատել։*

*Ուղղափառաց և նորաղանդից աս մեծ վէճը որոշելու համար պէտք է այնպիսի դատաւոր մը ընտրել որ երկու կողմն ալ քննէ։ Ասանկ արդար դատաւոր սուրբ գրքէն 'ի զատ ուրիշ մը չենք գտներ. վասն զի ամէն քրիստոնեայք մեծ պատուով կ՚ընդունին անիկայ, ու որ և իցէ մկրտեալ մարդ*

պէտք է իր միտքը անոր հնազանդեցընէ։

Ասկէ առաջ սուրբ գրոց պայծառ վկայութիւններովը ցըցուցինք թէ Քրիստոսի Ճշմարիտ եկեղեցին պէտք է ըլլայ մի, սուրբ, կաթուղիկէ և առաքելական. ուստի ան է միայն Ճշմարիտ եկեղեցին՝ որ աս նշաններս ունի, և ան է սուտը՝ որ աս նշանները չունի։ Կրնայ ըսել հակառակորդը թէ ինչուան հիմա ըսածներուդ մէջ մեր գուրցածէն տարբեր բան մը չկար. ուստի առաջ տար խօսքդ։ — Հաս աղէկ. միայն թէ աղէկ ուշ դրէք, սիրելիք, ըսածներուս։

Վերի ըսած նշաններս հռոմէական եկեղեցւոյն վրայ կան. իսկ անկէ դուրս եղած եկեղեցիներուն մէջը չկան. ուրեմն միայն հռոմէական եկեղեցին է Քրիստոսի Ճշմարիտ եկեղեցին, և բոլոր ուրիշները սուտ են։ Ի՞նչ կ՚ըսէք աս առաջարկութեանս. կարծեմ այնպէս մը կ՚երևնայ ձեզի թէ աս գուրցածս հայհոյութիւն է, և աս առաջ-

արկութեան փոքրագոյն մասը պիտի մերժէք. բայց մի՛ խռովիք. և թէ որ իրաւունք չունիմ, ըսածներուս ալ մը-տիկ մ'ընէք ։

Յայտնի է թէ աս ըսած առաջարկութիւնս երկու մաս ունի. առջինին մէջ կը հաստատուի թէ հռոմէական եկեղեցին ունի անանկ նշաններ որ անոնցմով Քրիստոսի ճշմարիտ եկեղեցին ըլլալը որոշ կը տեսնուի. երկրորդին մէջ կը ցուցուի թէ աս ճշմարտութեան նշանները Հռովմայ եկեղեցիէն զատ մէկ նորաղանդ եկեղեցի մը չունի ։ Աս բանս ճշմարտելու համար ինչուան հիմա շատ տեղ խօսեցանք, և անոնք բաւական կընային սեպուիլ. բայց ձեր օգուտը նայելով, ու աւելի պարզութեան համար, յետագայ երկու գլուխներուն մէջ ալ կ'ամփոփեմ աս բանիս ապացոյցները ։

## ԼԹ

### Հռոմէական եկեղեցւոյն վրայ կան ճշմարիտ եկեղեցւոյ նշանները։

Ա. Հռոմէական եկեղեցին մի է. վասն զի իրեն հաւատոյ էական մասերուն մէջ միակերպութիւն կը պահէ։ Հռոմէական եկեղեցին մի է. վասն զի իրեն երևելի առաջնորդը մէկ հատ է, որ է Հռովմայ քահանայապետը։ Մէկ է նաև անոր համար՝ որ իր հաւատացեալները մէկ սիրտ մէկ հոգի են. ամէն ատեն ու ամէն տեղ մի և նոյն հաւատքը դաւաներ են, ամէնը մասնակից ըլլալով նոյն սուրբ խորհուրդներուն, և ամէնն ալ նոյնպէս հաւատալով ան ամէն վարդապետութիւններուն՝ որոնք որ եղած են մարդուս ազատութեանը, սրբոց բարեխօսութեանը, բարի գործոց հարկաւորութեանը, խորհրդոց թուոյն և ուրիշ շատ ճշմարտութիւններու վրայ, որ ժողովքներն ու սուրբ հայրապետները որոշած են իբրև քրիստոնէական

հաւատքին հարկաւոր մասունքը. աս միակերպութիւնը պահելու համար միշտ արժուն եղած է Հռովմայ քահանայապետը, ամէն տեղ քարոզիչներ ու երևելի առաջնորդներ խաւրելով, որպէս զի տգիտութենէ խաբուածները ուղղեն, անհնազանդները պատժեն ու յամառեալները եկեղեցիէն բաժնեն ։

Բ. Ս--րբ է հռոմէական եկեղեցին իրեն սորվեցուցած վարդապետութեամբը, ինչպէս որ ըսինք ։ Ս--րբ է Հռոմայ եկեղեցին. վասն զի սուրբ ըլլալու ճամբան կը սորվեցընէ, յորդորելով որ աւետարանական խրատներուն հետևինք, ինչպէս են կամաւոր աղքատութիւն, ողջախոհութիւն ու հնազանդութիւն. կը պատուիրէ որ ողորմած ըլլանք, թեթև ու ներելի մեղքերէն ալ զգուշանանք, խոնարհ ու համբերող ըլլանք, և խաչ քաշենք Քրիստոսի նմանող ըլլալու համար. կը պատուիրէ որ մեր սիրտն ալ սուրբ պահենք, թէպէտ և ներքինը Աս-

սուած միայն գիտէ ։ Ս––րէ է հռո-մէական եկեղեցին նաև իր հաւատա-ցեալներուն անարատ վարքովը, ինչպէս են այնչափ խոստովանողները, մար-տիրոսները, կուսանքները, կրօնաւոր-ները ու այնչափ անթիւ աշխարհա-կան սուրբերը ամէն վիճակէ ու ամէն հասակէ, որոնք միշտ կը ջանան որ ճշմարիտ առաքինութիւնը վաստըկին, և վերջի կատարելութեան հասնին ։ Կրնայ մէկն ըսել թէ հռոմէական հա-ւատացեալներուն մէջ ալ կրնան գըտ-նուիլ ախտաւոր ու ամէն տեսակ մեղ-քով լեցուն մարդիկ ։ — Ես չեմ ու-րանար աս-քանս, վասն զի կրնան գըտ-նուիլ ու կան ալ անանկ մարդիկ․ բայց մէկ քանի անկարգ մարդկանց պատճառաւ եկեղեցւոյ սրբութիւնը և իրեն այնչափ առաքինի ու հնազանդ որդւոցը արդիւնքը չկորսուիր ։ Ըս աշխարհիս մէջ չկայ անանկ հասարա-կութիւն մը որ իր բոլոր անդամներն ալ անարատ ըլլան ամէն տեսակ մեղ-քերէ ։ Տասուերկու առաքեալներուն

մէջը մէկ Յուդայ մը գտնուեցաւ, ու ցորենին մէջ որոմն բուսաւ ու աճեցաւ, ինչպէս կ'ըսէ աւետարանական առակը. ուստի զարմանք չէ որ ուղղափառ եկեղեցւոյն մէջ ալ անպիտան մարդիկ գտնուին:

Վերջապէս սուրբ է հռոմէական եկեղեցին, և իր սրբութիւնը կը հաստատեն այնչափ անթիւ հրաշքները: Մեծ յանդգնութիւն է պնդելը թէ Քրիստոսի ծննդենէն ինչուան հիմա պատմուած հրաշքներէն մէկն ալ իրաւ չէ: Մեծ անխելքութիւն է դարձեալ ըսելը թէ ստախօս ու խաբեբայ մարդիկ են այնչափ երևելի մատենագիրները, որ իրենց իմաստութեանն ու սրբութեանը համար բոլոր աշխարհիս առջևը մեծ անուն ունեցեր են, և ան մարդիկը գրեր են Աստուծոյ հրաշքները որ գործեր է իր հաւատարիմ ծառաներուն ձեռքովը. և չկրրնար ըլլալ որ ասոնք գրած ըլլան միայն անոր համար որ պարզամիտ ժողովուրդը խաբեն: Ինչուան հիմա Լութե-

ըլլին մէջ կը տեսնուի սրբոյն Գենարիոսի արեան հրաշքը, Ճենովայի մէջ սրբոյն Յովհաննու Մկրտչի մարմնոյն հրաշքները, և ուրիշ այնչափ անթիւ սուրբերու հրաշքներ որ կ'ըլլան հռոմէական եկեղեցւոյն մէջ սրբոց բարեխօսութեամբը,՝ ուստի չկրնար ուրանալ մէկը աս ճշմարտութիւնը. և աս նշաններս միայն բաւական են հռոմէական եկեղեցւոյն Քրիստոսի ճշմարիտ եկեղեցին ըլլալը ցուցընելու: Քանի մը տարի առաջ սաստիկ ալեկոծութենէ Ճենովայի նաւահանգստին մէջի խարսխած նաւերը մեծ վտանգի մէջ ընկան: Մէկէն սուրբ Յովհաննէս Մկրտչին բարեխօսութեն ապաւինեցան, ու իրեն մասունքովը՝ ալէկոծած ծովը օրհնեցին, և կարծես թէ ծովը ալ պատկառելով սուրբէն՝ մէկէն 'ի մէկ հանդարտեցաւ: Ան աստիճան յայտնի երևցաւ աս հրաշքս որ նորաղանդ հօլանտացի նաւապետ մըն ալ խոստովանեցաւ ու վկայ եղաւ հրաշքին ճըշմարտութեանը. և որովհետև ինքն ալ

մեծ վտանգէ ազատեր էր՝ շնորհակալութեան համար շատ ատակ պարգև ըրաւ սուրբին եկեղեցւոյն, ու նաւու ձևով կանթեղ մը շինել տուաւ որ սուրբին մասանցը առջև ինչուան հիմա կը վառի։ Հրաշքներու ճշմարտութեանը վրայ շատ բան կրնայի խօսիլ, ու ձեզի ալ հաւատացընել, բայց գրքիս կարճութեանը պատճառաւ կը լռեմ։ Գիտեմ որ ձեր քահանաները մեր հրաշքներուն համար կ'ըսեն թէ շինծու ու խաբեբայ բաներ են։ Բայց ինչպէս կրնայ ըլլալ որ ուղղափառ քահանաները այնչափ անթիւ հրաշքներ կարենան ձևացընել, ու նորադանդներուն քահանաները և ոչ մէկ հատ մը կարենան շինել։

Գ. Կաթուղիկէ ալ ընդհանրական է հռոմէական եկեղեցին, վասն զի ամէն ատեն ու ամէն տեղ ընդունելի եղած է։ Առաքեալներուն ժամանակէն 'ի վեր ինչուան հիմա հռոմէական հաւատքը պահուած է աշխարհիս մէջ, և ամենևին փոփոխութիւն

Լուտեր ու Կալվին իրենց գրուածքներուն մէջ երբեմն տղու պէս՝ երբեմն ալ խենդի պէս կը խօսին։ վասն զի իրենք իրենց խօսքը մէյմը կը հաստատեն, մէյմը կը մերժեն. երբեմն առաջարկութիւն մը կ'ընդունին, ու քիչ մը ատենէն կը հերքեն. երբեմն ալ կը միաբանին նոյն վէճին վրայ, ետքը կ'ուրանան իրենց միաբանութիւնը։ Աս երկու երկրին հերետիկոսներէն հարիւրաւոր նորաղանդ հերետիկոսութիւններ ելան։ Ասոնցմէ ամէն մէկը իր առանձին վարդապետութիւնները ունի, և կը ջանայ զանոնք ամենուն սորվեցընել, պարծենալով թէ Քրիստոսի ճշմարիտ հաւատքին հետևողը ինքն է, և իրեն ըրած նախանձայուզութիւնը հոգւով սրբով ըրած կը սեպէ. և ամէնքը կ'ուզեն որ իրենց կրօնքը ճշմարիտ ըլլայ. ուստի ամէն մէկը զատ զատ կրօններ կը դաւանին. տներ կան որ մէջի տնուորներուն ամէն մէկը այլ և այլ կրօնք ունին, և տան մը մէջ այնչափ կրօնք

կայ՝ որչափ որ ան տանը մէջ մարդ կայ։ Ես բանիս ամէնեւին հոգ չեմ ըներ Նորադանդիէն գլխաւորները, և կը թողում որ ամէն մարդ ուզած կրօնքը դաւանի. միայն կը նայիմ որ իրենք իրենց մէջ միաբան ըլլան հռոմէական եկեղեցւոյն դէմ կռուելու համար։

Բ. Նորադանդից եկեղեցիները [illegible]րէ չեն։ Ես նիւթիս վրայ խիստ շատ բան կրնայի խօսիլ. բայց որովհետեւ իմ վախճանս ան չէ որ շատ բան խօսելով ու ձեր գէշ սովորութիւնները մէջ քաշելով զձեզ ամըչցընեմ, հապա ձեր օգուտը կ'ուզեմ, ուստի միայն հարկաւոր բաները խօսելով համառօտ մը անցնիմ։ Շատ անգամ նոյն իսկ ձեր համախոհները խոստովանեցան թէ Նորադանդից մէջ եղած անհաստատութիւններն ու խռովութիւնները վերջացընելու համար ուրիշ ճար չկայ, բայց եթէ զանոնք միաբանել ու հաշտեցընել հռոմէական եկեղեցւոյն հետ, և թող տալ որ ուղղափառ կրօնքը համարձակ պաշտուի։

Իսկ թէ ձեր վարդապետութիւնը սուրբ է թէ չէ, ձեզի կը թողում որոշել. բայց կը խնդրեմ որ աս քանիս վճիռը տալէն առաջ կարդաք ինչ որ առաջ ձեր աստուածաբանութիւններուն վրայ համառօտ տեղեկութիւն մը տուի։ Աշխարհիս մէջ կրօնք մը չկայ որ իր վարդապետութիւնը հաստատելու համար հրաշքի կարօտութիւն չունենայ, ուրեմն ևս առաւել աս նորաղանդներուն կրօնքը, որ բոլորովին խաբէութիւն ու սուրբ գրոց հակառակ է։ Աս բանս գիտնալով Լուտեր ու Կալվին, ուզեցին հռոմէական կրօնը ջնջելէն ետքը՝ իրենց վարդապետութիւնն ալ հրաշքով հաստատել. ասոր համար իրենք զիրենք անուանեցին Աստուծմէ առաքեալ. բայց աւելի խաղք եղան ու ժողովուրդը բարկացուցին։

Անգամ մը Լուտեր ուզեց իր աղախիններէն մէկուն սատանան հանել, բայց սատանան փոխանակ աղախինէն ելլելու՝ Լուտերին վրայ յարձըկեցաւ,

ու գետնէ գետին զարնելով քիչ մնաց որ պիտի խեղդէր զինքը․ աս բանս Հաւատարիմ ու ականատես մարդիկ կը պատմեն։

Նոյնպէս Կալվին ալ անգամ մը Հրաշք ընել ուզեց որ բոլոր երեւելի մատենագիրները կը պատմեն․ բայց ինքն ալ նոյնպէս խաղք եղաւ։ Ուզելով որ իր ըսածները Հաստատէ, աղքատ մարդու մը շատ ստակ խոստացաւ որ դագաղի մը մէջ մեռել ձեւացած պառկի, ու երբոր ինքը Հրաման տայ՝ դագաղէն դուրս ելլէ։ Խեղճ մարդը իրաւցընէ մեռած գտնուեցաւ․ և անոր կինը որ անոնց խորհուրդը գիտնալով ծածուկ պահեր էր, տեսնելով թէ էրիկը իրաւցընէ մեռեր է՝ բոլոր ժողովրդեան առջեւ Կալվինին խաբէութիւնը դուրս Հանեց ու բարձր ձայնով սկսաւ կանչել․ մարդասպան ու խաբեբայ է Կալվին․ որով խաղք ու խայտառակ եղաւ ամենուն առջեւը։ Նոր-աղանդից բոլոր գրքերուն մէջ ասկէ փառաւոր Հրաշք մը չես կրնար

գտնել․ վասն զի Աստուած սուտ կրօնք մը հաստատելու համար հրաշք չըներ․ Միայն մէկ ճշմարիտ հրաշք՝ մը ըրած է Աստուած, ան ալ անոնց կրօնքին ստութիւնը յայտնելու համար․ ինչպէս կրնայ ըլլալ որ այսպիսի խաբէութեամբ հաստատուած կրօն մը (ինչպէս է նորաղանդներունը) սուրբ սեպուի։

Իրաւ է թէ նորաղանդներուն մէջ ալ կան անանկ մարդիկ որ կեանքերնին աղէկ կ՚անցընեն, ու բարոյական գերազանց առաքինութիւններ ունին․ ասոնց ուրիշ բան չպակսիր, բայց եթէ ճշմարիտ կրօնք ու սէր։ Ասոնց մէջ կը սեպեմ նաև զձեզ, և յուսամ որ ձեզի շատ շահաւոր պիտի ըլլայ աս գըրքոյկս․ վասն զի ով որ աղէկ կ՚ապրի՝ Աստուծոյ շնորհքին դէմ՝ չգնելով, փրկութեան ուղիղ ու մէկ հատիկ ճամբան կը գտնէ։ Ուստի ան խօսքերն որ ըսի թէ նորաղանդները անառակ վարք ունին՝ ձեզի ու ձեր նմաններուն համար չէին․ վասն զի շատը միայն մարդկային նկատման ու խոստմունքներու

համար ատ կրօնը կը դաւանին, չէ թէ ճշմարիտ Ճանչնալնուն համար. և ասիկայ անկէ յայտնի է որ այնպիսիները նորադանդ ապրիլ կ'ուզեն, բայց նորադանդ մեռնիլ չեն ուզեր։

Գ. Նորադանդ եկեղեցիները կաթողիկէ չեն, զի ամէն տեղ ու ամէն ատեն ընդհանրական չեն եղած։ 1517 տարին չափ ոչ լուտերական ոչ կալվինական և ոչ անոնցմէ ելած կրօններէն մէկը կար աշխարհիս վրայ։ Ամերիկայի, Ափրիկէի ու Ասիայի մէջ և ոչ թիզ մը երկիր ունին լուտերականները՝ իրենց կրօնքը դաւանելու. իսկ կալվինականաց ունեցածը ուղղափառ եկեղեցւոյ ունեցած երկիրներուն հետ բաղդատելով ոչինչ են. Միայն Եւրոպայի մէջ է որ նորադանդները քիչ մը երես ունին. բայց հոն ալ որչափ տէրութիւններ, որչափ գաւառներ ու որչափ քաղաքներ կան որ նորադանդները դուրս վռնտած են։ Աւստրի. մէկ նորադանդ եկեղեցւոյ մը կաթուղիկէ անունը չկրնար տրուիլ։ Աս բանին նոյն

իսկ Նորաղանդներուն գլխաւորներն ալ ճանչնալով, իրենց հաւատամքին․ մէջէն վերցուցին կաթողիկէ բառը, ու անոր տեղը դրին քրիստոնէական բառը, իրենց հետևողներուն ալ ապսպրեցին որ ասանկ ըսեն. «Հաւատամք՚ի սուրբ քրիստոնէական եկեղեցի»։

Դ. Առաքելական չեն Նորաղանդից եկեղեցիները. ըսել է թէ չեն դաւանիր ու չեն սորվեցըներ ան վարդապետութիւնը՝ որ դաւանեցան ու սորվեցուցին առաքեալները. իրաւ է որ թէ Լութեր և թէ Կալվին կը քարոզեն նաև առաքեալներուն սորվեցուցած մէկ քանի վարդապետութիւնները. բայց ան քիչն ալ լեցուն է սատանայական վարդապետութիւններով, ծուռ մեկնութիւններով, գարշելի բարոյականներով, առասպելներով ու բիւրաւոր սխալներով. մէկ խօսքով, ծուռն ու շիտակը մէկտեղ շաղուած վարդապետութիւններ են։

## ԽԱ

Ա՛ն է միայն Քրիստոսի Ճշմարիտ եկեղեցին՝ որուն վրայ կը տեսնուին աւետարանին մէջ եղած նշանները. և ահա կը տեսնենք որ հռոմէական ուղղափառ եկեղեցիէն զատ՝ նորաղանդից եկեղեցիներէն մէկն ալ չունի աս նշանները. ուրեմն անիկայ է միայն Ճշմարիտ եկեղեցին ու Քրիստոսի հարսը։ Ճշմարիտ եկեղեցիէն դուրս եղողը փրկութեան չհասնիր. ուրեմն ուղղափառ եկեղեցիէն դուրս եղողին փրկութիւն չկայ. ուստի ով որ կ՚ուզէ փրկութեան հասնիլ, պէտք է թողու բոլոր ուրիշ կրօնքներն ու հռոմէական ուղղափառ եկեղեցւոյն հնազանդ որդի ըլլայ։

## ԽԲ

Ինչուան հիմա, սիրելիք, ձեր սըրտին հետ կը պատերազմէի՝ գրեթէ զձեզ պաշարելով. բայց միշտ ջանացայ քաղցրութեամբ ու պատճառաբանութեամբ խօսիլ, և ոչ երբէք անար-

գանոց . որպէս զի ձեր սիրտը ճանչնաք, ու իմ օգնութիւնս հետեւելով ձեր նոր նոր աղանդները թողուք, և ուղղափառ կրօնքը ընդունիք : Յուսամ որ ձեզմէ շատերը, մանաւանդ անոնք որ աւելի դիւրահաւան են ու քիչ մըն ալ ճշմարտութիւնը ճանչցած են, ալ ուրիշ խօսքի չեն կարօտիր, և ինչուան հիմա զուրցածներս բաւական կ'ըլլան իրենց : Կան անշուշտ անանկներ ալ որ յամառ ըլլալով այսչափս բաւական չեն սեպեր . ու իրենք ալ առանց պատճառը գիտնալու՝ երկմտութեամբ կը կաղան, ու մէյմը կ'ընդունին՝ մէյմը կը մերժեն :

Գանք հիմա իբրև վերջին պատերազմական յարձակմունքով մէկ քանի համառօտ պատճառներ դնենք, որոնցմէ աղէկ կ'իմացուի ձեր կրօնքին սըտութիւնը, ու դիւրաւ կրնաք ուղղափառ կրօնը ընդունիլ : Այս հոս ինչպէս որ միտքս կուգայ՝ անանկ կը գրեմ, բայց դուք թէ որ մէկիկ մէկիկ աննուն վրայ մտածէք, ամէն մէկն ալ քիչ

շատ՝ ձեր միտքը կը լուսաւորեն. իսկ բոլորը մէկէն այնպէս զօրաւոր են որ եթէ խոհեմութեամբ վարուելու ըլլաք՝ Ճշմարտութիւնը կ'ըմբռնէք։ Բայց ո-րովհետև կ'ուզեմ համառօտ անցնիլ, հարկաւորէն աւելի բան չեմ ուզեր խօսիլ։ Իսկ թէ որ մէկը այսչափով ալ իրեն մտքին տարակոյսները լուծուած չսեպէ, ու իմ ըսածներս իրեն Ճըշ-մարիտ չերևնան, կրնայ ուրիշ շատ ե-րևելի մատենագիրներու գրուածքնե-րը կարդալ, որ աս նիւթերուս վրայ տեղն 'ի տեղը գրեր են։

## ԽԳ.

*Այլ և այլ պատճառներ ու առաջարկու-թիւններ, որոնցմով մարդ կը համոզուի թէ պէտք է կաթուղիկէ եկեղեցւոյ մէջ ապրիլ ու մեռնիլ։*

Ա. Ըն վարդապետութիւնն է Ճըշ-մարիտ վարդապետութիւն Քրիստոսի, որ առաջին եկեղեցին քարոզած է, ու քրիստոնէութեան առաջին դարերու

սուրբ Հարքը և վարդապետները սորվեցուցած են ։ Իսկ արդ կաթուղիկէ եկեղեցւոյ վարդապետութիւնը՝ առաջին եկեղեցւոյ քարոզածը, ու նոյն ժամանակի սուրբ Հարց սորվեցուցածն է, ուրեմն ուղղափառ եկեղեցւոյ վարդապետութիւնը՝ Քրիստոսի ճշմարիտ վարդապետութիւնն է ։

Բ. Սուտ է, ու ոչ երբէք կրնայ ճըշմարիտ ըլլալ ան վարդապետութիւնը՝ որն որ առաջին եկեղեցին դատապարտած է՝ հին հերետիկոսներուն բերնէն լսելով ։ Իսկ արդ հիմակուան նորաղանդներուն վարդապետութիւնը ը̅ մեծի մասին նոյն է ան վարդապետութեան հետ որ առաջին եկեղեցին՝ աջի հերետիկոսներէն լսելով դատապարտած է. ուրեմն նաև հիմակուան նորաղանդներուն վարդապետութիւնը ըստ մեծի մասին սխալ է. ուրեմն նորաղանդից կրօնին մէջ սխալներ կան, և մոլորական է ։ Օրինակի համար ան մոլորութիւններէն մէկ քանին հոս դընենք ։ Լուտեր ու Կալվին կը վարդա-

պետեն՝ թէ բարեգործութիւնը մարդուս փրկութեանը հարկաւոր չէ, և հաւատքը միայն բաւական է. և ահա նոյն բանը ըսին Եւնոմեան Հերետիկոսներն ալ որ դատապարտուած են 360ին։ Կ՚ըսեն թէ առաքելական աւանդութեանց պէտք չէ հաւատալ. նոյն բանն ըսին Արիոս, Նեստոր, Եւտիքէս և Դիոսկորոս, և անոր համար դատապարտուած են առաջին եկեղեցիէն։ Կ՚ըսեն թէ ապաշխարութեան խորհուրդը ու դրոշմը պէտք չէ ընդունիլ. նոյն բանն ըսաւ Նովատոս ալ։ Կ՚ըսեն թէ սրբոց մասունքներն ու պատկերները պէտք չէ պատուել. նոյն բանն ըսաւ նաև Վիգիլանտիոս, և պատկերամարտք, որոնք դատապարտուած են իբրև Հերետիկոս՝ իրենց ծուռ վարդապետութեանը համար։ Ուրեմն նաև Լութեր և Կալվին՝ որ վերոյիշեալ հերետիկոսներուն մոլորութիւններն ունին՝ իրենք ալ մոլորեալ են։

Դ. Նորաղանդից եկեղեցին թէ որ իր հիմնադիրներէն առաջ ալ աշ-

խարհիս վրայ էր (ինչպէս որ պէտք է ըլլար Քրիստոսի եկեղեցին, որպէս զի ըլլար հաստատուն և մշտնջենաւոր) կամ երևելի էր, կամ աներևոյթ։ Թէ որ երևելի էր, ինչպէս կրնայ ըլլալ որ 1500 տարիի չափ մէկ մը անիկայ տեսած չըլլայ, մէկը անոր վրայ բան մը գրած չըլլայ։ Իսկ թէ որ աներևոյթ էր, ուրեմն Քրիստոսի ճըշմարիտ եկեղեցին չէր, որ ոչ երբեք կրնայ ծածուկ մնալ՝ ինչպէս որ ցցուցի Ժ.Զ. գլխուն մէջ։ Ապա թէ ոչ, նոյն բանը կրնան ըսել իրենց եկեղեցւոյն համար նաև տաճկըները, կրկնակնունք հերետիկոսները և ուրիշ աղանդներ որ 500էն ետքը եղած են։

Դ. Որպէս զի իմաստութեամբ շարժինք, և ապահով ըլլանք այսպիսի մեծ բանի մէջ՝ որ է մեր յաւիտենական փրկութիւնը, ան կրօնը պէտք է ընդունիլ՝ որուն համար ամէնքը կը վըկայեն թէ ան կրօնին մէջ ամէն մարդ կրնայ փրկուիլ. և պէտք է թողուլ ան կրօնը՝ որուն համար շատ եկեղեցական

իմաստուն անձինք կը վկայեն՝ թէ ան կրօնին մէջ չկրնար ամէն մարդ փըրկուիլ։ Իսկ արդ Հռոմէական եկեղեցւոյ մէջ ամէն մարդու փրկուիլ կարենալուն ոչ միայն ուղղափառք չեն տարակուսիր, հապա Նորաղանդներէն ալ՝ շատ մարդիկ կը վկայեն։ Ընդ հակառակն, Նորաղանդից եկեղեցւոյն մէջ ամէն մարդ փրկութեան կրնայ հասնիլ ըսելով Նորաղանդները միայն կը վկայեն. իսկ Հռոմէականք բոլորովին դէմ կը դնեն զօրաւոր պատճառներով։ Ուրեմն այսպիսի մեծ գործողութեան մէջ՝ որուն ծայրը յաւիտենականութիւն է, խելքով շարժելու և ապահով ըլլալու համար՝ պէտք է Հռոմէական եկեղեցւոյն վարդապետութիւնն ընդունիլ, և անոր ներհակ եղած աղանդները թողուլ։

Ե. Ուղղափառ եկեղեցւոյ մէջի քըրիստոնեայք կամ կրնան փրկուիլ և կամ չեն կրնար։ Թէ որ չեն կրնար, ուրեմն ինչուան 1500, յ̃ ինչուան Լուտերի ու Կալվինի օրերը եղած բոլոր

քրիստոնեայք դատապարտուած են։ Դնենք թէ հասարակ քրիստոնեաները թողունք. պիտի ըսէինք թէ նաև սուրբ Բենեդիկտոս, սուրբն Բեռնարդոս, սուրբն Դոմինիկոս, սուրբ Անտոն Պատուացի, սուրբն Ֆրանչիսկոս Քսաւերեան, սրբուհի Թերեզա, սուրբն Կարոլոս Բորրոմէոս և ուրիշ անթիւ մեծամեծ սուրբեր ալ դատապարտուած են։ Իսկ թէ որ կրնան փրկուիլ, ուրեմն ինչու համար Լուտեր և Կալվին և իրենց հետևողները հռոմէական եկեղեցիէն բաժնուեցան՝ երբոր նոյն եկեղեցւոյ մէջ կրնային փրկուիլ, և երբոր աս եկեղեցին Ճշմարտապէս Քրիստոսի հաստատածն էր։

Զ. Սուրբ գիրքը (որ նորաղանդները կ՚ըսեն թէ մի միայն կանոն է հաւատոյ և գործոց) Լուտերին և Կալվինին ատենները չգրուեցան, հապա ասոնք հռոմէական եկեղեցիէն առին անիկայ։ Ուրեմն հարցընենք իրենց. հռոմէական եկեղեցին (ուսկից

Նորաղանդները սուրբ գիրքը առին) կամ Քրիստոսի Ճշմարիտ եկեղեցին էր ան ատենը և կամ չէր։ Թէ որ ըսելու ըլլայք թէ Քրիստոսի Ճշմարիտ եկեղեցին էր, ուրեմն՝ Նորաղանդները ապստամբ ու հերետիկոս են՝ որ թողուցին ու հեռացան Ճշմարիտ եկեղեցիէն։ Իսկ թէ որ Քրիստոսի հաստատածը չէր, ուրեմն ի՞նչպէս կրնան պարծիլ Նորաղանդները թէ սուրբ գրքին հարազատ օրինակը ունին՝ թէ որ անիկայ սուտ եկեղեցիէ մը առած են։ Ըս իրենց սուտ ըսած եկեղեցին շատ աւելի դիւրաւ կրնար այլայլել ու եղծանել սուրբ գիրքը, քան թէ իրեն հաւատոյ վարդապետութիւնները՝ որ բոլոր աշխարհք քարոզուած է, և թէ որ (Նորաղանդից ըսածին նայելով) հռոմէական եկեղեցին կրցաւ իր վարդապետութիւններուն մէջ ստութիւններ մտցընել, շատ աւելի դիւրութեամբ կրնար խարդախած ըլլալ սուրբ գիրքը։ Իրաւցընէ, կ'ըսեն հոս Նորաղանդները, հռոմէական եկեղե-

ցին խարդախեր էր սուրբ 'գիրքը, և մենք ելանք սրբագրեցինք ան խարդախած տեղերը, և առաքելոյ ատենը ինչպէս էր նէ՝ նոյն հարազատութեանը դարձուցինք: Շատ աղէկ. բայց թող ցուցընեն, կ'աղաչեմ, նորաղանդները, թէ ինչ կերպով ու ինչ օրինակի վրայ նայելով սրբագրեցին սուրբ գիրքը, որ կ'ըսեն թէ հռոմայեցիք խարդախեր են: Անկարելի է սրբագրել խարդախած օրինակ մը՝ ինչուան որ նախագաղափարին կամ ուրիշ անխարդախ օրինակի մը հետ չբաղդատուի: Ու.է որ ըսեն՝ թէ հին սուրբ հարց ըսածներուն ու հեղինակութեանը հետևելով սրբագրեր են, նորէն իրենց վերոյիշեալ առաջարկութիւնս կ'ընեմ, և նոյն բանը կ'ըսեմ սուրբ հարց գրքերուն համար ալ՝ ինչ որ ըսի սուրբ գրքին համար. զի թէ Լուտեր և Կալվին ինչպէս սուրբ գիրքը՝ ասանկ ալ սուրբ հարց գրուածքները ան ատեն արհամարհեցին՝ երբոր հռոմէական եկեղեցիէն ապստամբեցան: Ուրեմն

պէտք է ըսել՝ թէ Նորաղանդից եկեղե֊
ցին հաստատողները՝ կամ սուրբ գրքին
վաւեր օրինակը երկնքէն առին, կամ
ինչպէս ուրիշ գանձեր՝ ասանկ ալ ա֊
սիկայ գետնի տակէն գտան, որ առա֊
ջին եկեղեցւոյն սկիզբէն 'ի վեր ծած֊
կուած է եղեր. և կամ թէ հռոմէա֊
կան եկեղեցին նորոգելու համար, ու
անոր խարդախած սուրբ գիրքը սրբա֊
գրելու համար (որ գրպարտութիւն
է) ուրիշ կանոն կամ վաւեր օրինակ
չունէին, բայց եթէ իրենց կամքն ու
խելքին փչածը, որ եթէ ուղղափառ ե֊
կեղեցւոյ դատաստանին տակը ձգելու
ըլլանք՝ դիւրաւ դատաստանը կը կրտ֊
րուի։

Է. Թէ որ Նորաղանդ մը բարի
կեանք անցընէ, ամէն ախտերէ ու ան֊
պարկեշտ գործքերէ զզուշանայ, հա֊
մեստ, ողորմած, արդար ու առաքինի
ըլլայ, մէկէն իրեն աղանդակիցները
վրան կասկածի կ'երթան որ չըլլայ թէ
իրենցմէ բաժնուի և հռոմէականաց
հետ միանայ. մանաւանդ երբոր տես֊

նեն թէ անօնց հետ ընտանութեամբ կը խօսակցի: Ընդ հակառակն ամենեւին չեն կասկածիր վրան՝ թէ որ անկարգ ու անպարկեշտ կեանք անցընէ: Մ՛իր մէջ ասոր հակառակն է. եթէ տեսնենք թէ հռոմէական մը զգաստութեամբ ու առաքինութեամբ կանցընէ կեանքը, ամենեւին չենք վախեր թէ հաւատքին մէջ անհաստատ ըլլայ, թէպէտ եւ նորաղանդից հետ շատ ընտանութեամբ վարուի. հապա ան ատեն կը վախենք՝ երբոր տեսնենք թէ նոյն անձը անկարգութեամբ կ՚անցընէ իր կեանքը: Ուրեմն թէ որ հռոմէական եկեղեցին Քրիստոսի ճշմարիտ եկեղեցին ըլլար, կը հետեւէր թէ բարի վարքը մէկ հատիկ հնարք է ընդունելու ան եկեղեցին որ Քրիստոսի ճշմարիտ եկեղեցին չէ: Իսկ թէ որ նորաղանդից եկեղեցին Քրիստոսի ճշմարիտ եկեղեցին ըլլար՝ ասկէ առաջ կուգար թէ գէշ վարք ունենալը մէկ հատիկ ճամբայ է Քրիստոսի ճշմարիտ եկեղեցին ընդունելու: Ասկէ կը հետեւէր թէ առաքինութիւն

ընելէն ետև պատիժ պիտի քաշենք . իսկ անօրէնութիւն ընելէն ետև վարձք պիտի առնունք ։ Ասկէ անձոռնի և ամօթալի հետևանք կրնա՞յ ըլլալ ։

Ը. Քննեցէք մէյմը ան հռոմէականաց վարքը՝ որ կ'երթան նորադանդ կ'ըլլան . անոնք ամէնն ալ անկարգ ու ախտամոլ մարդիկ են , և նորադանդից կողմը կ'անցնին՝ որպէս զի արձակ համարձակ իրենց կամքին ու զածը կատարեն ։ Ընդհակառակն , քննեցէք հռոմէական դարձած նորադանդներուն վարքը՝ որ ընդհանրապէս շատ առաքինի անձինք են , և ուղղափառ կ'ըլլան՝ որպէս զի սրբութեամբ անցընեն կեանքերնին , ու ապաշխարեն իրենց մեղացը վրայ . և շատ անգամ՝ ինչպէս որ ան նորադանդ դարձած հռոմէականները ամենէն աւելի անկարգ վարք կ'ունենան , անանկ ալ ան նորադանդները որ ուղղափառ կ'ըլլան , քան զամէնքը աւելի կը փայլին բարեպաշտութեամբ ։ Ուրեմն ուղղափառները գրգռողը որ նորադանդից կողմը

յանցնելն՝ մոլութիւնն է . իսկ նորադան-դները շարժողը որ ուղղափառ ըլլան՝ առաքինութիւնն է ։ Ուրեմն երբոր ուղղափառ մը իր եկեղեցին թողլով շատ աւելի կը գէշնայ , և նորադանդ մը իր եկեղեցին թողլով շատ աւելի կ՚աղէկնայ , աս երկու եկեղեցիէն որը ձեզի կ՚երևնայ թէ շիտակ է ։

Թ. Նորադանդները կ՚ըսեն թէ 300էն ատենները , կամ ինչպէս ուրիշները կըսեն՝ 500էն , Ճշմարիտ եկեղեցին Քրիստոսի վերցուեցաւ ։ Բայց կ՚աղաչեմ որ ինծի պատասխան տան . Աս եկեղեցին մէկէ՞ն վերցուեցաւ , թէ կամաց կամաց , ու երկայն ժամանակ անցնելով ։ Շատ ծիծաղելու բան է ըսելը թէ մէկէն ջնջուեցաւ , իբր թէ աշխարհիս ամէն կողմը դանուած քրիստոնեաները՝ առջի իրիկունը 'ի Քրիստոս հաւատացեալ՝ անկողին մտած ըլլան , և առաւօտը անկողինէ ելլեն՝ թըշնամի Քրիստոսի , և նոր տեսակ հաւատք մը քարոզեն ։ Իսկ թէ որ կամաց կամաց վերցուեցաւ , ի՞ թէ ելան ու-

մանք որ հաւատոյ մէկ քանի բաներուն չէին հաւատար , եկեղեցին մէկէն որոշեց ու հանեց այնպիսիները ճշմարիտ հաւատացելոց մէջէն՝ ինչպէս որ յայտնի է աս բանս ան հերետիկոսներուն վրայ որ եկեղեցին դատապարտեց ։ Ուրեմն թէ որ Քրիստոսի սուրբ եկեղեցին միշտ դէմ կեցաւ հաւատոյ վարդապետութեան մէջ սխալներ մտցընողներուն , և մէկէն կտրեց այնպիսիները 'ի հաղորդութենէ հաւատացելոց , ինքը միշտ անարատ մնաց իր հաւատքին մէջ՝ որ Քրիստոսէ և առաքեալներէն ընդունած էր , և քարոզուած էր ( ինչպէս որ նորադարձներն ալ կը վկայեն ) առաջին դարերէն 'ի վեր ։ Աս պատճառը այնչափ զօրաւոր է որ Թիւրէն ըսուած անուանի զօրավարը ( որ երկայն ատեն Նորադարձից հաստատութեան գլխաւոր սիւներէն մէկն էր ) լսելով համոզուեցաւ , ու հռոմէական եկեղեցւոյ կողմը անցաւ ։

Ժ . Պէտք չէ կարծել թէ Լուտեր և Կալվին 'ի Քրիստոսէ խրկուած ըլ-

լան աշխարհք՝ որպէս զի նորոգեն կարգի զնեն Քրիստոսի խանգարուած եկեղեցին, և սորվեցընեն նոր տեսակ հաւատք մը. ապա թէ ոչ, թող ստոյգ վկայութիւններ բերեն իրենց առաքելութեանը աստուածային ըլլալը ցուցընելու համար։ Բաւական չէ որ իրենք իրենց բերնովը հաստատեն իրենց Աստուծմէ խրկուած ըլլալը, վասն զի հին ատենի հերետիկոսապետներն ալ նոյն բանը կ'ըսէին իրենց համար։ Իսկ արդ ոչ Լութեր, ոչ Կալվին, և ոչ իրենց արբանեակներէն մէկը կրցան որոշ ու աներկբայ վկայութիւններով հաստատել թէ իրենք 'ի Քրիստոսէ խրկուած են իբրև նոր առաքեալներ՝ որ քրիստոնէութիւնը նորոգեն, ուրեմն պէտք չէ կարծել թէ իրենք ճշմարիտ առաքեալներ են։ Այն իսկ Քրիստոսի ճշմարիտ առաքեալները՝ որոնք Քրիստոս ընտրեց կռապաշտութիւնն ու հրէութիւնը ջնջելու համար, աշխարհքս չճանչցաւ թէ Աստուծոյ պաշտօնեա-

ներ են՝ ինչուան որ առաքեալք իրենց սրբակաց վարքովը՝ իրենց գերազանց իմաստութեամբն ու անթիւ հրաշքներովը ցուցցին թէ իրենք Աստուծոյ ճշմարիտ առաքեալներն են։ Հիմայ կրնա՞նք մենք Աստուծոյ պաշտօնեայ ճանչնալ Լութերի ու Կալվինի պէս մարդիկները, որ կը ջանան խախտել հռոմէական եկեղեցին, որ բոլոր աշխարհք ինչուան հիմայ ճշմարիտ եկեղեցի Քրիստոսի դաւանած է, ինչուան որ իրենք պարզ ու զօրաւոր վըկայութիւններ մէջ չբերեն։ Նաև հին օրինաց ժամանակին ալ Աստուած միշտ հրաշք մը կ'ընէր՝ երբոր իր պաշտօնեաներէն մէկը կը խաւրէր ժողովրդեան քարոզելու։ Թէ որ մէկը քիչ մը տեղեակ է հին կտակարանին, ըսածիս ճշմարտութիւնը կրնայ անոր մէջ պատմուած շատ դիպուածներէն իմանալ։ Ամենուն աչքը սեպուի Մովսեսի ու Ահարոնի առաքումը առ փարաւոն, որոնց ձեռքովը Աստուած այնչափ հըրաշքներ ըրաւ. «Եթէ խօսեսցի ընդ

լան աշխարհք՝ որպէս զի նորոգեն
կարգի զնեն Քրիստոսի խանգարուած
եկեղեցին, և սորվեցընեն նոր տե-
սակ հաւատք մը. ապա թէ ոչ, թող
սոյդ վկայութիւններ բերեն իրենց
առաքելութեանը աստուածային ըլլա-
լը ցուցընելու համար: Բաւական չէ
որ իրենք իրենց բերնովը հաստատեն
իրենց Աստուծմէ խրկուած ըլլալը,
վասն զի հին ատենի հերետիկոսա-
պետներն ալ նոյն բանը կ՚ըսէին ի-
րենց համար: Իսկ արդ ոչ Լուտեր,
ոչ Կալվին, և ոչ իրենց արբանեակ-
ներէն մէկը կրցան որոշ ու աներկ-
բայ վկայութիւններով հաստատել թէ
իրենք ՚ի Քրիստոսէ խրկուած են իբ-
րև նոր առաքեալներ՝ որ քրիստոնէու-
թիւնը նորոգեն, ուրեմն պէտք չէ կար-
ծել թէ իրենք ճշմարիտ առաքեալ-
ներ են: Այն իսկ Քրիստոսի ճշմա-
րիտ առաքեալները՝ որոնք Քրիստոս
ընտրեց կռապաշտութիւնն ու հրէու-
թիւնը ջնջելու համար, աշխարհքս
չճանչցաւ թէ Աստուծոյ պաշտօնեա-

ներ են՝ ինչուան որ առաքեալք իրենց սրբակաց վարքովը՝ իրենց գերազանց իմաստութեամբն ու անթիւ հրաշք-ներովը ցցուցին թէ իրենք Աստուծոյ ճշմարիտ առաքեալներն են։ Հիմայ կրնա՞նք մենք Աստուծոյ պաշտօնեայ ճանչնալ Լութերի ու Կալվինի պէս մարդիկները, որ կը ջանան խախտել Հռոմէական եկեղեցին, որ բոլոր աշ-խարհք ինչուան հիմայ ճշմարիտ ե-կեղեցի Քրիստոսի դաւանած է, ին-չուան որ իրենք պարզ ու զօրաւոր վը-կայութիւններ մէջ չբերեն։ Նաև հին օրինաց ժամանակին ալ Աստուած միշտ հրաշք մը կ՚ընէր՝ երբոր իր պաշտօնեա-ներէն մէկը կը խաւրէր ժողովրդեան քարոզելու։ Թէ որ մէկը քիչ մը տե-ղեակ է հին կտակարանին, ըսածիս ճշմարտութիւնը կրնայ անոր մէջ պատ-մուած շատ դիպուածներէն իմանալ։ Ամենուն տեղը սեպուի Մովսէսի ու Ահարոնի առաքումը առ փարաւոն, ո-րոնց ձեռօքովը Աստուած այնչափ հը-րաշքներ ըրաւ. « Եթէ խօսեսցի ընդ

ձեզ փարաւոն՝ և ասացէ , տուք մեզ
նշան կամ արուեստ , ասասցես ցԱհա-
րոն եղբայր քո . ա՛ռ դու զգաւազանդ ,
և ընկեա զգա 'ի գետին առաջի փա-
րաւոնի և ծառայից նորա , և եղիցի
վիշապ » ( Ելք . Է ) ։ Այն հրաշքը Ա-
տուած Մովսեսին հրամայեց որ ընէ ,
ուրիշ երկու հրաշքով ալ ( մ̃ ձեռքին
բորոտիլը՝ ծոցը խօթելով , և ջուրը ա-
րիւն դարձընելը ) բոլոր Իսրայելա-
ցւոց աչքին առջև , որպէս զի թէ Իս-
րայէլացիք և թէ փարաւոն ամենքին
չտարակուսին թէ Մովսէս և Ահարոն
Աստուծոյ ճշմարիտ դեսպաններն են ։
Կարելի բա՞ն է որ Աստուած իբրև ի-
րեն դեսպանները խաւրած ըլլայ Լու-
թերն ու Կալվինը՝ իր եկեղեցին նորո-
գելու համար , և զիրենք ստիպած ըլ-
լայ որ այսպիսի մեծ գործողութեան
ձեռք զարնեն , առանց անոնց աներկ-
բայ նշան կամ վկայութիւն մը տալու՝
որով իմացուի թէ Աստուծոյ նախա-
խնամութիւնը զիրենք իրեն պաշտօնեայ
ընտրեր է՝ քրիստոնէական կրօնը նո-

բողոքելու համար։ Ուրեմն Լուտեր և Կալվին թող ցուցընեն իրենց Աստուծմէ առած նշանը, և ան պարզ ու զօրաւոր վկայութիւնները՝ որով իրենց Աստուծմէ առաքուած ըլլալը իմացուի, թէ որ կ'ուզեն որ Քրիստոսի՛ եկեղեցին (որ մտքերնին գրեր են նորոգել) զիրենք մեծ պատուով ընդունի։

ԺԱ. Կ'ուզէի գիտնալ, ով նորաղանդներ, թէ Քրիստոսի ճշմարիտ եկեղեցին սխալակա՞ն է թէ անսխալ։ Թէ որ անսխալ է, հապա ինչպէս ուղղափառ եկեղեցին, որ 'ի սկզբան այնչափ տարի (ինչպէս դուք ալ կը վըկայէք) Քրիստոսի ճշմարիտ եկեղեցին էր, ետքը մոլորութեան մէջ ընկաւ ու սուտ եկեղեցի եղաւ։ Իսկ թէ որ սխալական կ'ըսէք, ուրեմն նաև ձեր լուտերական և կալվինական եկեղեցին ալ կրնայ սխալական ըլլալ։ Ուրեմն կամ հռոմէական եկեղեցին է ճշմարիտ եկեղեցի Քրիստոսի, կամ չգիտցուիր թէ ճշմարիտ եկեղեցի կա՞յ, և ո՞րն է։ Իսկ աս բանս ըսելը բոլորո-

վին դէմ կ՚ելլէ թէ սուրբ գրոց և թէ աստուածային նախախնամութեան գեղեցիկ կարգաւորութեանը։

ԺԲ. Ուրքայութիւն երթալու համար ան Ճամբան աւելի աղէկ է որով անտարակոյս ենք թէ շատերը փրկուեր են, քան թէ ան՝ որով փրկուող եղեր է արդեօք թէ չէ՝ չենք գիտեր։ Արդ գիտենք թէ շատ մարդիկ ուղղափառ եկեղեցւոյ մէջ ապրելով ու մեռնելով փրկութեան հասած են (ինչպէս որ հակառակորդներն ալ կ՚ընդունին). ընդհակառակն ստոյգ չենք գիտեր թէ արդեօք նորաղանդներու վարդապետութեանը հաւատալով մէկը եղեր է որ փրկուի, որ և ոչ նորաղանդները կրնան ցուցընել. ուրեմն արքայութիւն հասնելու համար քան զամէն Ճամբայ աւելի ընտրելի է՝ ուղղափառ եկեղեցւոյ ցցուցածը, և անոր քարոզած կրօնը, որովհետև աւելի ապահով է։

ԺԳ. Ան կրօններն են յայտնապէս մոլար, որոնք Աստուծոյ իմաստութեանը՝ բարութեանը և ուրիշ ստո-

բողելչքներուն դէմ վարդապետու-
թիւններ ունին ։ Իսկ արդ լուտերակա-
նաց, կալվինականաց և ուրիշ բոլոր
նորաղանդներու կրօնները աստուա-
ծային ստորոգելեաց դէմ վարդապե-
տութիւններ ունին, ինչպէս որ առաջ
ցցուցինք. ուրեմն բոլոր նորաղանդնե-
րու կրօնները մոլար են ։ Նոյն բանը
պէտք է ըսել նաև ան սկզբունքներուն
և վարդապետութիւններուն համար՝ որ
նորաղանդները կը քարոզեն ընդդէմ
ուղիղ արամաքանութեան, փորձոյ և
սուրբ գրոց ։ Ան սկզբունքներէն մէկը
օրինակի համար հոս դնենք ։

Նորաղանդները կը վարդապետեն
թէ մեր ըրած ամէն բարի գործքերը
մեղք են ։ Ասկէ զատ կը վարդապետեն
թէ ամէն մեղք հաւասար է. ասկէ կը
հետևի թէ նոյնպէս հաւասար մեղք
է՝ Աստուծոյ աղօթք ընելը, ու զԱս-
տուած հայհոյելը. նոյնպէս հաւասար
մեղք է ողորմութիւն ընելը, և գողու-
թիւն ընելը, և այլն ։ Քան զայս ան-
ձոռնի սկզբունք կրնայ ըլլալ ։ Իսկ ե-

կեղեցի մը որ աս տեսակ վարդապետութիւններ ունի՝ կրնա՞յ պարծենալ թէ ինքը Քրիստոսի Ճշմարիտ եկեղեցին է։ Բայց ինչ զարմանք է լսել աս բաներս այնպիսի վարդապետներէ՝ որոնք ինչուան իրենց աստուածաբանութեանը մէջ, իբրև ամենաստոյգ խնդիր դրին թէ Աստուած է պատճառ մեղաց, որ կ՚ուզէ, կը ստիպեցընէ և կը հրամայէ որ մեղք գործուի։ Աս հայհոյութիւնը ըրին Կալվին և Լուտեր։

ԺԴ. Սուրբ գրոց վկայութիւններովը յայտնի կը տեսնուի թէ անհաւատից դարձը Քրիստոսի Ճշմարիտ եկեղեցւոյն մեծ նշաններէն մէկն է. «Տաց քեզ զհեթանոսս ՚ի ժառանգութիւն» (Սաղմ. Բ)։ «Լոյս ՚ի յայտնութիւն հեթանոսաց» (Ղուկ. Բ)։ «Գնացէք այսուհետև աշակերտեցէք զամենայն հեթանոսս» (Մատթ. ԻԸ)։ Իսկ արդ անհաւատից կամ հեթանոսաց դարձը եղած է ՚ի ձեռն ուղղափառ եկեղեցւոյ, և միշտ առ ուղղա-

փառ եկեղեցի․ ուրեմն անիկայ է միայն Ճշմարիտ եկեղեցի Քրիստոսի։ Առաջին հինգ դարերուն մէջ՝ դարձի եկող հեթանոսները ուղղափառ եկեղեցին միշտ ճանչցեր են Ճշմարիտ եկեղեցի, ինչպէս նաև նորադարձները կը վկայեն․ վասն զի ան ատեն ուրիշ քրիստոնեայ եկեղեցի չկար։ Վեցերորդ դարուն սուրբ Օգոստինոս կրօնաւորը՝ Անգղիան դարձի բերաւ ու ըրաւ ուղղափառ եկեղեցւոյ ժողովուրդ․ եօթներորդ դարուն՝ սուրբն Վոնիփակիոս Գերմանիան դարձուց․ ութերորդ դարուն սուրբն Կիւրեղ և սուրբն Մեթոդիոս՝ Մորաւիան․ իններորդ դարուն սուրբն Ադալբերտոս և սուրբն Պերեգրինոս և ուրիշները Մաճառստանն ու Լեհաստանը․ տասներորդ դարուն սուրբն Հռեմիգիոս՝ Պոհեմիան, Գաղղիան, և այլն։ Իսկ աս վերջի դարերուս մէջ թէ արևելեան և թէ արևմտեան Հնդկաստանի մէջ ալ անթիւ անհաւատներ դարձի եկան քարոզութեամբ սրբոյն Ֆրան-

չիսկոսի Վսաւերեան, և ուրիշ կրօնաւորներու ձեռքով, որ իրենց մարտիրոսական արեանը վրայ հիմնեցին հոն ալ ուղղափառ եկեղեցին։ Հիմա թող նորաղանդք ալ ցուցընեն թէ քանի՛ թագաւորութիւններ, ո՛րչափ գաւառներ, ո՛րչափ բազմութիւն հեթանոսաց դարձուցեր են իրենց եկեղեցւոյն։ Ուրիշ դարձ չեն կրնար ցցընել՝ բայց եթէ. քանի մը զեղծ վարք ունեցող ուղղափառներ, որոնք իրենց կողմը անցեր են՝ ամենայն համարձակութեամբ ու անկարգութեամբ ապրելու համար։

ԺԷ. Շատ խրատունք ունի ճշմարիտ եկեղեցի Քրիստոսի սեպուելու ան կրօնը՝ որ իրեն հաւատացելոց նեղ ճամբայ ու նեղ դուռ կը ցուցընէ արքայութիւն մտնելու, քան թէ ան՝ որ լայն ու ընդարձակ ճամբայ ու խիստ մեծ դուռ մը կը ցուցընէ. վասն զի Քրիստոս ըսաւ. « Ընդարձակ է դուռն, և համարձակ ճանապարհն՝ որ տանի 'ի կորուստ. քանի՛ անձուկ է դուռն և նեղ ճանապարհն՝ որ տանի

'ի կեանս» (Մատթ. Է)։ Իսկ արդ ուղղափառ եկեղեցին իրեն ժողովրդեանը նեղ ճամբայ կը ցուցընէ, և Նորաղանդից եկեղեցին լայն. ապա ուրեմն Հռոմէական եկեղեցին՝ Նորաղանդից եկեղեցիէն շատ աւելի իրաւունք ունի որ Քրիստոսի ճշմարիտ եկեղեցին ճանչցուի։ Աս բանիս ապացոյց ըլլայ վերը յիշուած Նորաղանդից մոլար սկզբունքները, որ օրինակի համար հոս քիչ մը բացատրենք։ Թէ որ ուղղափառ և Նորաղանդ եկեղեցիներուն հարցընենք՝ ան երիտասարդին պէս որ հարցուց Քրիստոսի. «Զի՞նչ գործեցից զի զկեանս յաւիտենականս ժառանգեցից» (Ղուկ. Ժ). ուղղափառ եկեղեցին մեզի պատասխան կուտայ, թէ պատուիրանները պահեցէք, մեղքերնուդ վրայ զղջացէք, բարեպաշտական գործքեր ըրէք, ողորմութիւն՝ մահացուցմունք ըրէք, և ասոնց նման բարի գործքերով ձեր յաւիտենական փրկութիւնը ապահովցուցէք։ Իսկ դուք, եկեղեցիք Նոր֊

աղանդից, ի՞նչ պատասխան կուտաք։ Դուք քիչ խօսքով բաներնիդ կը լմընցընէք, ըսելով ձեր հետևողներուն՝ թէ փրկութեան հասնելու համար հաւատքը միայն բաւական է, և անհաւատութիւնն է միայն որ զմարդ կը կորսունցընէ. անհաւատ միայն մի՛ ըլլաք, ու անկէ ետքը ի՛նչ կ'ուզէք ըրէք։ Ա՛ս է ահա Լուտերին սկզբնական առածը, որ բոլոր նորաղանդները մէկ բերնով կը գովեն։ Ուրեմն ձեզի ի՞նչ կ'երևնայ. աս երկու կրօններէն ո՞րը լայն ճամբան, և ո՞րը նեղ ճամբան բռներ է։

ԺԶ. Ա՛ն կրօնն է մոլար՝ որ հնարքներ ու նենգութիւններ կը բանեցընէ, ու խարդախ կերպերով առաջարկութիւններ կ'ընէ, որպէս զի իրեն սուտ՝ վարդապետութիւնը պաշտպանէ։ Իսկ արդ բոլոր նորաղանդից կրօններուն կերպը աս է. ապա ուրեմն բոլորն ալ մոլար են։ Իրենց հնարքներն ու խարդախութիւնները ճանչնալու համար՝ աս բանս գիտնալու է որ նորաղանդից քարոզիչները ամենայն կեր-

պով կը ջանան հաստատելու մէկ քա֊
նի առաջարկութիւններ, որոնք ապա֊
ցուցընելը շատ դիւրին է իրենց. վասն
զի բոլոր քրիստոնեայք նոյն բաները
կ'ընդունին. ասանկով իրենց մտիկ
ընողներուն առջև մեծ համարմունք
կ'ունենան: Զոր օրինակ, կ'ըսեն թէ
զԱստուած միայն պէտք է պաշտել աս֊
տուածավայել պաշտօնով. ամուսնու֊
թիւնը յարգելի բան է. Քրիստոսի
արգիւնքը անբաւ է. առանց ճշմարիտ
հաւատք ունենալու՝ փրկութեան հաս֊
նելու յոյս չկայ, և այլն: Աս ճշմար֊
տութիւններէն, և աս աներկբայելի ա֊
ռաջարկութիւններէն տեսէք թէ ինչ
անձոռնի ու մոլար հետևանքներ կը
հանեն: Ուրեմն, կ'ըսեն, պէտք չէ
պատուել սուրբերը, ոչ անոնց պատ֊
կերները և ոչ մասունքները. ուրեմն
ողջախոհութեան ուխտը և մարմնա֊
կան հեշտութիւններէ ետ կենալը զը֊
զուելի բան է. ուրեմն մեր մեղքերուն
վրայ ապաշխարելը բանի չգար. վասն
զի Քրիստոսի անբաւ արդիւնքովը ջըն֊

ջուած են. ուրեմն բարի գործքերը բանի չեն գար, և փրկութեան համար հաւատքը միայն բաւական է։ Եւ որովհետև աս վերջի հետևանքին վրայ հիմնած է իրենց աստուածաբանութեան զօրաւոր մասը, անիկայ հաստատուն պահելու համար՝ ամենայն կերպով կ'ամրացընեն սուրբ գրքէն ասդիէն անդիէն կցկտուր վկայութիւններ բերելով։ «Հաւատաց Աբրահամ յԱԾ, և համարեցաւ նմա յարդարութիւն» (Ծնն. ԺԵ)։ «Հաւատք քո կեցուցին զքեզ» (Ղուկ. ԺԸ)։ «Այնպէս սիրեաց Աստուած զաշխարհ, մինչև զորդին իւր միածին ետ. զի ամենայն որ հաւատայ 'ի նա՝ մի կորիցէ, այլ ընկալցի զկեանսն յաւիտենականս (Յովհ. Գ)։ «Որ հաւատայ և մկրտեսցի՝ կեցցէ» (Մարկ. ԺԶ)։ «Առանց հաւատոյ անհնար է հաճոյ լինել Աստուծոյ» (Եբր. ԺԱ)։ Այսպիսի խարդախ առաջարկութեամբ կը խաբեն տգէտ մարդիկները, կը մոլորցընեն ռամիկ ժողովուրդը, և կորստեան

պատճառ կ՚ըլլան ան քրիստոնեաներէն շատերուն՝ որ աւելի ապրիլ միայն կը մտածեն, քան թէ աղէկ ապրիլ ու սրբութեամբ մեռնիլ ։ Որպէս զի դուք ալ, ո՛վ սիրելի ընթերցողք, ան խեղճերուն թուին մէջ չգտնուիք, այսպիսի խախուտ վարդապետութիւններէն մի՛ խաբուիք․ և որպէս զի չխաբուիք՝ մասնաւոր ուշադրութեամբ կարդացէք ի՛նչ որ պիտի զուրցեմ նաև ասկէ ետև ։

ԺԿ․ Ան կրօնն է ճշմարիտ՝ որ պայծառ կերպով ու ամբողջ կը քարոզէ սուրբ գրոց ճշմարտութիւնը․ մոլար է ան կրօնք որ սուրբ գիրքը կ՚այլայլէ, մէջէն շատ բաներ դուրս կը թողու, և կէսը կ՚ընդունի՝ կէսը չընդունիր ։ Իսկ արդ Հռոմէական եկեղեցին զուտ ու ամբողջ կը քարոզէ սուրբ գրոց ճշմարտութիւնը․ և նորաղանդները կ՚այլայլեն ու բա՛ներ դուրս կը թողուն․ ուրեմն Հռոմէական կրօնն է ճշմարիտ, իսկ բոլոր մէկալները մոլար են ։ Ասածիս ճշմարտութիւնը որպէս զի ա՛լ աւելի աղէկ իմացուի, ինչ որ

պիտի ըսեմ՝ ուշ դրէք. Հռոմէական եկեղեցին կ'ընդունի և կը վարդապետէ ան ամէն ուղղափառական ճշմարտութիւնները՝ ինչ որ ցուցցեցի նախընթաց թուղթին մէջ՝ թէ նորաղանդները կը քարոզեն, բայց ան կերպով կ'ընդունի և կը վարդապետէ, որ նաև ուրիշ նոյնպէս ուղղափառական ճշմարտութիւններու հետ կը համաձայնին, և սուրբ գրոց վկայութիւններով կը հաստատուին։ Ուղղափառ եկեղեցին կը վարդապետէ թէ միայն զԱստուած պէտք է պաշտել աստուածային պաշտօնով, բայց անկէ զատ կը պատուիրէ թէ սուրբերն ալ պէտք է պատուել՝ ոչ իբրև Աստուած, այլ իբրև բարեկամ Աստուծոյ։ Կը սորվեցընէ թէ ամուսնութիւնը յարգելի բան է, մանաւանդ սուրբ խորհուրդ է. բայց անկէ զատ՝ կը հաստատէ թէ նաև կուսութիւնը Աստուծոյ խիստ հաճոյական առաքինութիւն է, և սրբոյն Պօղոսի հետ կ'ըսէ. «Որ ամուսնացուցանէ զկոյսն իւր, բարւոք առնէ. և որ

ոչն ամուսնացուցանէ՝ լաւ ևս առնէ » ( Ա. Կորնթ. Է ): Կը վարդապետէ թէ Քրիստոսի արդիւնքները անբաւ են. բայց կ'ըսէ ալ թէ ան արդիւնքներուն հաղորդ ըլլալու համար պէտք է որ մենք ալ մեր ձեռքէն եկած ջանքը ընենք: Կը սորվեցընէ թէ առանց Ճշմարիտ հաւատոց փրկուելու յոյս չկայ. բայց նաև կը ցուցընէ թէ փրկուելու համար հաւատքը միայն բաւական չէ. « Տեսանէք զի 'ի գործոց արդարանայ մարդ, և ոչ 'ի հաւատոց միայն » ( Յակ. Բ ): « Եւ եթէ ունիցիմ զմարգարէութիւն, և գիտիցեմ զխորհուրդս ամենայն, և զամենայն գիտութիւն, և եթէ ունիցիմ զամենայն հաւատս՝ մինչև զլերինս փոփոխելոյ, և սէր ոչ ունիցիմ, ոչինչ եմ » ( Ա. Կորնթ. ԺԳ ): « Եւ եկեսցեն արտաքս. որոց բարիս գործեալ իցէ 'ի յարութիւն կենաց, և որոց չար արարեալ՝ 'ի յարութիւն դատաստանաց » ( Յովհ. Ե ): « Եթէ կամիս 'ի կեանս յաւիտենականս մտանել,

պահեա՛ զպատուիրանս » (Մատթ. ԺԹ)։ « Ասեմ ձեզ (մեղաւորացդ). այլ թէ ոչ ապաշխարիցէք, ամենեքեան նոյնպէս կորնչիջիք » (Ղուկ. ԺԳ)։ Աս է ահա, սիրելիք, զուտ ու ամբողջ վարդապետել սուրբ գրոց ճշմարտութիւնը, որ միշտ աս կերպով վարդապետեր է՝ ու կը վարդապետէ հռոմէական եկեղեցին։ Ընդհակառակն նորաղանդք սուրբ գրոց մէկ քանի վըկայութիւնները միայն մէջ կը բերեն, անոնք ալ ուզածնուն պէս կը մեկնեն. իսկ սուրբ գրոց մէկալ անթիւ վկայութիւնները և ոչ կը յիշեն, վասն զի անոնք իրենց վարդապետութեան հիմը կը քանդեն։ Իբրև ճշմարտութիւն՝ սուրբ գրոց զանազան տեղերէն կցկտուր խօսքեր մէկտեղ բերելով սուտ վկայութիւն մը կը շինեն, և Հոգւոյն սրբոյ ըսած խօսքերուն մէջէն մէկ քանի բառեր միայն առնելով ու մէկտեղ բերելով կը հանեն սոսկալի հայհոյութիւն մը նոյն իսկ Հոգւոյն սրբոյ դէմ։ Աս բաներս կարդալէն ե-

եւ ի՞նչ կ՚ըսէք, սիրելիք. աս երկուքէն ո՞րն է Քրիստոսի ճշմարիտ եկեղեցին. ուղղափառա՞ցը՝ չէ նէ նորաղանդի՞ցը։

ԺԸ. Հաւատոյ ճշմարտութիւններէն մէկն է թէ քրիստոնէից մէջ պիտի գտնուին մոլորեցուցիչներ ու սուտ մարգարէներ. և թէ նոյն իսկ Քրիստոսի ճշմարիտ եկեղեցւոյն մէջէն պիտի ելլեն անզգամ մարդիկ, սատանայական սկզբունք քարոզողներ, որոմնացաններ, ու մոլար կրօններու վարդապետներ. և աս բանիս Քրիստոս իր բերնովը վկայեց. «Եւ բազում՝ սուտ մարգարէք յարիցեն, և ըզբազումս մոլորեցուսցեն» (Մատթ. ԻԴ)։ «Եւ ՚ի ձէնջ յարիցեն արք որ խօսիցին թիւրս, ձգել զաշակերտսն զկնի իւրեանց» (Գործ. Առաք. Ի)։ Ապա ուրեմն, կամ ուղղափառները, կամ նորաղանդները պէտք է որ ըլլան սուրբ գրոց ըսած մոլորեցուցիչները և սուտ մարգարէները. որովհետև իրարու հակառակ են, ու չըլլընար ըլլալ որ երկու կողմն ալ Քրիս-

տոսի Ճշմարիտ եկեղեցին ըլլայ, ինչպէս ցըցուցի երրորդ առաջարկութեանս մէջ։ Արդ առանց մարդկային կրից դատաստան ըրէք ու ըսէք ինծի թէ մինչև հիմայ ըսած բաներէս՝ աս երկու եկեղեցիներէն որո՞ւն կը վայլէ այսպիսի նախատական անունը. ուղղափառներո՞ւն թէ նորաղանդներուն։ Բայց ինծի պատասխան տալէն առաջ՝ աս առաջարկութեանս ալ ուշ դրէք։

ԺԹ. Ուղղափառներուն մէջ շատ ազնուական, հարուստ, փափկասուն ու խելացի մարդիկ կան որ թէպէտ աշխարհիս մէջ շատ պատիւ կրնային ունենալ, ինչուան նաև իշխանաց ու թագաւորաց զաւակներ ըլլալով, բայց ամենայն աշխարհային փառք պատիւ անարգեցին, իրենց ժառանգութիւնը թողուցին, և ամէն տեսակ փափկութիւն ոտքի տակ առնելով՝ խստակրօն վանքեր ու կուսաստաններ քաշուեցան, և իրենք զիրենք կամաւ բանտարկեցին՝ միայն Աստուծոյ սիրոյն համար, Քրիստոսի նմանելու համար, ու յաւիտենա-

կան կեանքը վաստըկելու համար։ Ասանկ օրինակները մէկ երկուք մը չեն, հապա հազարաւոր ու միլիոնաւոր կը համրուին ուղղափառ եկեղեցւոյ մէջ։ Ընդհակառակն, ձեր նորադանդից եկեղեցին ասանկ օրինակներ քանի՞ հատ ունի։ Ձեզմէ ո՞ր Թագաւորը, ո՞ր իշխանը իր հարստութիւնը՝ պատիւն ու պաշտօնը թողլով իր օրերը միանձնութեամբ, աղքատութեամբ և ուրիշի հընազանդելով անցուցեր է. և մէկ խօսքով առաքելոյն ըսածին պէս կրցեր է գրուցել, « Ինձ աշխարհ՚ի խաչ ելեալ է, և ես աշխարհի » (Գաղատ. Զ)։ Գիտեմ որ ոմանք նորադանդութիւնը չձգելու համար իրենց հայրենիքն ու ստացուածքը թողուցեր են։ Բայց աս բանիս համար կամ ուրիշներէն ստիպուեր են, կամ մեծամեծ խոստմունքներ առեր են. և ո՞վ չգիտեր թէ մարդիկ աս բաներուս համար չէ թէ միայն ժամանակաւոր կեանքը բանի տեղ չեն դներ, հապա նաև յաւիտենականը։ Թէ որ ուղղափառ իշխան մը զանոնք

հալածէ, կ'ելլեն ուրիշ Նորաղանդ իշխանի մը տակ կ'երթան, որպէս զի իրենց հացը ճարեն. մէկը չէ եղած որ հալածուելով անապատը քաշուի: Այնպիսիներ ալ կը ճանչնամ որ իրենց ժամանակաւոր օգուտը չկորսնցընելու համար՝ Նորաղանդութիւնը թողուցեր են:

Հենրիկոս Դ., Գաղղիացւոց թագաւորը, ուղղափառութիւնը յանձն առաւ՝ որպէս զի չըլլայ թէ թագաւորութիւնը կորսնցընէ. և երբոր Նորաղանդ պաշտօնեաները սկսան տրտնջալ, հարցուց իրենց. «Թէ ուղղափառ ըլլամ և թէ Նորաղանդ՝ պիտի չփրկուի՞մ»: — Ի՞նչ ըսել է, ըսին Նորաղանդները. վասն զի ըստ իրենց աստուածաբանութեանը՝ քրիստոնեայ մը ինչ աղանդ որ ունենայ՝ կրնայ փրկուիլ: — «Ուրեմն, ըսաւ թագաւորը, ես ուղղափառ կ'ըլլամ. վասն զի աւելի կ'ուզեմ արքայութեան մէջ բոլոր Գաղղիայի թագաւոր երևնալ, քան թէ միայն Նաւառայի թագաւոր»: Կարծեմ՝ եթէ դուք ալ նոյնպիսի դի-

պուածի մը մէջ գտնուելու ըլլալ՝ նոյն պատասխանը կուտաք ։ Այն իսկ ձեր եպիսկոպոսները , քարոզիչները. և եկեղեցւոյ հովիւները , որոնք ձեր մէջ կատարեալ վարք ունեցող կը սեպուին, ոչ աշխարհիս փառքը պատիւը կ՚արհամարհեն , և ոչ մարմնաւոր հաճոյքները ։ մանաւանդ կ՚ըսեն թէ քահանայութիւնն ու ամուսնութիւնը իրենց համար շատ յարմար է , թէպէտ և մէկն ալ չկայ որ իր ընկերոջը հետ աղէկ վարուի ։ Հիմա ձեզի հարցընեմ . աս երկու եկեղեցիներէն ո՞րը աւելի սուրբ , աւելի կատարեալ և ՚ի Հոգւոյն սրբոյ կառավարեալ կ՚երևնայ ։ Ո՞ր պաշտօնեաները խաբեբայ ու սուտ մարգարէ կ՚երևնան . ուղղափառներո՞ւնը թէ նորաղանդներունը ։

Ի. Ճշմարիտ եկեղեցւոյ դաւանած հաւատքը պէտք է ամէն ատեն նոյն ըլլայ , և ամէն վարդապետք նոյնպէս դաւանած ըլլան . արդ ուղղափառ եկեղեցւոյն հաւատքը այսպէս է , իսկ նորաղանդներունը ներհակը . ուրեմն

Ճշմարիտ հաւատքը առջինն է, չէ թէ երկրորդը ։ Աս հաւաքաբանութեան փոքրագոյն մասին Ճշմարիտ ըլլալը իմանալու համար բաւական է Նորաղանդից և ուղղափառաց Քրիստոնէական վարդապետութիւնը աչքէ անցընելը ։ Նորաղանդից քրիստոնէական վարդապետութիւնները մէկմէկէ այնչափ տարբեր են որ կարծես թէ այլևայլ կրօնի մարդիկ շինած են ։ Թէ որ 1567ին Վիրթեմպերկի մէջ տպած Լութերին քրիստոնէականը հիմակուան Մաճառստանի լուտերականներուն գործածածին հետ բաղդատես, շատ բան մէկմէկու հակառակ կը գտնես ։ Իսկ ան Աւգոստեան ըսուած հոչակաւոր քրիստոնէականը, որ շատ անգամ տպուած է այլևայլ տեղուանք, ամէն անգամ տպուելուն՝ առջիններէն բոլորովին տարբեր նոր ձև մը կ'առնէր ու նոր տեսակ վարդապետութիւն ու հաւատք կը սորվեցընէր, իբր թէ պատկեր հանի նկարք ըլլար՝ որ ոչ երբէք նոյն կերպարանքը նոյնպէս կը քա-

չէ ։ Նորաղանդութեան առջի քրիստոնէականը որչափ որ ուղղափառաց քրիստոնէականէն տարբեր էր, նոյնչափ մէկմէկէ տարբեր են նաև հիմակուան նորաղանդներուն հանած այլևայլ քրիստոնէականները, որոնք կը ջանան՝ չէ թէ միայն ուղղափառ եկեղեցին նորոգել, հապա նորաղանդ եկեղեցին ալ․ ասկէց է որ իրենց աստուածաբանութեանը մեծ մասը մէկմէկէ տարաձայն են, ինչպէս որ վերն ըսինք ։ Ընդհակառակն ուղղափառ եկեղեցւոյ քրիստոնէականներն որ բաղդատես, իրենց սորվեցուցած ճշմարտութիւնը միշտ նոյն կը գտնես, թէ և այլևայլ լեզուով գրուած, այլևայլ ժամանակ ու այլևայլ տեղուանք տպուած ըլլան ու շատերէն սրբագրուած․ և ուղղափառ եկեղեցին կը ջանայ ու կ'աշխատի որ միշտ միակերպ մնան ։

Նաև որովհետև վեր 'ի վերոյ յիշեցի ուղղափառաց ու նորաղանդից ժողովքները, աս ժողովքներուն վրայ ալ բաղդատութիւն մը ընենք ։ Նախ մէկ կող-

մը գնենք Նորաղանդից գլխաւոր ժողովքները որ 'են Աւգոստեանը, Հելվետեանը, Ժինեւրայինը ու Անգղեականը. մէկալ դին ալ գնենք ուղղափառ եկեղեցւոյ ժողովքները. և մէկմէկու հետ բաղդատելով տեսնենք թէ որո՞նք են աւելի ճշմարիտները: Նորաղանդից առջի ժողովքին մէջ, որ է Աւգոստեանը, աստուածաբանները խիստ քիչ ու տկար էին. ժողովականները միայն գերմանացի էին. իրենց վճիռները խիստ քիչ քաղաք ընդունեցան, ու շատերը մերժեցին, և ամենուն խելքին յարմարցընելու համար՝ շատ անգամ փոփոխեցին: Հիմա տեսնենք՝ թէ ուղղափառ եկեղեցւոյ ժողովքները աւելի հաւատարիմ են թէ չէ: Շատ անգամ աս մը ժողովքները եղան 300 կամ 600 եպիսկոպոսներով, և ինչուան 1000 եպիսկոպոսով եղած կայ, ինչպէս էր Լատերանու Բ ժողովքը որ 1139ին եղաւ: Ժողովականները միշտ իմաստուն աստուածաբաններ էին, երևելի իշխաններ ու թագաւորներ ներկայ էին՝ կամ անձամբ

կամ դեսպաններով. և հաւատոյ ամէն մասերը հասուն խորհրդով կը քննէին, անանկ որ Տրիդենտեան ժողովքը տասնըութը տարի քշեց։ Հիմա աս երկու տեսակ ժողովքներէն ո՞րը աւելի սուրբ է, ո՞րը աւելի պատկառելի է, և ո՞րը 'ի Հոգւոյն սրբոյ խնամարկեալ է՝ որ խոստացաւ՝ միշտ օգնելու իւր հարսին սուրբ եկեղեցւոյ. ուղղափառա՞ց ժողովքը թէ նորաղանդիցը։

ԻԱ. Ընիկայ է միայն Քրիստոսի ճշմարիտ եկեղեցին՝ որուն դաւանած հաւատքին համար շատերը իրենց կեանքը տուած ու արիւննին թափած են՝ անանկ հաստատուն մտքով և ուրախութեամբ որ Աստուծոյ շնորհքը ու գործքը ըլլալը յայտնի կ'երեւնայ։ Իսկ արդ ուղղափառ եկեղեցւոյ մէջ շատը կան որ իրենց դաւանած հաւատքին ճշմարտութեանը վկայելու համար իրենց կեանքն ալ տուին. ընդ հակառակն նորաղանդ եկեղեցւոյն մէջ մէկն ալ չգտնուիր. ուրեմն միայն ուղղափառ եկեղեցին է Քրիստոսի

Ճշմարիտ եկեղեցին։ Կրնայի հոս տեղս
խօսիլ մեր անթիւ մարտիրոսներուն
վրայ, և զանոնք նորաղանդներուն քա֊
նի մը հատ մարտիրոս սեպածներուն
հետ բաղդատել. բայց ասոնք մարտի֊
րոս ըսուելու իրաւունք չունին, որով֊
հետև իրենց պնդագլխութեանը հա֊
մար դահիճներէ սպաննուեցան։ Բայց
թէ որ աս ձեր քաջերը մարտիրոս ա֊
նուանէք, կրնամ նաև մարտիրոս սե֊
պել Միքայէլ Սերուետոսը որ արիո֊
սեան աղանդին նորոգիչը ըլլալով, իր
աղանդին վկայելու համար ողջ ողջ. այ֊
րեցաւ Ժընեւրայի մէջ Կալվինին վըճ֊
ռովը, որ նախանձէն չէր ուզեր որ ա֊
նոր աղանդը տարածուի, թէպէտ և
իրեն հնարածն ալ անոր հնարածէն
վար չէր մնար։ Եթէ ես ուզէի ուղ֊
ղափառութեան համար մեռնողները
նորաղանդութեան համար մեռնողնե֊
րուն հետ համեմատել, անշուշտ կըր֊
նայի ամըչցընել նորաղանդները. այս֊
չափ ըսեմ որ եթէ ուղղափառ կրօնի
վրայ արիւն թափողներուն տօները տա֊

րւոյն ամէն օրուան վրայ բաժնէինք, ամէն մէկ օրուան 30,000 էն աւելի կիյնար․ որոնց մէջ ամէն տեսակ մարդ-կայ, ինչուան թագաւորական ցեղերէ։ Բայց աս բանս երկայն գործողութիւն ըլլալուն համար կը թողում, ով որ ու-զէ՝ կրնայ ուրիշ գրքերու մէջ կարդալ, որոնք աս նիւթիս վրայ երկայն բա-րակ խօսած են։ Հիմակու հիմա թէ ինծի և թէ ձեզի բաւական է գիտնա-լը թէ ինչուան աս վերջի տարիներս ուղղափառութեան համար արիւն թա-փողները անպակաս են։ Կարդացէք միայն Ճափոնի հիմակուան պատմու-թիւնը[1]․ հոն կը տեսնէք թէ որչափ ազնուական խաթուններ, որչափ փափ-կասուն աղջիկներ, որչափ մանր տղաք ուղղափառութիւնը հալածողներուն դիմացը եղան մէյմէկ առիւծի պէս, և իրենց հաւատքը պահելու համար ո-մանք ողջ ողջ այրեցան, ոմանք չորա-չար տանջանքներ քաշեցին ու մեռ-

1 Դանիէլ Պարթոլի, Ճափոնի Վրայ։

նիլը յանձն առին, անանկ համար-
ձակ հոգւով, անանկ ուրախ դէմքով,
և անանկ անվախ սրտով որ կարծես
թէ պատերազմի մէջ մտած զօրապետ-
ներ էին։ Հինդ տարեկան տղայ մը
կայ եղեր որ երբոր կը լսէ թէ հրա-
պարակին մէջ շփոթութիւն մը կայ, ու
դատաւորին մէկը քրիստոնէի մը կ'ըսէ
եղեր, կամ հաւատքդ թող կամ գլուխդ
կացնով կը կտրեմ. տղան աս բանս լը-
սածին պէս վեր կը ցատքէ, իր աղուոր
զգեստները կը հագնի ու կը վազէ հրա-
պարակը կ'երթայ, զգեստները կը հա-
նէ, և երկու ձեռքը իրարու բերելով՝
դահճին նշան կ'ընէ որ կացնով զար-
նէ գլխուն, ու զինքը երկինք խաւրէ։
Դահիճը աս բանս տեսնելուն պէս կը
սարսափի ու ձեռքը առաջ չերթար ա-
նոր գլուխը կտրելու. ան ատեն զի-
նուորներէն մէկը առաջ կ'անցնի, ու
վարժ չըլլալուն՝ իրեք անգամ զարնե-
լով հազիւ կը կտրէ անոր գլուխը. իսկ
ան երջանիկ տղան ամէն մէկ զարնուած-
քին ամենևին չէր այլայլեր, իբր թէ

ան աղուոր հոգին պղծէ մարմնոյ մը մէջ գրուած ըլլար։ Հիմա ըսէք տեսնեմ. աս մնաց հաստատութիւնը Աստուծոյ շնորհքն է թէ չէ։ Թէ որ կրնայք՝ այսպիսի մէկ օրինակ մը գտէք ձեր աղանդին տարեգրութիւններուն մէջ։ — Գիտեմ որ ձեր քարոզիչները պիտի ըսեն՝ թէ ատոնք շինծու բաներ են։ Բայց ես ալ անոնց հարցընեմ. Դուք ալ չէ՞ք կրնար շինել այսպիսի առասպելներ, անանկ որ ուղղափառներուն շինածներուն պէս ճշմարտանման ըլլան։ Աս ալ մտածեցէք որ ասոնք պատմողները երևելի մարդիկ են. դիպուածները անհամար մարդկանց առջև եղած են, և նոյն իսկ ձեր աղանդէն եղածներն ալ կրնան վկայել՝ որ վաւերականութեան համար ան կողմերը կ'երթան կու գան։ Դարձեալ, թէ որ ճշմարիտ չըլլային աս բաները, շուտ կամ ուշ նոյն իսկ ուղղափառներուն յայտնի կ'ըլլար անոնց սուտութիւնը. վասն զի ուղղափառաց մէջ ալ կը գտնուին այնպիսի չարեր որ պատ֊

Ճառ մը կը փնտռեն որ ուրիշի վրայ գէշ խօսին, ու ան գրողներուն անունը կոտրեն. Թող որ մեր եկեղեցւոյ հովիւներն ու կրօնքի քննիչները աչուըննին չորս բացած են որ չըլլայ թէ այսպիսի նիւթերու մէջ ստուգութիւն խառնուի. վասն զի ուղղափառ եկեղեցին իրեն հաւատքին համար մեռնող այնչափ յայտնի ու ճշմարիտ մարտիրոսներ ունի, որ անյայտ մարտիրոսաց վըկայութեանը կարօտ չէ:

ԻԲ. Ան եկեղեցին միայն Քրիստոսի ճշմարիտ եկեղեցի ըլլալուն նշանները ունի, որուն չեն կրնար վնասել ոչ դժոխքին դռնութիւնը և ոչ երկրիս իշխաններուն սոսկալի հալածանքները. վասն զի իրեն համար զրուցուած է թէ «Դրունք դժոխոց զնա մի յաղթահարեսցեն» (Մատթ. ԺԶ): Իսկ արդ ուղղափառ եկեղեցին չկրցան խախտել ոչ դժոխքին դռնութիւնները, և ոչ երկրաւոր իշխանաց սաստիկ հալածանքները. ուրեմն ուղղափառութիւնը աս աստուածային նշանս ալ ու-

նի՝ Քրիստոսի ճշմարիտ եկեղեցին սեպուելու ։ Թէ որ քիչ մը եկեղեցական պատմութիւն կարդացեր էք, կրնաք գիտնալ աս բանիս ճշմարտութիւնը, և աւելորդ է հոս տեղը օրինակներով հաստատելը ։ Եկեղեցւոյ սկիզբէն ինչուան Լուտերին ատենը իրեք հարիւր տեսակ հերետիկոսներէն աւելի ելան որ կ'ուզէին ուղղափառ եկեղեցւոյ հետ պատերազմիլ ու զինքը խածատել ։ Թողունք հեթանոսներուն հալածանքները, որոնք այնչափ զօրացան որ կարծես թէ հիմնայատակ պիտի ընէին եկեղեցին, և ինչուան մեր օրերը և ոչ անունը պիտի մնար ։ Միայն պատկերամարտից աղանդը 120 տարի քշեց ուղղափառ եկեղեցւոյ դէմ սաստիկ թշնամութեամբ. և իրենց կատաղութիւնը աւելի շատցաւ՝ երբոր իրենց պաշտպան ունեցան ետևէ ետև յաջորդող հինգ կայսրները, որոնք մտքերնին դրեր էին կամ սրբոց նշխարաց ու պատկերաց պատիւը վերցընել, կամ բոլոր հաւատքն ու եկեղեցին

ջնջել։ Այս բանիս հասնելու համար հնարք չմնաց որ չփորձեն. երբեմն անուշութիւն բանեցընելով, երբեմն ալ դառնութիւն։ Բայց այնչափ դէմ կենալէն ետև, այնչափ կատաղի կռիւներէն և երկար հալածանքներէն ետքը ինչ որ եղաւ՝ դուք արդէն գիտէք։ Այսպէս ջնջուեցան նաև արիանոսները, նեստորականները, միակամեայք, մանիքեցիք, պատկերամարտք և ուրիշ տեսակ տեսակ աղանդները, որ ուղղափառ կրօնի դէմ ապստամբութեան դրօշակ բացեր էին։ Իսկ ուղղափառ եկեղեցին միշտ հաստատ մնաց իր հաւատքին ու վարդապետութեանը մէջ՝ առանց ամենևին ետ երթալու, առանց վանկ մը աւրելու ու նշանախեց մը մերժելու որ 'ի սկզբանէ իբրև հաւատոյ մասն ընդուներ էր։ Արդ այսչափ դարեր տևած մրրկին մէջ ո՞վ անվնաս ու ջրին երեսը բռնեց Պետրոսի նաւը. ո՞վ պաշտպան կեցաւ անոր՝ տեսակ տեսակ յարձակմանց դէմ։ Ո՞վ հոգ տարաւ անոր վրայ այնչափ պատե-

բազմներու մէջ, որ աշխարհ ու դժոխք
անոր դէմ կը կռուէին, անանկ որ ե-
կեղեցւոյ խորհրդաւոր փայտերէն մէկն
ալ չկորսուի։ Ո՛վ Ջարդուբուրդ ըրաւ
ու ընկղմեց ան մեծամեծ նաւերը որ
դժոխքէն ելեր՝ ուղղափառութեան սլըդ-
ար նաւակին հետ կը պատերազմէին։
Յայտնի բան է որ ասիկայ մարդու
գործ չէ, հապա Աստուծոյ գործ է,
և պէտք է որ այնպէս ըլլայ։ Ուրեմն
պէտք է խոստովանինք թէ ուղղափառ
հաւատքը նաւակոծութիւն չքաշեր.
վասն զի այնպիսի նաւով մը Ճամբայ
կ'ընէ՝ որուն վարիչը Քրիստոս է, որ
մէկ ձեռքով ղեկը բռնած՝ Ճամբան
կ'ուղղէ, մէկալ կայծակներով զինեալ
ձեռքովն ալ թշնամիներուն դէմ կը
դնէ։ Ու. Թէպէտ հաւատացեալներուն
մարմնոյն չխնայեր, հապա իր փառայը
ու անոնց օգտին համար պանոնք կը չար-
չարէ, բայց ամենևին չթողուր որ ի-
րենց հաւատքին վնաս մը կամ պղտիկ
այլայլութիւն մը հասնի, թէպէտ և
մանր կամ ոչինչ սեպուած բան մը ըլ-

լայ. վասն զի միշտ Ճշմարիտ պիտի ըլլայ ան խօսքը թէ « Դրունք դժոխոց զնա մի յաղթահարեսցեն »:

Հիմա ըսէք տեսնեմ, նոյնպէս կրնա՞ն պարծիլ նորաղանդից եկեղեցիները, Լուտերինը, Կալվինինը, Զուինկլիոսինը և այլն: Իրաւ է նորաղանդութիւնը խաղաղ ու յաղթական մնացեր է երկրիս քանի մը կողմերը. խաղաղ է, վասն զի թշնամի չունի որ իրեն հետ հրով ու սրով պատերազմի. հոգևոր զէնքերէն ալ՝ որոնցմով հոգին կը փասաւի՝ նորաղանդները չեն վախնար, վասն զի չեն կարծեր որ Քրիստոս եկեղեցւոյ հովիւներուն ասանկ զէնքեր յանձնած ըլլայ: Յաջող հովով ու հանդարտ ծովու մէջ Ճամբայ ընելը բան մը չէ. պզտիկ նաւակ մ'ալ կրնայ ընել: Ձեր հաւատքին հաստատութիւնը ան ատեն երևան կ'ելլէ՝ երբ որ ամէն կողմերէն թշնամիները պաշարեն ու վրան յարձըկին, և ան տեսակ զէնքերը գործածեն՝ ուսկից որ դուք կը վախնաք: Այսպիսի դիպուած

մը ենթադրեցէք , և իրաւը խոստովա֊նեցէք . ենթադրենք թէ ան իշխանը՝ որուն որ դուք կը հնազանդիք ու ին֊չուան հիմա ձեր աղանդին պաշտպան սեպուած է , հիմա իր սխալմունքը ճանչնալով մերժէ իր աղանդը և հը֊նազանդի ուղղափառ եկեղեցւոյ , և Աստուծոյ շնորհքովը նախանձայու֊զութեամբ լցուած՝ թուրը ձեռքը սկսի հալածել ան ամէն աղանդաւորները որ ուղղափառ կրօնի դէմ են . և ոչ միայն ուզէ իր սահմանէն հալածել զանոնք , հապա աշխարհիս վրայէն ջնջել . ըսէք տեսնեմ, արդեօք երկայն ատեն հաս֊տատ կը մնայ ձեր աղանդը : Արդեօք ձեր քարոզիչները ամէն վնաս յանձն կ'առնուին աս բանիս դէմ դնելու հա֊մար : Դուք ալ յանձն կ'առնուիք աւե֊լի ձեր պատիւը՝ստացուածքը ու կեան֊քը տալ , քան թէ ձեր հաւատքին մէկ մասը ուրանալ : Ես չեմ ուզեր ձեր բեր֊նէն լսել աս հարցմունքիս պատասխա֊նը . բայց կ'ուզեմ որ ձեր խղճմտանքին ըսածին ուշ դնէք որ կ'ըսէ . «Սոր֊

աղանդութիւնը ջնջելու համար հարկ չկայ որ այսչափ խստութիւն ըլլայ. հարկ չկայ որ մահ սպառնացուի. բաւական է միայն որ թագաւորները՝ իշխանները աղէկ աչքով չնայէին իրենց նորաղանդ հպատակներուն վրայ, զանոնք մեծամեծ պաշտօններու չհասցընեն, անոնց վրայ հոգ չտանին, ու ոչ բարիք և ոչ չարիք հասցընեն»: Արդ ո՞ր հաստատութիւնը աստուածային սեպելու է. ուղղափառ եկեղեցւո՞յնը թէ նորաղանդներունը:

## ԽԴ

### Բացայայտութիւն ուղղափառական ճըշմարտութեանց:

Ահա՛ ասոնք են, սիրելիք, ազդու՝ պարզ ու դիւրըմբռնելի պատճառներէն մէկ քանին: Կրնայի ուրիշ պատճառներ ալ դնել, բայց շատ հարկաւոր չսեպելուս ձգեցի. և ասով յուսամ որ ես զիս կ՚արդարացընեմ ուղղափառ եկեղեցւոյն մէջ մնալուս համար:

Ինչուան հիմա զուրցածներէս որոշ կ'իմացուի թէ միայն ուղղափառ եկեղեցւոյ մէջ կը գտնուի փրկութեան ճամբան . և աս բանիս վրայ ոչ ոք կը տարակուսի ։ Որպէս զի աւելի աղէկ իմանաք թէ ինչ տեսակ բացայայտութեան վրայ է խօսքս , աղէկ ուշ դրէք ըսածիս , ես ալ որչափ կրնամ՝ պարզ բացատրելու կը ջանամ ։

Ան բաներն որ զգայարանքով կ'իմանանք , զոր օրինակ թէ արևը կը լուսաւորէ , կրակը կը տաքցընէ , ձիւնը կը պաղեցընէ , մեղրը անուշ է , լեղին դառն է , երկինքը կ'որոտայ , ամպերը կը շարժին , լեռները հաստատ կը մնան , անանկ բացայայտ բաներ են որ մեր միտքը կը ստիպեն հաւանելու՝ առանց սպասելու որ մեր կամքը հաւանութիւն տայ . ասիկայ կ'ըսուի բնական բացայայտութիւն . և հաւատոյ վրայ խօսելու ժամանակ՝ ասիկայ բանի չիգար . իսկ հաւատոյ մասանց հաւատալու համար՝ պէտք է որ անոր խորհուրդները քիչ մը մութ ըլլան , և անանկ բացայայտ չըլլան որ

մեր խելքը ստիպուի մէկէն հաւատա-
լու՝ առանց մեր կամքը իր ազատու-
թեամբը անոր հետեւելու։

Ասոնք ուրիշ տեսակ բացայայտու-
թիւն մըն ալ կայ որ չստիպեր զմիտքը
որ հաւանի, հապա ազատ կամքին կը
թողու որ հաւանի կամ մերժէ. բայց
հաւատալու նիւթերը այնպիսի պատճառ-
ներով հաստատուած և ճշմարիտ են, որ
թէպէտ կրնանք չհաւատալ, բայց ան
նիւթերուն հաւատալի ըլլալը չենք կըր-
նար ժխտել։ Եւ ան բաներն որ մեր
միտքը յայտնի չտեսնելով չհաւատար,
պէտք է մեր կամքը ստիպենք՝ որ մըտ-
քին ալ հաւատացընէ թէ իրեն առջեւը
դրուածները իրաւ են և պէտք է ընդ-
ունիլ, աս բանս չընելը մեծ անխոհե-
մութիւն է. և ասիկայ կ՚ըսուի բարոյա-
կան բացայայտութիւն։ Օր օրինակ գի-
տեմ թէ Փէքին ու Պօլիս անունով քա-
ղաքներ կան աշխարհիս վրայ. ուստի
բնական բացայայտութիւն ունիմ աս բա-
նիս, չէ թէ ես ինծմէ փորձելով, վ̃ զի
տեսած չեմ ան քաղաքները, հապա՝ ու-

ընչներէն սորվեր եմ, ու բոլոր աշխար-
հիս ընդհանուր կարծիքէն առեր եմ.
բայց ասոնք անսխալ վկաներ չըլլալնուն
կրնան խաբուիլ ու խաբել, ուստի ես
ալ կրնամ չհաւատալ։ Ու սակայն թէ որ
իրաւցընէ չհաւատայի, ինչ պիտի ըսէիք
ինծի. անշուշտ պիտի ըսէիք թէ բամ-
բակը նօսր է. և ձեզմէ ոմանք վրաս
պիտի խնդային, ոմանք ալ խղճային։

Ըս զուրցածներս ուղղափառ եկե-
ղեցիէն սորվեցայ։ Հաւատքը մեզի կը
սորվեցընէ թէ իր գաղտնի խորհուրդ-
ներուն պէտք է հաւատանք՝ թէպէտ և
անոնց վրայ բնական բացայայտութիւն
չունենանք. և ոչ ալ բնական բացայայ-
տութ̃ կրնանք իմանալ թէ արդեօք աս
խորհուրդները Աստուած յայտներ է
եկեղեցւոյ. ապա թէ ոչ՝ մեր հաւատքը
ազատ կամքով չէր ըլլար, և ոչ ալ ար-
դիւնաւոր ու վարձուց արժանի կ'ըլլար.
վասն զի թէ որ բնական բացայայ-
տութիւն ունենայինք՝ պէտք էր որ
հաւատայինք. և աս հաւատքը կամաւոր
չէր ըլլար, հապա հարկեցուցիչ, ինչ-

պէս որ պիտի ըլլայ արքայութեան մէջ։ Ո՛րչափ ալ պատճառներ ու ապացոյցներ կան հաւտալու թէ Աստուած յայտներ է եկեղեցւոյ ան ճշմարտութիւններն ու խորհուրդները՝ որ խելացի մարդը պէտք է իր միտքը ստիպէ որ անոնց հաւտայ. և ով որ ան ապացոյցները մերժէ՝ անխելք ըսուիլը պէտք է յանձն առնու։

Վերջապէս տեսէք թէ ի՛նչ կերպով պիտի շարժիք անանկ հարկաւոր նիւթի մը մէջ, որ է ձեր յաւիտենական փրկութիւնը։ Ուշադրութեամբ և կրկին կրկին կարդացէք աս իմ գրքոյկս, և կամ ուրիշ անթիւ ուղղափառ հեղինակներուն աս նիւթիս վրայ տպած գրքերը։ Մէկիկ մէկիկ մտածեցէք ան պատճառները որ բերի ուղղափառ հաւատքին ճշմարտութիւնը ցուցընելու՝ ձեր օգտին համար. և զԱստուած աղաչեցէք բոլոր սրտանց՝ որ իր շնորհքը ձեր վրայ իջնայ, ու կարենաք հասկընալ ան ճշմարտութիւններն որ յայտնի փաստերով ձեր դիմացը կը դը-

նէ ։ Աղաչեցէք ալ որ իրեն սրբարար շնորհքովը ձեր կամքը սուրբ սիրով մը վառէ, և ձեր միտքը համոզէ հաւատալու ան ամէն ճշմարտութեանց՝ որ ձեր առջև կը դնէ սուրբ հաւատքը բարոյական բացայայտութեամբ ։ Աս սուրբ սէրը՝ Աստուծոյ մասնաւոր շնորհքներէն մէկն է, որ շատ հարկաւոր է զձեզ փոսէն դուրս հանելու, և երջանիկ ու անսխալ ճամբան տանելու ։ Մի՛ դադրիք Աստուծմէ այսպիսի շնորհքներ խնդրելէն. վասն զի ինքն է ամենառատ պարգևողը, և ինքը խօսք տուած է՝ թէ ով որ իր փրկութեան հարկաւոր եղած շնորհքները խնդրէ, զինքը պարապ չհաներ. միայն թէ անդադար ըլլայ ձեր խնդրուածքը. ինչպէս որ ինքն ալ կ'ըսէ. «Խնդրեցէք և տացի ձեզ, հայցեցէք և գտջիք, բախեցէք և բացցի ձեզ» (Ղուկ. ԺԱ)։ Նորանի՛ ինծի, որ Աստուծոյ անհուն ողորմութեամբը ատանկ ըրի. երանի՛ ձեզի ալ՝ թէ որ դուք ալ նոյն բանը ընէք ։

Ինչուան հիմա այնպիսի պարզութեամբ, հաւատարմութեամբ ու պատկառանքով խօսեցայ ձեզի հետ, ինչպէս որ ձեր արժանաւորութեանն ու մեր բարեկամութեանը կը վայլէր։ Հիմա աս վերջի յօդուածիս մէջ կ'ուզէի լռել, ու թողուլ որ ձեր խղճմտանքը խօսի հետերնիդ։ Փորձով գիտեմ թէ մարդուս սիրտը անանկ թմրած չէ, որ երբեմն երբեմն չզարնէ՝ ճշմարտութիւնը իմացընելու, ու խղճմտանքին խայթոցները լսել տալու համար։ Աս խղճմտանքը Աստուծոյ հաւատարիմ պաշտօնեան է, որ խաբէութիւնը կը յայտնէ, վտանգը կ'իմացընէ, և մոլորեալ մարդուն կը ցուցընէ թէ փրկութեան շիտակ ճամբան որն է։ Ան ձայնը որ ձեր սրտին մէջ կը լսէք՝ աս գիրքս կարդալէն ետքը, Աստուծոյ ձայնն է. կ'աղաչեմ որ ուշադրութ՟բ մտիկ ընէք ան ձայնին։ Հարցուցէք դուք ձեզի՝ թէ աս ձեր հաւատքն որ

այսչափ մեծ բանի տեղ դրեր էք, արդեօք ճշմարիտ հաւատքն է, ու կրնա՞յ զմարդը փրկել. աղէկ քննեցէք, չըլլայ թէ ծուռը շիտակի տեղ դրած ըլլաք։

Կը յուսամ որ դուք շատ անգամ այսպիսի հարկաւոր ու օգտակար կըրթութիւններ կ'ընէք. միայն կը վախեմ որ չըլլայ թէ այսպիսի մտածութիւնները զձեզ նեղեն ու ձանձրացընեն. վասն զի աշխարհքս, մարմինը և սատանան բոլոր իրենց ջանքը կ'ընեն որ զձեզ այսպիսի մտածմունքէ հեռացընեն, և ձեզի զզուելի ընեն ան բաները՝ որ ուղիղ խղճմտանքէ առաջ կուգան, և սիրելի կ'ընեն ան թունալից բաժակները որ ձեր Հոգւոյն թշնամիները կ'ընծայեն։ Բայց չէ՝ սիրելիք, մի՛ նայիք անոնց խօսքին և մի՛ ձանձրանաք. առանկ հարկաւոր նիւթի մը վրայ քննութիւն ընելը մէկդի մի՛ թողուք. և թէ որ երբեմն աս զրքուկիս դէմ նեղանաք ու մէկդի նետէք՝ ըսելով թէ շատ նեղը կը խօթէ զձեզ, նորէն ձեռք առէք բարի սրտով, և ուղիղ դատաստան

ընելով ցցուցած ապացոյցներուն վրայ՝ դուք ձեզի ըսէք. աս գիրքը գրողը կամ սուտութիւնը մէջ կը բերէ՝ որպէս զի զզուելի ընէ, և կամ ճշմարտութիւնը կը ցուցընէ ու կ՚ուզէ անոր հետևիլ. « փորձեցէք զանձինս ձեր, եթէ կայցէ՞ք ՚ի նոյն հաւատս. քննեցէք զանձինս ձեր »։

## ԽԶ

Մէկը որ ուզէ իմանալ թէ մեր երկուքին որո՛ւն բռնած հաւատքը ճշմարիտ է, աս պզտի գրքուկիս մէջ շատ փորձաքարեր կը գտնէ աս բանիս ։ Փորձաքար ըսածս ան ապացոյցներն են՝ որոնցմով ճշմարտութիւնը յայտնի կը տեսնենք ։ Տեսէք թէ ուղղափառաց եկեղեցւոյ օրէնքները ո՛րչափ սուրբ են, սովորութիւնները ի՛նչպէս պարկեշտ, վարդապետները գիտուն, վարդապետութիւնները միակերպ, հաւատքը ո՛րչափ հին. մարտիրոսաց հաստատութիւնը, հրաշքներուն հաւատարմութիւնը, հալածանաց մէջ հաստատու-

թիւնը, մարգարէութեան ոգին, և ուրիշ անթիւ նշանները կը ցուցընեն թէ ասիկայ է Յիսուսի Քրիստոսի ճշմարիտ Հայրը. և չէք կրնար տարակուսիլ աս բաներուս վրայ՝ ինչուան որ ան ամօթալի անունը վրանիդ չառնէք, որ է անխոհեմութիւն։ Ուրեմն «Այս օր եթէ ձայնի նորա լուիցէք, մի խստացուցանէք զսիրտս ձեր»։ Յուսամ որ դուք ալ Աստուծոյ ողորմութեամբը լսէք ձեր սրտին մէջ ան ձայնը որն որ ատեն մը լսեց Պօղոս առաքեալը քանի որ դեռ Սաւուղ էր, և Քրիստոսի եկեղեցւոյն հետ կը կռուէր. «Սաւո՛ւղ, Սաւո՛ւղ, զի՞ հալածես զիս» (Գործք. Թ)։ Կ'աղաչեմ, թէ որ ինչուան հիմա խաբէութե̃ կամ մեծամեծ շահերու յոյս ունենալով, կամ անցաւոր փառքի մը համար անոր օրինակին հետևեցաք՝ չարը գործելու, հիմա ալ ձեր յաւիտենական փրկութեան համար անոր տուած բարի օրինակին հետևեցէք. «Մի՛ խստացուցանէք զսիրտս ձեր». և դուք ալ ըդ֊

գաստացած՝ առաքելոյն հետ զուրցեցէք. «Տէ՛ր, զի՞նչ կամիս զի արարից»։ Յետոյ գնացէք իմաստուն Անանիայի մը, ու այնպիսի ուղղափառ քահանայի մը որ կարենայ ձեզի օգնել ու կանոններ դնել այսպիսի առուտուրի մը մէջ՝ որ ձեր հոգւոյն յաւիտենական փրկութեանը վրայ է։

## ԽԷ

Ինծի կ'երեւնայ թէ ձեր միտքը անհաստատ ըլլալով, մէկ կողմանէ ձեր ուղիղ խելքովը իմ ըսածներուս կը հաւնիք, մէկ կողմանէ ալ կիրքերէ պաշարուած ըլլալով՝ ատանկ կը զուրցէք. «Խիստ աղէկ է զուրցածներդ, և խիստ խելացի բան ըրիր որ նորէն ուղղափառ եկեղեցւոյ դարձար. որովհետև աս քու դարձդ այնչափ զօրաւոր պատճառներով արդարացած է. բայց, բայց...» Համարձակ զուրցեցէք՝ սիրելիք, յայտնեցէք ձեր դանդաղանքը. ո՞վ գիտէ, կարելի է թէ Աստուած

իմ ձեռքովս անանկ ազդու ու զօրա-
ւոր դեղ մը տայ որ քիչ ատենի մէջ
զձեզ առողջացընէ ։ Գուցէ այսպէս
կ'ըսէք ձեր մտքին մէջ՝ թէ մեզի շատ
դժուար է մեր աղանդը թողուլը ։ Մեր
նախնիքը մեր դաւանած աղանդին մէջ
ապրեցան ու մեռան . մեզի անպատշաճ
բան կ'երեւնայ անոնց օրինակէն հե-
ռանալը . և թէ որ հիմա իրենց աղան-
դը թողունք , զանոնք արհամարհած
պիտի սեպուինք ։ Մեր մօտ ազգական-
ները լուտերական են . մեր սիրտը չզի-
մանար որ զանոնք թողունք , և մեր
խեղճ ծնողացը կեանքը հառաչանքնե-
րով ցաւերով ու լացով անցընել տանք
մեր բաժնուելուն համար ։ Ի՞նչ պիտի
ըսեն մեր բարեկամներն ու բարերար-
ները՝ որ զմեզ մասնաւոր խնամքով սի-
րեցին , և անուշ մարդավարութեամբ
մեզի հետ վարուեցան , թէ որ իրենց
քովէն ելլենք երթանք ։ Թող որ նոր-
աղանդութիւնը ձգելու և ուղղափառ
ըլլալու համար՝ ամէն ունեցածնիս
չունեցածնիս ալ հարկ պիտի ըլլայ որ

թողունք. ան ատեն ինչո՞վ պիտի ապրինք մենք։ Ի՞նչ աղէկ բան կ'ըլլար թէ որ կարելի ըլլար նորադարձութեան մէջ խաղաղութեամբ ու հանգըստութեամբ ապրիլ. ետքը մեռնելու ատեննիս ուղղափառ ըլլայինք ու անանկով հանգիստ ու ապահով մեռնէինք։

## ԽԸ

Ինչպէս որ պէտք էր՝ ձեր միտքը իմացայ, սիրելիք. աս խօսքերնէդ հասկըցայ որ ձեզմէ շատին խելքը տեղն է. բայց կամքերնիդ ապականեալ է. և ասիկայ բժշկելու համար իրաւունք ու պատճառաբանութիւն չգօրեր, հապա աստուածային ողորմութեան կարօտ էք, ան շնորհքին՝ որ եթէ Աստուծմէ խնդրէք բոլոր սրտանց ու խոնարհ սրտով, անշուշտ կ'առնէք՝ Քրիստոսի անհուն արդիւնքներովը՝ որ կ'ըսէ. «Ամէն ամէն ասեմ ձեզ, զի զոր ինչ խնդրիցէք 'ի Հօրէ իմմէ յանուն իմ, տացէ ձեզ»։

Իսկ ան խօսքը թէ կը փափաքիք նոր-աղանդից կրօնքովը ապրիլ և վերջէն ուղղափառ մեռնիլ, առիկայ նորաղան-դից ընդհանուր կարծիքն է․ բայց գիտցած ըլլաք որ այսպիսի խօսքերը պակասամիտներու կատակներ ու ան-խելք մարդկանց հնարքներ են, որոնք բանի մը չեն հաւտար․ իսկ որոնք որ գիտեն թէ յաւիտենական փրկութիւնը ինչ հարկաւոր բան է, իրենց յոյսը այդպիսի տարակուսական փափաքնե-րու վրայ չեն հաստատեր։

Իրաւ է որ դուք ցաւակից պէտք է ըլլաք ձեր մեռած պապերուն, ազգա-կանացը, բարեկամացը, և դեռ կեն-դանի բարերարներնուդ․ բայց ո՛վ որ քիչ մը խելք ունի՝ պէտք է զգաստա-նայ ու մէկդի թողու սա մարդկային նկատմունքները՝ երբոր կը լսէ հոգւոյ, դժոխքի, արքայութեան, յաւիտենա-կանութեան վրայ խօսուածները։ Ձեր պապերուն շատը ուղղափառութեան մէջ մեռած են․ վասն զի դեռ 200 տա-րի է քանի որ նորաղանդութիւնը ե-

լած է․ իսկ անկէ առաջ 1200 տարի ձեր պապերն ալ բոլոր ուղղափառ էին։ Արեմն թէ որ կ'ուզէք ձեր պապերուն պատիւ ընել, պէտք է որ ուղղափառութիւնն ընտրէք․ վասն զի ձեր պապերուն շատը և երևելիները ուղղափառ էին, և ուղղափառութեան մէջ մեծնալով ուղղափառութեան մէջ ալ մեռան։ Ըս բանս պիտի ընէք աւելի անոր համար ալ՝ որ բարոյական բացայայտութեամբ ալ գիտէք՝ որ եթէ ուղղափառ կրօնքէն դուրս մնանք, յաւիտեան պիտի կորսուինք։

ԽԹ․

Տարակոյս չկայ թէ պէտք է պատուենք մեր կենդանի ազգականներն ու բարեկամները, բայց չէ թէ Աստուծմէ աւելի․ և ոչ անանկ պատուենք որ մեզի վնաս մը ըլլայ անկէ։ Գիտէք Աստուծոյ հրամանը․ «Որ սիրէ ըզհայր կամ զմայր առաւել քան զիս, ոչ է ինձ արժանի»։ Ուստի թէ որ ազ-

զաւակնները սիրելը ու բարեկամները յարգելը՝ ձեզի արգելք է Քրիստոսի ճշմարիտ հաւատքն ընդունելու, պէտք է զիրենք թողուք, անոնց վրայ հոգ չընէք, զանոնք թշնամի սեպէք ։ Դուք արդէն ասանկ կ'ընէք նաև պզտիկ բաներու մէջ. զ° թէ որ ձեր ծնողքը հաւասար աչքով չնային ձեր վրայ. թէ որ ձեր ազգականները վէճ մը հանեն ձեզի դէմ, թէ որ ձեր բարեկամները յանկարծ վնաս մը հասցընեն ձեզի, թէ որ ձեր տէրերը զձեզ պատուաւոր պաշտօնէ մը վար ձգեն, թէ որ ձեր սիրելիները ինչպէս որ պէտք է ձեր վրայ հոգ չտանին, մէկ խօսքով, դուք լաւ գիտէք թէ որչափ փոփոխութիւններ կ'ըլլան աս աշխարհիս թէատրոնին մէջ ։ Ան մարդիկն որ առաջ մէկ սիրտ մէկ հոգի էին՝ կը դառնան մէկմէկու ոխերիմ թշնամի կ'ըլլան ։ Հիմա առժամանակեայ նախապաշարմունք մը թէ որ կրնայ այնչափ ուժ ունենալ՝ որ զձեզ ձեր ազգականներէն ու մտերիմ բարեկամներէն բաժնէ, ինչպէս կրնաք

անհոգ ըլլալ ձեր հոգւոյն յաւիտենական կորստեանը վրայ , այնպիսի մարդու մը համար որ աւելի ինք զինքը կը սիրէ քան թէ զձեզ , կամ ա՛լ պարզ ըսեմ , աւելի ձեր ունեցածը կը սիրէ քան թէ զձեզ ։ Անհոգ մ՚ըլլաք ․ յաւիտենական կենաց համար անցաւոր կեանքը արհամարհեցէք ․ Աստուծոյ կամքը , որ է ձեր գերագոյն երանութիւնը , աշխարհիս հաճոյքը հետ մի՛ փոխէք ։

Ծ ․

Վերջապէս ձեր վախը փարատելու համար երկու բան ալ մտքերնիդ ձգեմ սուրբ գրոց երկու խօսքովը ։ Կը վախնաք որ ձեր աղանդէն հեռանալով պատիւնիդ և հարստութիւննիդ պիտի կորսունցընէք , և անանկ աղքատութեան մէջ պիտի իյնաք՝ որ ուտելու հաց ալ պիտի չգտնէք ։ Բայց Քրիստոսի Ճշմարիտ հաւատքը ընդունելու համար ձեր ձեռքը , ոտքը , աչքը ու նաև կեանքերնիդ ալ հարկաւոր ըլլայ

տալու՝ մի՛ վախնաք, քաւական է որ ձեր հոգւոյն փրկուի. «Լաւ իցէ քեզ միաձեռանի կամ կաղ մտանել 'ի կեանս, քան թէ երկուս ձեռս և երկուս ոտս ունիցիս, և անկանիցիս 'ի հուրն յաւիտենից» (Մատթ. ԺԸ): «Լաւ իցէ քեզ միովականի մտանել 'ի կեանս, քան երկուս աչս ունել, և անկանել 'ի գեհեն» (Մարկ. Թ): Այս բանս Քրիստոս ըսաւ. և աս խրատը պահելու ու յաւիտենական փրկութեան հասնելու համար՝ անթիւ անհամար քրիստոնեայ գլուցաւուններ՝ իրենց պատիւը, հարստութիւնն ու ինչուան կեանքերնին ալ բանի տեղ չդնելով արհամարհեցին: Մանաւանդ թէ ան բանն որ ձեզի վախ կը բերէ՝ իրենց մեծ յոյս ու քաջալերութիւն էր. վասն զի կը տեսնէին որ ժամանակաւոր բարիքը զոհելով՝ յաւիտենական փառաց արժանի կ'ըլլային:

Բայց որովհետև դուք հիմակուհիմա այնչափ լոյս չունիք որ աղէկը ճանչնաք, և ոչ այնչափ եռանդ ունիք աս

դիւցազնական գոհը կատարելու, հաստատ կեցէք, ու մի՛ տարակուսիք որ Աստուծոյ նախախնամութիւնը ձեր հիմակուան կենաց վրայ ալ հոգ կը տանի։ Ինչպէս ես՝ նմանապէս դուք ալ գիտէք որ շատ մարդ նորաղանդութենէ յուղղափառութիւն դառնալով իրենց պատիւը, համարմունքն ու հարստութիւնը շատցուցին։ Յիշեցէք որ աս ձեր ընելիքը Աստուծոյ հետ է՝ որ ձեր ամէն մէկուն մազը համրած է. « Այլ և ամենայն հերք գլխոյ ձերոյ թուեալ են » ( Ղուկ. ԺԲ ) ։ Ես խօսքերով կ'ուզեմ զձեզ վստահացընել Աստուծոյ ողորմութեանը վրայ, որ ինքն ըլլալով ամէն պարգևաց բաշխողը՝ զձեզ ալ երբեք չձգեր, թէպէտ և բոլոր աշխարհքէս լքեալ, ու անբեր ժայռի մը գլուխը մնացած ըլլաք։ « Մի՛ հոգայք ընդ հոգւոյ թէ զի՞նչ ուտիցէք, և մի՛ ընդ մարմնոյ թէ զի՞նչ զգենուցուք » ( Ղուկ. ԺԲ )։ « Մի՛ այսուհետև հոգայցէք և ասիցէք, զի՞նչ կերիցուք կամ զի՞նչ արբցուք. քանզի

գիտէ Հայրն ձեր երկնաւոր՝ թէ պիտոյ է ձեզ այդ ամենայն ։ Խնդրեցէք նախ զարքայութիւնն Աստուծոյ և զարդարութիւն նորա , և այդ ամենայն յաւելցի ձեզ » ( Մատթ . Զ ) ։ Դուք ձեզի ընկածն ըրէք , առանց սպասելու որ երկնքէն պատրաստուած սեղան իջնայ՝ ինչպէս որ անխելք աղանդաւորները կ՚ընեն ։ Աստուած չուզեր որ դուք սաստիկ վախկոտ ըլլաք . որչափ որ կրնաք՝ ձեր ճարտարմտութիւնն ու վայելուչ հնարքները բանեցընելէն ետքը՝ ձեր երկնաւոր հօրը ապաւինեցէք , որ « Գիտէ թէ պիտոյ է ձեզ այդ ամենայն » ։ Երբոր վախը ձեր վրայ տիրէ , առ վկայութիւնս կրկին կրկին կարդացէք , և ուշադրութեամբ վրան մտածեցէք . և դուք որ սովորութիւն ունիք մարդկանց խոստմունքներուն հաւատալու , մանաւանդ անոնց որ պատուաւոր ու հարուստ մարդիկ են , և ամենայն զգուշութեամբ անոնց տալիքի թղթերը կը պահէք , Աստուծոյ վրայ ալ գէթ նոյնչափ վստահութիւն

ունեցէք․ որովհետև իրեն պատիւն ու մեծութիւնը բոլոր աշխարհիս պատիւներէն վեր է։

Ձեզ տեսնեմ, սիրելիք, մտքերնիդ որոշեցէք․ վասն զի գուցէ կարճ է ժամանակը, և գուցէ մահը հասեր է ձեր քովը։ Թէ որ հիմա աս ազդումը մերժէք, գուցէ ալ երկայն ժամանակ չունենաք ձեր յաւիտենական վիճակին վրայ մտածելու։ Աս քաղաքիս մէջ (Ճենովա) ձեր կրօնակիցներէն մէկը որ շատ հարուստ մարդ էր՝ այսպիսի ազդում մը ունենալով, միտքը դրաւ որ քիչ ատենէն իր աղանդը թողու, և ուղղափառ ըլլայ․ բայց մարդկային նկատմանց համար օրէ օր՝ ամսէ ամիս՝ տարուէ տարի թողլով անփոյթ եղաւ։ Մէկ տարի անցաւ վրան, օր մը նաւակէն ելլելու ատենը յանկարծակի կաթուած մը իջաւ վրան, ու քիչ ատենէն հոգին փչեց, և գնաց անդիի աշխարհք՝ իրեն դարձը ուշացընելուն պատասխանը տալու ահաւոր դատաւորին դիմացը։ Աղէկ մտածեցէք․

վասն զի հոգւոյ փրկութեան վրայ մըտածելէն խելացի ու հարկաւոր բան չկայ ։

Սիրով ընդունեցէք, կ'աղաչեմ, աս իմ գրքոյկս՝ որուն մէջ աւելի ջանացայ ձեր հոգւոյն օգտակար ըլլալ՝ քան թէ իմ դարձս քարոզել ։ Աստուած տայ որ հիմա երկրիս վրայ հռոմէական սուրբ և ուղղափառ եկեղեցւոյն մէջ մէկզմէկ գտնենք, ետքը անդին ալ արքայութեան մէջ մէկտեղ երանելի ըլլանք. Ամէն ։



# ՑԱՆԿ

